# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

4 ԱՊՐԻԼ · 1966

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 45-րդ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

# Содержание






# ԼԵՆԻՆՅԱՆ ԿՈՒՐՍՈՎ

Ավարտվեց մեր երկրում կոմունիստական հասարակության կառուցման պատմական ընթացքը սահմանող՝ ՍՄԿՊ XXIII համագումարը, լենինյան պարտիայի կոլեկտիվ մտքի ու կամքի այդ մեծ փորումը:

Համագումարը ամբողջովին ու լիովին հավանություն տվեց ՍՄԿՊ Կենտկոմի քաղաքական գծին և պրակտիկ գործունեությանը, ինչպես նաև պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցման մեջ արված առաջարկներին ու հետևություններին:

Պարտիայի բոլոր կազմակերպություններից Մոսկվա մեկնած պատգամավորները մոտ 12,5 միլիոն սովետական կոմունիստների լիազորությամբ քննարկեցին կոմունիստական շինարարության ներկա էտապում պարտիայի և ժողովրդի առջև ծառացած խնդիրները, հաստատեցին երկրի ժողովրդական տնտեսության զարգացման նոր հնգամյա պլանը:

Հանրագումարի բերելով երկրում տարվող կոմունիստական շինարարության տիտանական աշխատանքը, ճշտորեն գնահատելով մեր հսկայական հաջողություններն ու դժվարությունները, համագումարը պարտիայի ու ժողովրդի ուշադրությունը բևեռեց զարգացման առաջիկա փուլի հիմնական պրոբլեմների վրա, մշակեց գործողության հստակ պլան կյանքի բոլոր բնագավառների համար:

ՍՄԿՊ XXIII համագումարը մի անգամ ևս հաստատեց այն ճշմարտությունը, որ պարտիան ու ժողովուրդը միասնական են, միաձույլ ամբողջություն: Իր շարքերում համախմբելով ժողովրդի լավագույն ուժերը, պարտիան պայքարում է նրա շահերի համար, ղեկավարում նրա ստեղծարար ողջ գործունեությունը: Պարտիայի ուժը աշխատավորական լայն կանգվածների հետ ունեցած սերտ, անխախտ կապի մեջ է, նրա նկատմամբ աշխատավորների համակրանքի ու անկեղծ սիրո մեջ:

Սովետական կոմունիստների բազմամիլիոն բանակն այս օրերին գլխավորում է մեր մարդկանց պայքարը սոցիալիստական հայրենիքի տնտեսական և ռազմական հզորության հետագա ամրապնդման, աշխատավորության կենսամակարդակի բարձրացման, կոմունիստական շինարարության հերթական խնդիրների իրականացման համար:

Մեր երկրի աշխատավորները հպարտանալու շատ բան ունեն: Այդ մասին վառ կերպով վկայում են ՍՄԿՊ XXIII համագումարում բերված փաստերն ու

թվերը: Սովետական Միության ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի իրագործման պայքարում նոր ուժով դրսևորվեցին կոմունիստական պարտիայի կազմակերպչական և դաստիարակչական դերը, ժողովրդական լայն զանգվածներին աշխատանքային սխրանքների մղելու նրա հմտությունը: Արդյունաբերական ձեռնարկություններում, նորակառույցներում, հանրային դաշտերում և գիտահետազոտական հիմնարկներում միլիոնավոր մարդիկ, պայքարի ելնելով, մեծ ջանքեր ու եռանդ գործադրեցին կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման հոյակապ ծրագրի իրականացման համար, որի շնորհիվ յոթ տարում մեր երկրում գրեթե կրկնապատկվեցին արտադրական հիմնական ֆոնդերը:

Միայն վերջին հինգ տարում (1961—1965 թթ.) ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ ներդրումները կազմեցին 211 միլիարդ ռուբլի, այսինքն, մոտավորապես այնքան, որքան նախորդ տասը տարիներին: Յոթնամյակի վերջին տարում Սովետական Միությունում արտադրվեց 507 միլիարդ կիլովատ ժամ էլեկտրաէներգիա, 243 միլիոն տոննա նավթ, 578 միլիոն տոննա քարածուխ, 91 միլիոն տոննա պողպատ, 71 միլիոն տոննա գլանվածք, 11 միլիոն տոննա շաքար, 1.073 հազար տոննա յուղ:

Երկրում մեծ թափով զարգացավ տրանսպորտը: Երկաթուղին, ծովային նավատորմիղը, ավտոմոբիլային տրանսպորտը, քաղաքացիական օդային նավատորմը հագեցված են ժամանակակից քարշիչներով ու շարժիչներով:

Զգալի տեղաշարժ է կատարվել գյուղատնտեսության բնագավառում: Չնայած եղած դժվարություններին, երկրի կոլտնտեսություններն ու սովխոզները շարունակում են անշեղորեն աճել ու զարգանալ, ամրապնդվում է նրանց էկոնոմիկան, բարձրանում են գյուղատնտեսության աշխատողների բարեկեցությունն ու կուլտուր-տեխնիկական մակարդակը: 1961—1965 թվականներին միջին հաշվով տարեկան արտադրվել է հացահատիկ՝ 130,2 միլիոն, շաքարի ճակնդեղ՝ 59 միլիոն, բամբակի հումք՝ 5 միլիոն, արևածաղիկ՝ 5,1 միլիոն, միս (սպանդանոցային քաշով)՝ 9,3 միլիոն, կաթ՝ 64,7 միլիոն, բուրդ՝ 361 հազար տոննա: Անցյալ տարի երկրի կոլտնտեսություններն ու սովխոզները (չնայած շատ շրջաններում եղած երաշտին) հողագործական մթերքների վատ բերք չհավաքեցին (բացի հացահատիկից): 1965 թվականին ՍՍՌՄ գյուղատնտեսության համախառն արտադրանքը համադրելի գներով կազմեց 53,3 միլիարդ ռուբլի, որը գերազանցում է ուրիշ որևէ տարվա արտադրանքը:

Սակայն, գյուղատնտեսական մթերքների արտադրության տեմպերը ավելի դանդաղ են, քան նախատեսված էր յոթնամյա պլանով: Ահա թե ինչու ՍՄԿՊ XXIII համագումարը ընդգծեց, որ կոլտնտեսային և սովխոզային արտադրության վերելքը մեր ամբողջ պարտիայի ու ժողովրդի կարևորագույն խնդիրն է: Պարտիան առաջիկայում կիրագործի մի շարք միջոցառումներ, որոնք մեծ չափով կնպաստեն գյուղատնտեսության զարգացմանը: Բավական է ասել, որ նոր հնգամյակում նախատեսվում է գրեթե կրկնակի չափով ավելացնել գյուղատնտեսության կապիտալ ներդրումները. էլեկտրաէներգիայի ընդհանուր սպառումը գյուղատնտեսության մեջ ավելացնել մոտ երեք անգամ:

Անցած ժամանակաշրջանում մեր սոցիալիստական էկոնոմիկայում տեղի են ունեցել ո՛չ միայն քանակական, այլև որակական մեծ փոփոխություններ: Գիտատեխնիկական առաջադիմությունը կյանքի է կոչել շատ նոր տեսակի արտադրություններ: Տեխնիկապես վերազինվել են ժողովրդական տնտեսության մի շարք ճյուղեր: Սովետական մարդկանց ձեռքով ստեղծվել և գործարկվել են բազմաթիվ սարքեր, մեքենաներ, սարքավորումներ, որոնցից շատերը եզակի են աշխարհում: Արտադրության մեքենայացման ու ավտոմատացման շնորհիվ արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը վերջին հինգ տարում բարձրացավ 25 տոկոսով:

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցումը պահանջում է կապիտալ շինարարության մեծ ծավալ: Ահա թե ինչու Սովետական Միությունում վերջին հնգամյակում կապիտալ շինարարությունն այնպիսի թափ էր ընդունել, որը դեռ երբեք չէր տեսել մեր երկիրը: Համագումարին ներկա էին շատ ընկերներ, որոնք եկել էին Սովետական Միության բոլոր ծայրերից: Նրանք իրենց ելույթներում նշեցին, որ մեր երկրում կառուցվում են հարյուրավոր նոր ձեռնարկություններ, էլեկտրակայաններ, բնակելի թաղամասեր, բանվորական ավաններ ու քաղաքներ, գցվում են երկաթուղագծեր, խողովակագծեր: Այդ ամենը ավելի է բարեփոխում մեր հայրենիքի պատկերը:

Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության կենսագործման շնորհիվ առավել կբարգավաճեն միութենական ռեսպուբլիկաները: Հուսալի, լայն պողոտաներ են բացվում սոցիալիստական ազգերի տնտեսական ու կուլտուրական հզոր վերելքի համար: Այս ճշմարտությունը իր փայլուն մարմնացումը գտավ համագումարի շատ պատգամավորների ելույթներում: Այժմ ավելի, քան երբեք ամրապնդվել են միութենական ռեսպուբլիկաների տնտեսական ու կուլտուրական կապերը, անհամեմատ ծավալվել է միջռեսպուբլիկական եղբայրական փոխօգնությունը՝ սովետական ժողովուրդների լենինյան համագործակցության գրավականը:

Համագումարը մի անգամ ևս հաստատեց այն խսկությունը, որ հետայսու ևս կոմունիզմի մեծ առաջխաղացման գրավականը մեր ժողովուրդների բարեկամության ամրապնդումն է: Պարտիայի XXIII համագումարի որոշումների անշեղ կենսագործումը ՍՍՌՄ ժողովուրդների եղբայրական մերձեցման նոր և բարգավաճ զարգացման համար ռեալ նախապայմաններ կապահովի: Սակայն այդ ամենի համար պահանջվում է մեկնից գաղափարական և դաստիարակչական անդուլ աշխատանք աշխատավոր մասսաների բոլոր խավերի շրջանում: Զարգացման նոր պայմանները պահանջում են մասսաների կոմունիստական դաստիարակության ձևերի ու մեթոդների կատարելագործում և նորոգում:

Պարտիայի XXIII համագումարը սահմանեց նոր հնգամյակի բնագծերը. նախատեսվում է 1966—1970 թվականներին երկրի ազգային եկամուտը ավելացնել 38—41 տոկոսով, բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտները՝ 1,3 անգամ, արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը՝ 50 տոկոսով:

Հինգ տարում աշխարհի ամենահզոր արդյունաբերական տերություններից մեկի արտադրական կարողությունները կավելանան մեկ ու կես անգամ: Այդպիսի մեծ առաջխաղացումը խարսխվում է նյութատեխնիկական անսասան հիմքերի վրա, որպիսի հանգամանքն ապահովում է երկրի զարգացման տեմպերի ռեալականությունը: Արտասահմանյան շատ տնտեսագետներ ևս նոր հնգամյակի պլանի բնորոշ առանձնահատկությունը համարում են նրա ռեալ բնույթը:

Նոր հնգամյա պլանի գլխավոր խնդիրն է՝ գիտության ու տեխնիկայի նվաճումների լայն օգտագործման, ամբողջ հանրային արտադրության ինդուստրիալ զարգացման և աշխատանքի արտադրողականության բարձրացման հիման վրա

ապահովել արդյունաբերության հետագա նշանակալի աճ, գյուղատնտեսության զարգացման արագ ու կայուն տեմպեր և դրա շնորհիվ որոշակիորեն բարձրացնել ժողովրդի կենսամակարդակը, ավելի լրիվ բավարարել սովետական բոլոր մարդկանց նյութական ու կուլտուրական պահանջմունքները:

Ժողովրդական տնտեսության բուռն զարգացումը ո՛չ միայն կամրապնդի մեր հայրենիքի տնտեսական ու պաշտպանական հզորությունը, վճռական քայլ կլինի կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման համար, այլև հնարավորություն կտա զգալիորեն բարձրացնելու ժողովրդի կենսամակարդակը, ավելի երջանիկ դարձնել մեր մարդկանց կյանքը:

Համագումարի բոլոր փաստաթղթերում արտացոլված է ժողովրդի բարեկեցության բարձրացման նկատմամբ պարտիայի ջերմ հոգատարությունը:

Նոր հնգամյակում աշխատավարձի մինիմումը կհասցվի 60 ռուբլու. կսահմանվի հնգօրյա աշխատանքային շաբաթ, կբարելավվի մեծահասակների ու անաշխատունակների թոշակավորման գործը, կոլտնտեսություններում կսահմանվի ամենամսյա երաշխավորված վարձատրության այնպիսի սիստեմ, ինչպիսին գոյություն ունի սովխոզներում. կոլտնտեսականները կթոշակավորվեն՝ կանայք՝ 55, տղամարդիկ 60 տարեկանից (ինչպես քաղաքում է): Նախատեսվում է պետական կարևորություն ունեցող միջոցառումների մի ամբողջ սիստեմ, որի նպատակն է՝ բարելավել բնակչության մատակարարման, կրթության, հանգստի կազմակերպման, սպասարկման գործը:

Ուրիշ ոչ մի հասարակարգ ի վիճակի չէ պատմական կարճ ժամանակամիջոցում ապահովելու աշխատավորության կենսամակարդակի այսպիսի բարձրացումը:

Միայն սոցիալիզմի օրոք է հնարավոր,— նշված է ՍՄԿՊ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— ըստ աշխատանքի քանակի և որակի նյութական բարիքների արդար բաշխման սկզբունքը, որովհետև այստեղ տիրապետում է հանրային սեփականությունը, չկա մարդու կողմից մարդու շահագործում, հասարակության բոլոր անդամներն ունեն հավասար իրավունքներ:

ՍՄԿՊ XXIII համագումարի նշած ուղին՝ նոր հասարակության նյութատեխնիկական բազայի ստեղծման, խաղաղ աշխատանքի ուղին է: Ռազմամոլությունը խորթ է նոր հասարակության գաղափարներին ու կյանքին: Ըստ էության, մեր երկրի զարգացման նոր հնգամյա պլանը խաղաղության ապահովման լավագույն միջոց է:

Անդրադառնալով ստեղծված իրադրության պայմաններում պատերազմների հնարավորության հարցերին, ընկ. Լ. Ի. Բրեժնևը բնորոշում է մեր հիմնական խնդիրները: «Մենք խորապես համոզված ենք,—ասում է նա,—որ ագրեսորին սանձահարելու, նոր համաշխարհային պատերազմը կանխելու հնարավորության վերաբերյալ միջազգային կոմունիստական շարժման հետևությունը պահպանում է իր ուժը: Բայց հնարավորությունը իրողություն դարձնելու համար անհրաժեշտ է ժողովրդական լայն մասսաների մասնակցությունը այդ պայքարին, խաղաղության բոլոր ուժերի հարաճուն լարված ակտիվությունը»:

Միայն պացիֆիստները կարող են մտածել, թե խաղաղությունը կարելի է պաշտպանել լոկ խաղաղասիրական ցանկություններ արտահայտելով: Իմպերիալիստական ուժերը, որոնք իրենց ձեռքում են պահում աշխարհի նյութական հարստությունների զգալի մասը, վերահսկում են խոշոր կապիտալիստական տերությունների գործունեությանը, երբեք չեն հրաժարվի պատերազմի նախապատ-



րաստման և հրահրման քաղաքականությունից, եթե ժողովուրդները և բոլոր առաջավոր ուժերը վճռականորեն հանդես չգան նրանց դեմ:

Սովետական Միության կոմունիստական պարտիան և սովետական ժողովուրդը լրիվ պատկերացնում են այն մեծ ու վճռական դերը, որ խաղաղության պահպանության գործում ունի սոցիալիստական լագերը և, առաջին հերթին, մեր սոցիալիստական հայրենիքի ռազմական հզորությունը: Մեր ժողովուրդը հպարտանում է իր բանակով և նավատորմով, որոնց զինել է ամենաժամանակակից զենքով, որոնք զոր ու գիշեր աչալուրջ հսկում ու պահպանում են սովետական մարդկանց, սոցիալիզմի երկրների անվտանգությունն ու սահմանները, խաղաղությունն ամբողջ աշխարհում: Սովետական մարդիկ իրենց գոհունակությունն են հայտնում երկրի պաշտպանական հզորության ամրապնդման ուղղությամբ կոմունիստական պարտիայի և սովետական կառավարության աներեր քաղաքականության առթիվ:

Հիրավի, մեր պարտիան իր պարտքը տեսնում է այն բանում, որ պահպանի սովետական ժողովրդի բարձր զգոնությունը խաղաղության թշնամիների դավերի նկատմամբ ու ամեն ինչ անում է, որպեսզի ագրեսորները, եթե նրանք փորձեն խախտել խաղաղությունը, մեր երկիրը հանկարծակիի չբերեն, որպեսզի նրանք անհապաղ խորտակիչ հակահարված ստանան:

Պարտիայի համագումարը հստակորեն որոշեց խաղաղության պաշտպանության գործում մեր ժողովրդի անելիքները: Ազդարարեց ի լուր ամենքի, որ Սովետական Միությունը չի կարող անտարբեր գտնվել իմպերիալիստական ոտնձգությունների հանդեպ, նա կշարունակի ավելի հետևողականորեն պաշտպանել խաղաղությունն ամբողջ աշխարհում:

Իմպերիալիստական ուժերի դեմ ամբողջ աշխարհի աշխատավորությանը մոբիլիզացնելու գործում կենսականորեն անհրաժեշտ է սոցիալիստական բոլոր երկրների, համաշխարհային կոմունիստական շարժման միահամուռ միասնությունը:

Կոմունիստական շարժման աճող թափն ու ծավալը մեր դարաշրջանի բնորոշ առանձնահատկությունն են: Այժմ աշխարհի 88 երկրների կոմունիստական պարտիաներում կոմունիզմի իդեալների համար պայքարում են մոտ 50 միլիոն նվիրված մարտիկներ: Կոմունիստ հասկացողության մեջ աշխարհի միլիոնավոր մարդիկ տեսնում են կյանքի բարձրագույն ճշմարտությունը: ՍՄԿՊ XXIII համագումարին մասնակցում էին 86 երկրների կոմունիստական, բանվորական, ազգային դեմոկրատական և ձախ սոցիալիստական պարտիաների ներկայացուցիչներ: Համագումարը որոշեց շարունակել համաշխարհային կոմունիստական շարժման և սոցիալիստական երկրների միասնությունն ու համագործակցությունը ամրապնդելու հետևողական, համբերատար քաղաքականությունը: Համագումարը հատկապես ընդգծեց, որ Սովետական Միության կոմունիստական պարտիան հավատարիմ է պրոլետարական ինտերնացիոնալիզմի իր տրադիցիաներին: Այն հավաստիացրեց ամբողջ աշխարհի կոմունիստներին, որ ՍՄԿՊ-ն անշեղորեն պայքարելու է եղբայրական բոլոր պարտիաների ինտերնացիոնալ միասնության ամրապնդման համար՝ Մարքսի, Էնգելսի, Լենինի մեծ ուսմունքի հիման վրա: Մեր պարտիան այսուհետև ևս անհաշտ պայքար կմղի ռևիզիոնիզմի, դոգմատիզմի, նացիոնալիստական դրսևորումների դեմ, կշարունակի վարել ամբողջ աշխարհի կոմպարտիաների համատեղ գործողությունների գիծը:

Համագումարում արտասանած ճառերում, եղբայրական կոմունիստական

և բանվորական պարտիաների ներկայացուցիչներն իրենց ջերմ խոսքն ասացին Լենինի պարտիային՝ կոմունիզմի իդեալների իրականացման համար մղվող պայքարում ձեռք բերած մեծագույն և պատմական հաղթանակների համար:

Կոմունիստները, ինչ ազգության էլ պատկանեն նրանք, ժողովուրդների լենինյան բարեկամության առաջամարտիկներն են, անխոնջ պրոպագանդիստներն ու կազմակերպիչները:

Յուրաքանչյուր կոմունիստ «իր սոցիալիստական ազգի զավակն է, բայց միևնույն ժամանակ նա պարտիայի զավակն է, նրա մարտիկը, նա ինտերնացիոնալիստ կոմունիստ է, որի համար հավասարապես թանկ են, հարազատ ու հասկանալի, ինչպես իր ժողովրդի, այնպես էլ Սովետական Միության ամեն մի այլ ժողովրդի շահերը: Դրանում է մեր պարտիայի ուժը, դրանում է մեր բազմազգ սովետական պետության, մեր սովետական ժողովրդի ուժը»:

ՍՄԿՊ Կենտկոմի հաշվետու զեկուցման այս տողերը հիանալի բնութագրում են կոմունիստ լենինյաններին, որոնք հանդիսանալով սովետական ժողովրդի լավագույն տրադիցիայի կրողներ, նրա կենսական շահերի արտահայտիչներ, իրենց երջանկությունը տեսնում են Սովետական Միության ժողովուրդների հարազատ ընտանիքում, ժողովուրդների անխախտ բարեկամության ու եղբայրության մեջ:

Մի՞թե ժողովուրդների բարեկամության լենինյան քաղաքականության կենարար ուժի վկայությունը չէ այսօրվա ծաղկուն Սովետական Հայաստանն իր սոցիալիստական պետականությամբ ու բարգավաճմամբ:

Նոր հնգամյակի՝ համագումարի կողմից հաստատված դիրեկտիվներում նախատեսված է նաև մեր ռեսպուբլիկայի էկոնոմիկայի հուժկու վերելքը: 1966—1970 թվականներին ռեսպուբլիկայում արդյունաբերության արտադրանքի ծավալը կաճի 1,8 անգամ, այսինքն՝ ավելի բարձր տեմպերով, քան ՍՍՌՄ-ում ընդհանրապես: Էլեկտրաէներգիայի արտադրությունը կավելանա 2,3 անգամ, հանքային պարարտանյութերինը՝ 3,7 անգամ: Ավելի կբարձրանա ռեսպուբլիկայի աշխատավորության կենսամակարդակը, նոր պայմաններ կստեղծվեն կուլտուրայի, գիտության ու արվեստի հետագա ծաղկման համար:

Ո՞ւմ համար պարզ չէ, որ այդ խոշոր, իսկապես պատմական հաջողությունները չէին լինի, եթե չլիներ եղբայրական ժողովուրդների անշահախնդիր օգնությունը, եթե չիրականացվեին փոխադարձ օգնության և եղբայրական համագործակցության՝ մեր կյանքի օրենքը դարձած սկզբունքները:

Սովետական Միության կոմունիստական պարտիան այսուհետև ևս վարելու է ժողովուրդների մերձեցման և եղբայրական համագործակցության զարգացման քաղաքականություն:

ՍՄԿՊ XXIII համագումարի որոշումները մեծապես կնպաստեն պարտիայի՝ ժողովրդի առաջատար ուժի ու առաջնորդի դերի էլ ավելի բարձրացմանը: Համագումարն ընդունեց պարտիական կյանքին վերաբերող մի շարք կարևոր որոշումներ, որոնց իրականացումը հնարավորություն կտա ամրապնդելու ներպարտիական դեմոկրատիան, ամենուր բարելավելու պարտիական աշխատանքը, ակտիվ քաղաքական գործունեության ներգրավելու միլիոնավոր կոմունիստների:

Համագումարը ելնելով պարտիայի շահերից, անհրաժեշտ համարեց վերանայել պարտիական օրգանների կազմի և դրանց ղեկավար կադրերի թարմացման ու փոփոխման վերաբերյալ կանոնադրությամբ սահմանված կարգը: Այժմ



ստեղծված են անհրաժեշտ պայմաններ պարտիական ղեկավար օրգանների կազմի սիստեմատիկ թարմացման և ակտիվիստների ուժերի ճիշտ օգտագործման սկզբունքները խելացի համատեղելու համար:

Աշխատավորության կոմունիստական դաստիարակության հարցերը միշտ էլ եղել են պարտիայի, նրա բոլոր կազմակերպությունների ուշադրության կենտրոնում:

Արծարծելով պարտիայի գաղափարական աշխատանքի հարցերը, համագումարի պատգամավորները միահամուռ հավանություն տվին ՍՄԿՊ Կենտկոմի վարած քաղաքականությանը: Կոմունիստական պարտիան,—ինչպես ասված է հաշվետու զեկուցման մեջ,— միշտ էլ բարձր է գնահատել ստեղծագործական ինտելիգենցիայի, գրականության և արվեստի գործիչների դերը. տոգորված լինելով պարտիականության, ժողովրդի գործին ծառայելու ոգով, սովետական արվեստն ու գրականությունը դարձել են կոմունիստական դաստիարակության կռվեղ միջոց: Վճռականորեն հանդես գալով արվեստի և գրականության հարցերում վարչարարության և կամայական վերաբերմունքի դեմ, պարտիան անշեղորեն առաջնորդվում է դրանց պարտիականության, դասակարգային գնահատման սկզբունքով:

Համագումարի ամբիոնից մեկ անգամ ևս ազդարարվեց, որ պարտիան միշտ կպաշտպանի այն արվեստն ու գրականությունը, որոնք հաստատում են հավատը մեր իդեալների նկատմամբ, անհաշտ պայքար կմղի մեկ համար խորթ գաղափարախոսության բոլոր դրսևորումների դեմ:

Համագումարը պարտիական կազմակերպություններից պահանջեց անդուլ կերպով կատարելագործել գաղափարական-քաղաքական դաստիարակության ձևերն ու մեթոդները, գործն այնպես կազմակերպել, որ պարտիական պրոպագանդան, մասսայական ագիտացիան լավագույն ձևով ծառայեն սովետական մարդկանց մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորման, կոմունիզմի կառուցման գործին: Գաղափարական աշխատանքը միայն պրոպագանդիստական աշխատողների գործը չէ. այն ամբողջ պարտիայի, բոլոր կոմունիստների գործն է: Գաղափարական աշխատանքի ներգործունության կարևոր պայմանը պարտիայի անդամների, ղեկավարների անձնական օրինակի ուժն է: Խոսքի և գործի միասնությունը՝ լենինյան այս կարևորագույն պահանջը պետք է լինի պարտիայի, նրա բոլոր անդամների, հատկապես ղեկավար աշխատողների գործունեության օրենքը:

Համագումարը հանգամանորեն քննարկեց սովետների, արհմիութենական կազմակերպությունների և լենինյան կոմերիտմիության գործունեության բարելավման հարցերը, ուղիներ նշեց կոմունիստական շինարարության ներկա էտապում նրանց դերի բարձրացման համար:

ՍՄԿՊ XXIII համագումարը հանրագումարի բերելով Կենտկոմի՝ հաշվետու ժամանակաշրջանի գործունեությունը, պատմական նշանակություն ունեցող խնդիրներ դրեց սովետական ժողովրդի առջև, պարտիական կազմակերպություններին կինեց պայքարի ու խիզախումների հստակ պլանով, նշեց մեր զարգացման հիմնական ուղիները:

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության բոլոր աշխատավորները, այդ թվում և Սովետական Հայաստանի աշխատավորները ջերմորեն ընդունեցին իրենց հարազատ պարտիայի XXIII համագումարի որոշումները, որոնք նոր հեռանկարներ են բացում ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության հետա-

գա վարգացման, բանվորների, կոլտնտեսային գյուղացիության, մեր բոլոր աշխատավորների կենսամակարդակի բարձրացման, կուլտուրայի, գիտության ու արվեստի ծաղկման համար:

Այս օրերին պարտիական կազմակերպությունները, աշխատավորական կոլեկտիվները լայնորեն քննարկում են համագումարի որոշումները, սահմանում իրենց անելիքները: Անհրաժեշտ է ավելի կոնկրետ, գործարար բնույթ տալ այդ քննարկումներին և դրանք անցկացնել լայն աշխատավորական մասսաների մասնակցությամբ: Արդյունաբերական ձեռնարկություններում, շինարարական հրապարակներում, տրանսպորտում, կոլտնտեսություններում ու սովխոզներում արդեն ծավալվել է աշխատավորների սոցիալիստական մրցությունը՝ համագումարի որոշումների անթերի կատարման նշանաբանով: Պարտիական կազմակերպությունները պարտավոր են ինչպես հարկն է գլխավորել այդ շարժումը, հմտորեն կազմակերպել մեր մարդկանց պայքարը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման համար:

Պրոպագանդիստների, ագիտատորների բազմահազարանոց բանակը պետք է այսուհետև իր պրոպագանդայի առանցքը դարձնի համագումարի որոշումներում արծարծված հարցերը: Նրանց խնդիրն է ոչ միայն պարզաբանել համագումարի որոշումների էությունը, այլև մարդկանց նոր սխրանքների կոչել:

Մեծ են մեր առջև դրված խնդիրները, պայծառ առաջընթացի ուղիները: Սովետական Միության կոմունիստական պարտիան, նրա բոլոր ջոկատները, ինչպես և Հայաստանի պարտիական կազմակերպությունները աշխատանքի հիմքում ունենալով ՍՄԿՊ XXIII համագումարի որոշումները, կազմակերպական լայն աշխատանք կծավալեն կոմունիզմի կառուցման համար պայքարող սովետական մարդկանց հերոսական գործունեությունը հմտորեն ղեկավարելու, համագումարի կանխագծումները հաջողությամբ կատարելու համար:






ՀՐ. ԴԱՐԲԻՆՅԱՆ

# ԼԵՆԻՆԸ ԵՎ ՌՍԴԲՊ(բ) ԿԵՆՏԿՈՄԻ ԱՐՏԱՍԱՀՄԱՆՅԱՆ ԲՅՈՒՐՈՅԻ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆԸ

(1917 թ. ապրիլ–սեպտեմբեր)

*Կոմունիստական Ինտերնացիոնալի ստեղծման համար մղված պայքարում իր ներդրումն ունի նաև ՌՍԴԲՊ(բ) ԿԿ-ի Արտասահմանյան բյուրոն:*

*Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին Վ. Ի. Լենինը և ականավոր շատ բոլշևիկներ գտնվում էին արտասահմանում ու այնտեղից ղեկավարում պարտիայի ողջ գործունեությունը: Նրանք հետաքրքրվում էին ո՛չ միայն Ռուսաստանում կատարվող դեպքերով, այլև իրենց վրա վերցրին սոցիալիզմին և բանվոր դասակարգի գործին հավատարիմ մնացած օտարերկրյա ինտերնացիոնալիստների համախմբման նախաձեռնությունը: Այդ համախմբման ոգեշնչողը և ղեկավարը դարձավ Վ. Ի. Լենինը: Ցիմմերվալդյան միավորումը հանդիսացավ այն կենտրոնը, ուր հավաքվեցին Մարքսի և Էնգելսի գլխավորած Ինտերնացիոնալին հավատարիմ մնացած սոցիալիստները: Սակայն շուտով պարզվեց, որ այդ միավորման մեջ մտել են նաև այնպիսի անձնավորություններ, որոնք միայն խոսքով են ընդունում սոցիալիզմի համար պայքարելու անհրաժեշտությունը, իսկ իրականում հանդես գալով սոցիալ-պացիֆիստական լոզունգներով, ջանում են կապերը չխզել սոցիալ-շովինիստներից և արգելակել նոր՝ ռևոլյուցիոն ինտերնացիոնալի ստեղծումը:*

*Դրանք ցենտրիստներն ու կաուցկիականներն էին: Վ. Ի. Լենինն անողոքաբար մերկացնելով նրանց վարքագիծը՝ հարց դրեց դուրս գալ այդ խմբավորումից և ստեղծել զուտ ձախ ինտերնացիոնալիստների միավորում:*

*Ռուսաստանում փետրվարյան հեղափոխությունից հետո ավելի նպաստավոր պայմաններ ստեղծվեցին ձախ ինտերնացիոնալիստների համախմբման և ցենտրիստների դավաճանական վարքագիծը մերկացնելու համար: Վ. Ի. Լենինը վերադառնալով Ռուսաստան, նպատակահարմար գտավ, սակայն, արտասահմանում թողնել բոլշևիկների մի շարք ականավոր գործիչների, որոնք պետք է ռուսական հեղափոխության գաղափարները տարածեին արտասահ-*

մանյան պրոլետարական մասսաների շրջանում, մերկացնելին սոցիալ-հայրենասերների և սոցիալ-պացիֆիստների դավաճանական վարքագիծը, ցույց տալին այն ուղին, որով պետք է ընթանար բանվոր դասակարգը:

Սակայն Լենինն անհրաժեշտ էր համարում ստեղծել ՌՍԴԲՊ(բ) ԿԿ-ի արտասահմանյան ներկայացուցչություն, որն արդյունավետ կվարեր իր գործերը:

Եվ ահա 1917 թվականի մարտի 31-ին (ապրիլի 13-ին) Վ. Ի. Լենինը Շվեյցարիայից վերադառնալու ճանապարհին կանգ առավ Ստոկհոլմում և մասնակցեց Կենտկոմի Արտասահմանյան բյուրոյի ստեղծմանը, որի ղեկավար նշանակվեց բոլշևիկյան ականավոր գործիչ Վ. Վորովսկին: Բյուրոյին հանձնարարվեց իր շուրջը միավորել ինտերնացիոնալիստական բոլոր ուժերը, որոնք ամուր կանգնած էին մարքսիզմի դրոշի ներքո: Վ. Ի. Լենինը հանձնարարեց բյուրոյին՝ հրատարակել «Правда»-ի ռուսական բյուլետեններ, որի առաջին համարը լույս տեսավ 1917 թ. հունիսի 3-ին և կոչվեց «Russische korrespondenz Pravda»: Մինչև առաջին համարի լույս տեսնելը, Վ. Ի. Լենինը շատ էր անհանգստանում Կենտկոմի Արտասահմանյան բյուրոյի գործունեությամբ և պահանջում էր արագացնել բյուլետենի հրատարակումը, որը հսկայական դեր կարող էր խաղալ Ցիմմերվալդյան միավորման մեջ ցենտրի և տատանվող մյուս տարրերի մերկացման, պատերազմի դեմ ժողովրդական մասսաներին պայքարի կոչելու, ինչպես նաև արտասահմանի աշխատավորությանը ռուսական հեղափոխության զարգացման ընթացքին ծանոթացնելու գործում: 1917 թվականի մայիսի 29-ի նամակում Վ. Ի. Լենինը Արտասահմանյան բյուրոյին (կամ ներկայացուցչությանը) գրում էր. «աշխատեցեք շուտափույթ ուղարկել բյուլետենի առաջին համարը» (Ленинский сборник, XXI, стр. 57):

Բյուլետենը ֆրանսերեն և գերմաներեն լույս տեսավ ընդամենը 33 համար: ՍՄԿԿ Կենտկոմին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի գրադարանում պահվում է 27 համար՝ գերմաներեն: Առաջին համարը ծանուցում է բյուլետենի հրատարակման նպատակը: «ՌՍԴԲ(բ) ԿԿ-ի Արտասահմանյան ներկայացուցչությունը սրանով սկսում է բյուլետենի հրատարակությունը, որը նպատակ է դնում տպագրված փաստաթղթերի և սեփական թղթակցությունների հիման վրա, եվրոպական սոցիալիստական մամուլին ծանոթացնել ռուսական հեղափոխության զարգացման, նրա պայքարի և աղբյուրների հետ» (Вопросы истории КПСС, № 4, 1955 г., стр. 124—125):

Չկրկնելով «Правда»-ին, ստոկհոլմյան բյուլետենը հոդվածներ, փաստաթղթեր էր հրատարակում հեղափոխության կարևոր հարցերի շուրջ: Նշանակալի հետաքրքրություն էին առաջացնում բյուլետենի առաջնորդող հոդվածները. «Ռուսական հեղափոխության առաջին քառորդ տարին» (№ 1), «Անգլիական և ֆրանսիական իմպերիալիզմի ճիրաններում» (№ 7), «Հարձակումը և Ստոկհոլմի խաղաղության կոնֆերանսը» (№ 9), «Ռուսական սոցիալ-հայրենասերների հարձակումը ռուսական ժողովրդի դեմ» (№ 11), «Ռուսաստանի ներքին և արտաքին դրությունը» (№ 13), «Պետրոգրադի հուլիսյան օրերի միջազգային դասերը» (№ 15) և այլն: Առաջնորդողներում տրվում էին այդ ժամանակաշրջանում աշխատավորական լայն մասսաներին հետաքրքրող հարցերի պատասխանները: Բյուլետենը հսկայական գործ կատարեց Ռուսաստանում սոցիալիստական հեղափոխության զարգացման ու հաղթանակի համար: Նա մերկացնում է ամեն գույնի օպորտունիստների ու թշնամիների՝ ժամանակավոր կառավարության, էսեռների ու մենշևիկների՝ բոլշևիկների հասցեին



հորինած զրպարտությունները, սիստեմատիկ լուսաբանում հուլիսյան օրերին
բոլշևիկների կատարած գործունեությունը, ինչպես և կոռնիլովյան խռովության
մանրամասները՝ տալով դրանց ճիշտ գնահատականը:

Բյուլետենից իմանում ենք, որ «Правда»-ի հետ միասին նախատեսվում
էր ստեղծել ևս մի խոշոր թերթ՝ «Звезда»-ն: Այդ կարևոր փաստը չէր նշվել
այն ժամանակվա պարտիական մի այլ փաստաթղթում: Սրա հրատարակ-
ման նախապատրաստությունը տեղի էր ունենում մայիս-հունիս ամիսներին և
միայն հուլիսյան դեպքերը խանգարեցին «Звезда»-ի հրատարակմանը, որին
հետագայում չանդրադարձան:

Բյուլետենի № 7-ում հրապարակված «Քաղաքական տեսություն» հաղոր-
դագրության մեջ խոսվում էր Պետրոգրադում հունիսի 18-ին տեղի ունեցած
ցույցերի մասին: Այնտեղ ասված էր, որ սովետների համառուսական համա-
գումարի կողմից կազմակերպված խաղաղ մանիֆեստացիան վերածվեց
«իսկական պրոլետարական ցույցի, ցույց տալով բոլշևիկների բացարձակ
առավելությունը Պետրոգրադում: Նրա մասնակիցները բացառապես բանվոր-
ներ և զինվորներ էին: Բուրժուազիան թաքնվել էր: Ցույցին մասնակցում էին
400—500 հազար մարդ: Մասնակիցների մեծ մասն արտահայտվեց այն լո-
զունգների օգտին, որ առաջ էին քաշել բոլշևիկները: Ցույցը ապացուցեց բուր-
ժուազիայի հետ դաշնակցելու քաղաքականության լիակատար կրախը և Պետ-
րոգրադում բոլշևիկների ազդեցության աճը» (Русский бюллетень «Правды»
№ 7 от 24 июня (7 июля) за 1917 г.. ЦПА ИМЛ при ЦК КПСС):

Բյուլետենի № 11-ում լույս տեսավ «Դավադրություն ռուս հեղափոխական
սոցիալ-դեմոկրատների (բոլշևիկների) դեմ» հոդվածը, ուր նշվում էր, որ եթե
ժամանակավոր կառավարությունը հալածանքի կամպանիա սկսի բոլշևիկյան
պարտիայի կամ Լենինի դեմ, ապա հոդվածագիրները (բյուլետենի հրատարա-
կողները.— Հր. Դ.) «պատրաստ են դատարան ներկայանալ փաստաթղթերով,
որպեսզի փաստերով ցույց տան ու երդվեն, որ իրենց ասածը ճշմարիտ է»
(там же, № 11, 22 июня, 1917 г.):

Բյուլետենի միջոցով բոլշևիկները կոչ էին անում բոլոր երկրների հեղափո-
խական սոցիալ-դեմոկրատներին՝ միավորվելու Ինտերնացիոնալի դրոշի ներ-
քո: Եվ այդ ուղղությամբ այն մեծ գործ կատարեց. Պետրոգրադի սովետի
մենշևիկո-էսեռական գործկոմն անցավ Միջազգային սոցիալիստական կոն-
ֆերանսի կազմակերպման գործին և այդ առթիվ բանակցություններ սկսեց
պատերազմող երկրների սոցիալիստների հետ: Հուլիսի 14-ի համարի «Պար-
տիական կյանքից» բաժնում բյուլետենն այդ առթիվ գրում էր. «Բոլշևիկների
Արտասահմանյան ներկայացուցչությունը խնդրում է բոլոր կազմակերպու-
թյուններին, որոնք միջազգային սոցիալ-հայրենասիրական կոնֆերանսին
մասնակցելու հակառակորդներ էին, ուղարկելու իրենց ներկայացուցիչներին
5-ից ոչ ուշ (սեպտեմբերի.— Հր. Դ.): Ցիմմերվալդյան կազմակերպությունը՝
սոցիալ-հայրենասիրական կոնֆերանսին իր աջ թևի մասնակցության պատ-
ճառով կանգնած է պառակտման սահմանագլխին: Խոսքը հեղափոխական
սոցիալ-դեմոկրատական ուժերի միավորման մասին է» (նույն տեղը, № 13):

Բյուլետենի վերջին համարները (31, 32, 33) նվիրված էին Հոկտեմբերյան
սոցիալիստական մեծ հեղափոխության և նրա էության լուսաբանմանը:

№ 31-ում (12 նոյեմբերի) տպագրված մի հոդվածում մերկացվում էին
բոլշևիկյան «խռովության» մասին տարածված բուրժուական զրպարտություն-

ները և ցույց էր տրվում, որ այն բանվորների ու գյուղացիների սոցիալիստական հեղափոխություն է և ոչ թե «խռովություն»՝ կատարված սահմանափակ մի խմբի կողմից։ № 32-ում տպագրվեց «Հաշտության հարցի շուրջը» առաջնորդողը (սովետների II համագումարում Լենինի հաշտության վերաբերյալ զեկուցման հիման վրա)։ № 33-ում հրապարակվեց՝ «ՌՍԴԲՊ (բ) ԿԿ-ի կոչը պարտիայի բոլոր անդամներին և Ռուսաստանի աշխատավոր բոլոր դասակարգերին», «Պառակտում մենշևիկյան պարտիայում», «Սևհարյուրյակայինները գործողության մեջ» հոդվածները։

Բյուլետենի հետ միաժամանակ 1917 թվականի սեպտեմբերի 15-ին Կենտկոմի Արտասահմանյան բյուրոն սկսեց հրատարակել «Вестник русской революции»։ Լույս տեսավ ընդամենը 11 համար, վերջինը՝ նոյեմբերի 26-ին։ Ի տարբերություն բյուլետենի, սա ունի ամսագրի տեսք՝ 16 էջով։ Այնտեղ հոդվածներ տպագրվեցին ռուսական հեղափոխության ընթացքի մասին և լուսաբանվում էին միջազգային հեղափոխական շարժման կարևոր ու հրատապ հարցերը. լույս տեսան Լենինի մի շարք հոդվածներ՝ արտատպված «Рабочий солдат»-ից կամ «Рабочий путь»-ից. № 9—10-ում հրապարակվեց «Ռուսական բանվորական և գյուղացիական կառավարության առաջարկությունը հաշտության մասին» հաղորդագրությունը, որը, փաստորեն, Լենինի «Հաշտության մասին դեկրետի» վերաբերյալ զեկուցման առաջին մասի թարգմանությունն էր գերմաներեն։ Տպագրվեցին նաև Վորովսկու մի շարք հոդվածները, այդ թվում՝ «Ռուսական հեղափոխության շարժիչ ուժերը» (մաս I, Ագրարային հարցը), «Լենինի մասին» հոդվածը (մաս II)։

Վերջին երկու համարում (9—10 և 11) հրապարակվեցին մի շարք կոչեր՝ նվիրված Հոկտեմբերյան հեղափոխության պաշտպանությանը. «Հանուն ռուսական բանվորական կառավարության կամ հանուն եվրոպական կապիտալիստական կառավարության, հանուն խաղաղության կամ հանուն պատերազմի» (11 նոյեմբերի), «Մի՛ սպասեք հաշտության, աշխատեցեք այն ձեռք բերել» (15 նոյեմբերի) և այլն։ Այնտեղ կոչ էր արվում Եվրոպայի աշխատավոր մասսաներին՝ հանդես գալ ռուսական հեղափոխության պաշտպանությամբ, պայքարել սեփական կառավարությունների դեմ, վերջ տալ պատերազմին և աշխարհում ապահովել խաղաղության ու դեմոկրատիայի հաղթանակը։

Վերջին համարում հրապարակվեցին նաև մի շարք երկրների ինտերնացիոնալիստական խմբերի ողջույնի հեռագրերը Հոկտեմբերյան հեղափոխության առթիվ։ Վերն արդեն նշել ենք, որ օգոստոսին Լենինը նամակով դիմեց Կենտկոմի Արտասահմանյան բյուրոյին, որով նա հետաքրքրվում էր բյուրոյի աշխատանքներով։ Նամակում Լենինը խիստ դեմ էր արտահայտվում Ստոկհոլմի կոնֆերանսին բոլշևիկների մասնակցությանը և պահանջում էր անհապաղ հրավիրել ձախ սոցիալիստների կոնֆերանս՝ Երրորդ Կոմունիստական Ինտերնացիոնալ ստեղծելու համար։ «Մենք կատարում ենք մեծագույն, անթույլատրելի սխալ, ձգձգելով կամ հետաձգելով ձախերի կոնֆերանսի գումարումը III Ինտերնացիոնալ հիմնադրելու համար» (Լենին, Երկեր, հ. 35, էջ 349)։ Ինտերնացիոնալ սոցիալիստական հանձնաժողովը նա որակում է որպես «ամենավնասակար հիմնարկություն»։ Սակայն Ցիմմերվալդից պառակտվելու և III Ինտերնացիոնալ ստեղծելու հարցում Կենտկոմի Արտասահմանյան բյուրոն սխալ դիրք գրավեց, գտնելով, որ ժամանակը դրա համար նպատակահարմար չէ, այն իրագործելու պայմանները դեռևս չեն հասունացել։



Փոխանակ կատարելու Լենինի պահանջը՝ թողնելու հին Ցիմմերվալդը և ստեղծելու «իսկական III Ինտերնացիոնալ միայն ձախերից, միայն ընդդեմ կաուցկիականների» (Ленинский сборник XXI, стр. 59), Արտասահմանյան բյուրոյի անդամները (Ռադեկ Կ., Գանեցկի Յա., Վորովսկի Վ.) մասնակցեցին Ինտերնացիոնալ սոցիալիստական հանձնաժողովի տարբեր նիստերին ու խորհրդակցություններին, որոնց մասնակցում էին ոչ միայն ձախերը՝ հեղափոխական ինտերնացիոնալիստները, այլև կաուցկիականները, նույնիսկ բացահայտ սոցիալ-շովինիստները։ Այսպես, հուլիսի 3 (20)-ին նրանք մասնակցեցին Գերմանիայի անկախ սոցիալ-դեմոկրատական պարտիայի ներկայացուցիչների (Կ. Կաուցկի, Հաազե, Լուիզա Ցից, Կոն) մասնակցությամբ տեղի ունեցած մի խորհրդակցության, որին ներկա էին նաև Պետրոգրադի սովետի էսեռո-մենշևիկյան գործկոմի ներկայացուցիչներ Վ. Ռոզանովը, Ա. Սմիռնովը, Ի. Գոլդենբերգը և ուրիշներ (տե՛ս Вопросы истории КПСС № 2, 1960 г., стр. 147—148)։ Մասնակցությունը նման խորհրդակցություններին սկզբունքորեն անթույլատրելի էր, քանի որ կարծես մի տեսակ համաձայնություն էր ստացվում բոլշևիկների և սոցիալ-շովինիստների միջև՝ Ստոկհոլմի խաղաղության կոնֆերանսին մասնակցելու հարցում։ Հուլիսի 11-ին (28 հունիսի) հրապարակվեց ստոկհոլմյան միջազգային սոցիալիստական կոնֆերանսին մասնակցելու հրավերը, որի տակ ստորագրել էին սովետների համառուսական համագումարի ներկայացուցիչները, Միջազգային սոցիալիստական բյուրոյի նախագահությունը և Հոլանդո-Սկանդինավյան կոմիտեն։ Կոնֆերանսը նշանակվում էր օգոստոսի 15 (2)-ին։ Հրավիրվում էին սոցիալիստական պարտիաներում գոյություն ունեցող բոլոր հոսանքների ներկայացուցիչները։

Ինտերնացիոնալ սոցիալիստական հանձնաժողովը, որին սոցիալ-շովինիստները համոզում էին ստորագրել նույն փաստաթղթերի տակ, հայտարարեց, որ ցիմմերվալդականների՝ Ստոկհոլմի միջազգային սոցիալիստական կոնֆերանսին մասնակցելու հարցը կորոշվի Ցիմմերվալդյան 3-րդ կոնֆերանսում, որը պետք է հրավիրվի խաղաղության կոնֆերանսից 5 օր առաջ, նույնպես Ստոկհոլմում։

Բոլշևիկյան Կենտկոմի Արտասահմանյան բյուրոն հուլիսի 20 (7)-ին Ցիմմերվալդյան ձախերի անունից առանձին թերթիկներ հրապարակեց՝ «Սոցիալիստական ինտերնացիոնալին» ընդհանուր խորագրով։ Կոչի տակ ստորագրեցին նաև Լեհաստանի և Լիտվայի սոցիալ-դեմոկրատական պարտիայի երկրամասային վարչության, բուլղարական սոցիալ-դեմոկրատական պարտիայի (տեսնյակներ) և շվեդական սոցիալ-դեմոկրատական երիտասարդական միության ներկայացուցիչները (նույն տեղը)։ Այնտեղ տրվում էր միջազգային դրության վերլուծությունը, մերկացվում Ստոկհոլմի սոցիալիստական կոնֆերանսի կազմակերպիչների ստոր նպատակները, կոչ էր արվում սոցիալիզմին հավատարիմ մնացած բոլոր սոցիալիստներին՝ միավորվելու հանուն պրոլետարական հեղափոխության հաղթանակի, որը կարող էր ժողովուրդներին տալ արդարացի հաշտություն, առանց անեքսիաների ու կոնտրիբուցիայի։

Սակայն այնտեղ կոնկրետ առաջարկություն չէր արվում զուտ ձախերի կոնֆերանս հրավիրելու մասին, որպես Երրորդ կոմունիստական Ինտերնացիոնալ ստեղծելու սկիզբ ու միջոց։ 1917 թվականին Ռուսաստանում կատարված հուլիսյան իրադարձությունները ամբողջ աշխարհին ցույց տվեցին, որ ռուսական ցիմմերվալդականները՝ հանձինս մենշևիկների ու էսեռների, բացահայտ-

րեն անցել են հակահեղափոխական բուրժուազիայի լագերը։ Համաձայնողականները, գործակցած հակահեղափոխական բուրժուազիայի հետ, բոլշևիկյան պարտիայի դեմ հրեշավոր կամպանիա սկսեցին. պարտիան ստիպված էր անցնել կիսալեգալ դրության, իսկ Վ. Ի. Լենինը անցավ խոր ընդհատակ։

Հեղափոխության խաղաղ զարգացման ժամանակաշրջանն ավարտվեց, և մեր պարտիայի VI համագումարը վերցրեց զինված ապստամբության կուրս։ Խոր ընդհատակից Վ. Ի. Լենինը շարունակում էր ղեկավարել մեր պարտիայի ողջ գործունեությունը, անողոքաբար մերկացնում օպորտունիստներին, որոնք փորձում էին շեղել պարտիային նրա վերցրած կուրսից։ Սակայն որոշ մարդիկ՝ Զինովևը, Կամենևը և ուրիշներ, շարունակում էին իրենց վարքագիծը, ցանկանալով ստիպել Վ. Ի. Լենինին՝ հրաժարվել Ստոկհոլմի սոցիալիստական կոնֆերանսին չմասնակցելու մտքից։ Չնայած այն բանին, որ մեր պարտիայի ապրիլյան կոնֆերանսը որոշել էր, որ բոլշևիկները չպետք է մասնակցեն այդ «Սոցիալիստական» համաժողովին, 1917 թ. օգոստոսի 6-ին (19) Համառուսական սովետների կենտգործկոմի նիստում Կամենևը հանդես եկավ Ստոկհոլմի կոնֆերանսին մասնակցելու օգտին, հայտարարելով, թե «Ստոկհոլմի վրա սկսել է ծածանվել հեղափոխական լայն դրոշակ, որի ներքո մոբիլիզացիայի են ենթարկվում համաշխարհային պրոլետարիատի ուժերը»։

Դա փաստորեն ապրիլյան կոնֆերանսի «Բորգբյերգի առաջարկության առթիվ» բանաձևի ոտնահարումն էր։ Կամենևի հակապարտիական ելույթն անմիջապես հակահարված ստացավ Գործկոմի բոլշևիկյան ֆրակցիայի կողմից, որի ներկայացուցիչ Վ. Վ. Կուրաևը հայտարարեց, որ չնայած Կամենևի արած հայտարարությանը, բոլշևիկներն իրենց վերաբերմունքը դեպի սոցիալիստական կոնֆերանսը չեն փոխել և այնտեղ նրանք չեն գնա։ 1917 թ. օգոստոսի 16-ին (29 հունիսի) «Պրոլետարիատ» թերթում զետեղված «Ստոկհոլմի կոնֆերանսի առթիվ կենտգործկոմում Կամենևի ելույթի մասին» հոդվածում Լենինը մերկացրեց Կամենևի ելույթը և ցույց տվեց, որ նա իրավունք չուներ հանդես գալու պարտիայի անունից։

Լենինը գտնում էր, որ «խորհրդակցության գնալ սոցիալ-իմպերիալիստների, մինիստրների, Ռուսաստանում գործող դահճության աջակիցների հետ խայտառակություն ու դավաճանություն է։ Այն ժամանակ խոսել անգամ չարժե ինտերնացիոնալիզմի մասին» (Լենին, Երկեր, հ. 25, էջ 302)։

Կենտկոմի Արտասահմանյան բյուրոյին գրած նամակում նա վճռականորեն հանդես էր գալիս Ստոկհոլմի կոնֆերանսին մասնակցելու և այդ հարցում Կամենևի դիրքի դեմ։

Ինչ վերաբերում է Ցիմմերվալդյան 3-րդ կոնֆերանսին, ապա Կենտկոմն իր ներկայացուցչին տվեց լիազորություն՝ «իմպերատիվ մանդատ՝ դուրս գալու Ցիմմերվալդից՝ Ստոկհոլմի կոնֆերանսին մասնակցելու օգտին մեծամասնության արտահայտման դեպքում»։ Այդ որոշումն էապես կրկնեց Կենտկոմի 1917 թվականի մայիսի 23 (10)-ի որոշումը, որը միայն կիսով չափ էր ուղղել ապրիլյան կոնֆերանսի սխալը (ապրիլյան կոնֆերանսը հակառակ Լենինի պնդման, որ պետք է դուրս գալ Ցիմմերվալդյան միավորումից, և այնտեղ մնալ միայն ինֆորմացիոն նպատակով, ընդունեց Զինովևի առաջարկը, թե իբր դեռևս ժամանակը չի հասունացել Ցիմմերվալդից դուրս գալու համար)։

Ֆինլանդիայից Արտասահմանյան բյուրոյին գրած վերը նշած նամակում Լենինը մանրամասն բացատրում էր, թե ինչու բոլշևիկներն աններելի սխալ



թույլ տված կլինեն, եթե կապվեն սոցիալ-շովինիստական ցիմմերվալդյան Ի. Ս. Հ.-ի հետ, դրանով հետաձգելով ձախերի սոցիալիստական միջազգային կոնֆերանսի հրավիրումը. «...հատկապես այժմ, քանի դեռ Ռուսաստանում կա լեգալ (գրեթե լեգալ) ինտերնացիոնալիստական պարտիա, ավելի քան 200 հազար (240.000) անդամներով (որպիսին աշխարհում և ոչ մի տեղ պատերազմի ընթացքում չկա), հատկապես այժմ մենք պարտավոր ենք հրավիրել ձախերի կոնֆերենցիա և մենք ուղղակի հանցագործներ կլինենք, եթե ուշացնենք այդ անել (Ռուսաստանում բոլշևիկների պարտիային օրավուր ավելի են քշում ընդհատակ)» (Լենին, Երկեր, հ. 35, էջ 349—350)։ Լենինը կոչ էր անում չվախենալ, եթե նույնիսկ դրա մասնակիցների թիվն առայժմ քիչ կլինի, քանի որ «այդպիսի կոնֆերենցիան իդեական ուժ կլինի, անկախ մասնակիցների թվից, իսկ ավելի ուշ այն կարող են լուսյան մատնել» (Երկեր, հ. 35, էջ 350)։

Նա ցույց էր տալիս, որ հարկավոր է անմիջապես հրավիրել ձախերի միջազգային կոնֆերանս, ստեղծել նրա ժամանակավոր բյուրո, երեք լեզուներով տպագրել նրա կոչերը և բանաձևերի նախագծերը՝ պարտիաների քննարկմանը հանձնելու համար, իսկ մեկ-երկու ամիս անց հրավիրել ձախերի II կոնֆերանս։ Կենտկոմի Արտասահմանյան բյուրոն չկատարեց Լենինի պահանջը։

Ռադեկի օպորտունիստական տատանումները և Արտասահմանյան բյուրոյի մյուս անդամների անվճռականությունը թույլ չտվեցին բյուրոյին այդ հարցում գրավելու ճիշտ դիրք։ Ստոկհոլմի խաղաղության կոնֆերանսի հրավիրման ձգձգումը, Ի. Ս. Հ-ի համաձայնողական քաղաքականությունը, Կենտկոմի Արտասահմանյան ներկայացուցչության անհամարձակությունը, այս բոլորը ստիպեցին Լենինին՝ Ցիմմերվալդից անհապաղ դուրս գալու պահանջով նամակ ուղարկել Կենտկոմ. «Այժմ առանձնապես պարզ է սխալը, որ մենք նրանից դուրս չեկանք։

Բոլորին խաբում են Ստոկհոլմի վրա դրած հույսով։ Իսկ Ստոկհոլմի կոնֆերենցիան «հետաձգվում է» ամսե ամիս... Պետք է հեռանալ Ցիմմերվալդից իսկույն» (Լենին, Երկեր, հ. 25, էջ 384) և պետք է հրավիրել ձախերի կոնֆերանս։ Կոնֆերանսի հրավիրումը դրվում է Ստոկհոլմի բոլշևիկյան Արտասահմանյան բյուրոյի վրա։

Կենտկոմի 1917 թվականի սեպտեմբերի 16 (3)-ի նիստի պահպանված արձանագրությունից հնարավոր չէ պարզել, քննարկվե՞լ է արդյոք Լենինի վերը նշված նամակը, թե՞ ոչ։ Բոլոր դեպքերում Ցիմմերվալդյան միավորման մասին այդ նիստում ոչ մի որոշում չի կայացվել։

1917 թվականի սեպտեմբերի սկզբին պարզ դարձավ, որ Ստոկհոլմի միջազգային սոցիալիստական կոնֆերանսը չի կայանալու։ Ինչո՞ւ։ Երբ մայիսի 20-ին Պետրոգրադի սովետը կոչ արեց բոլոր պարտիաներին՝ ենթարկվել ընդհանուր որոշմանը («Социал-демократ» № 125, от 4 (17) августа, 1917 г.), ֆրանսիական սոցիալիստական պարտիայի ընդունած բանաձևում նշվում էր, որ ֆրանսիական սոցիալ-հայրենասերները պատրաստ են գնալու Ստոկհոլմ ոչ թե նրա համար, որպեսզի համաձայնության գան մյուս երկրների սոցիալիստների հետ, թե ինչ միջոցներով կարելի է վերջ տալ պատերազմին, այլ նրա համար, որպեսզի ապացուցեն Գերմանիայի պատասխանատվությունը պատերազմի սանձազերծման մեջ և գերմանական սոցիալիստներին պարտադրեն «պառակտում և պայքար իրենց կառավարության հետ» (նույն տեղը)։ Մինչդեռ ֆրանսիական սոցիալ-հայրենասերները նպատակ չունեին կապերը





խզել իրենց կառավարությունից: Անգլիայում Ստոկհոլմի կոնֆերանսին մասնակցելու հարցը քննարկվեց բանվորական պարտիայի համագումարում (հուլիսի 29), որտեղ 1 846 000 ձայնով ընդդեմ 550 000-ի, որոշվեց մասնակցել կոնֆերանսին, սակայն այն չպետք է լինի վճռական, այլ խորհրդակցական («Социал-демократ», №125, 4 (17) августа, 1917 г.):

Գերմանական օպորտունիստները հաճույքով ընդունեցին կոնֆերանսին մասնակցելու հրավերը: Իսկ երբ սովետները կորցրին իրենց հեղինակությունը և նրանք այլևս ի վիճակի չէին ճնշում գործադրելու ժամանակավոր կառավարության վրա, դաշնակից կառավարությունները որոշեցին այլևս թույլ չտալ իրենց պատվիրակներին՝ գնալու Ստոկհոլմ: Օգոստոսի 2-ին ռուսական թերթերը կիսապաշտպանական հաղորդագրություն հրատարակեցին, որտեղ գրում էին. «Ժամանակավոր կառավարությունը գտնում է, որ պատերազմի և հաշտության հարցերի լուծումը պատկանում է բացառապես իրեն՝ դաշնակից երկրների կառավարությունների հետ միասին» (նույն տեղը) և ոչ թե այդ երկրների սոցիալիստներին: Ստոկհոլմի սոցիալիստական կոնֆերանսը համարվում է քաղաքական որոշակի պարտիաների կոնֆերանս և, որպես այդպիսին, նա չի կարող կառավարությունների համար ունենալ ինչ-որ նշանակություն (տե՛ս նույն տեղը): Կերենսկու կառավարությունը որոշեց չօգնել իր պատվիրակներին և նրանց անձնագիր չտալ, բայց հայտարարեց, որ «այժմ Ստոկհոլմյան կոնֆերանսի հրավիրումը սովետների մասնավոր գործն է, որի հետ ռուսական պաշտոնական դիվանագիտությունը ոչ մի առնչություն չունի» (նույն տեղը): Իսկ Լլոյդ Ջորջը պառլամենտում հայտարարեց, որ Անգլիայի, Ֆրանսիայի, Իտալիայի և ԱՄՆ-ի կառավարությունները որոշել են անձնագրեր չտալ իրենց երկրների պատվիրակներին: Իտալական գրաքննությունը նույնիսկ արգելեց «Avanti» թերթին՝ հրապարակելու սովետների ներկայացուցիչների հետ սոցիալիստական պարտիայի տված համաձայնության մասին որևէ բան, իսկ անգլիական բուրժուական մամուլն սկսեց հալածել Հենդերսոնին՝ մեղադրելով նրան պետական դավաճանության մեջ (նույնիսկ Հենդերսոնին): Կոնֆերանսը կրախի ենթարկվեց: Երբ պարզ դարձավ այս բոլորը և Եվրոպայում էլ հեղափոխական ճգնաժամն ավելի խորացավ, ապա Ցիմմերվալդյան III կոնֆերանսի հրավիրումը այլևս ձգձգել հնարավոր չէր:

Ցիմմերվալդյան III կոնֆերանսը տեղի ունեցավ 1917 թվականի սեպտեմբերին, սակայն այն չլուծեց և չէր կարող լուծել Կոմինտերնի ստեղծման հարցը: ՌՍԴԲՊ (բ) ԿԿ-ի Արտասահմանյան բյուրոյի և մեր պարտիայի ներկայացուցիչները մասնակցեցին այդ կոնֆերանսին, թեև հավատացած էին, որ այն ի վիճակի չէ լուծելու օրվա հուզող հարցերը: Բայց, մասնակցելով դրան, նրանք նպատակ ունեին պրոլետարական մասսաներին ցույց տալ, որ իրենց հուզող հարցերը կարող են լուծել միայն հետևողական մարքսիստները, նրանք, ովքեր իրոք պայքարում են սոցիալիզմի լիակատար հաղթանակի համար՝ համայն աշխարհում: Թեև Կենտկոմի Արտասահմանյան բյուրոն իր գործունեության մեջ բավական սայթաքումներ ունեցավ, բայց այնուհանդերձ նա հսկայական դեր խաղաց հետևողական ինտերնացիոնալիստների համախմբման և Կոմինտերնի ստեղծման գործում:

Գ. ՄԽԻԹԱՐՅԱՆ

Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

# ԱՌԱՋԻՆ ՍՈՎԵՏՆԵՐԸ ԼԵՆԻՆԻ ԳՆԱՀԱՏՄԱՄԲ

Սովետների, որպես պրոլետարիատի դիկտատուրայի նոր ձևի, լենինյան տեսության հիմքերը դրվել են դեռևս ռուսական առաջին հեղափոխության շըրջանում, երբ այդ կազմակերպությունները հանդես եկան, բայց մի շարք տեսաբանների կողմից ըստ արժանվույն չգնահատվեցին:

Ինչպես հայտնի է, պրոլետարիատի դիկտատուրայի տեսության հիմունքները մշակել են նրա մեծ ուսուցիչներ Մարքսն ու Էնգելսը: Նրանց ուսմունքը զարգացրել ու առաջ է տարել Լենինը՝ հեղափոխական շարժման նոր փորձի ուսումնասիրության ու մշակման հիման վրա: Բացահայտելով պատմական նոր դարաշրջանի բնորոշ օրինաչափությունները, Լենինը զարգացրեց մարքսիստական գիտությունը նոր պայմաններին համապատասխան. այդ առանձնապես վերաբերում է նաև սոցիալիստական հեղափոխության և պրոլետարիատի դիկտատուրայի տեսությանը:

Հեղափոխության նոր դասերի վերլուծման և մարքսիստական տեսության զարգացման առաջին էտապն ընդգրկում է 1905—1907 թթ. ժամանակաշրջանը: Մինչև 1905 թվականի աշունը հեղափոխության հաղթության դեպքում քաղաքական իշխանության հնարավոր ձևը Լենինը համարում էր դեմոկրատական ռեսպուբլիկան: Ինչպես մեր կուսակցության II համագումարում ընդունված ծրագրում, այնպես էլ Լենինի «Երկու տակտիկա»-ում դեմոկրատական ռեսպուբլիկան էր համարվում այն նպատակահարմար քաղաքական ձևը, որը կարող էր իրականանալ ցարիզմի տապալմամբ: Բայց «Երկու տակտիկա»-ում Լենինը զարգացնելով Ֆ. Էնգելսի մտքերը (գերմանական Ս. Դ.-ի Էրֆուրտի ծրագրի քննադատության մեջ), հետևյալ տեսակետն է արտահայտում. դեմոկրատական ռեսպուբլիկան կարող է հանդիսանալ այն պետական ձևը, որը կարող է կազմակերպել անցումը հեղափոխության առաջին էտապից (դեմոկրատական հեղափոխությունից) նրա երկրորդ էտապին՝ սոցիալիստական հեղափոխությանը:

Մենք չենք ուզում մանրամասնություններին անդրադառնալ, սա ինքնին մեծ թեմա է: Բայց լենինյան այս գաղափարները չիրականացան: 1905 թվականի աշնանը հեղափոխական իրադարձությունները շատ ավելի բարդացան, քան կարելի էր ենթադրել գարնանը կամ նույնիսկ ամռանը:

Մենշևիկները պնդում էին, թե քանի որ հեղափոխությունը բուրժուադեմոկրատական է, ուրեմն քաղաքական իշխանությունը պետք է բուրժուազիան վերցնի, իսկ բանվոր դասակարգը չի կարող «իրականացնել» քաղաքական ոչ մի ձև՝ բուրժուազիայի կամքին հակառակ (Մարտինով)։ Լենինը դրան հակադրում էր դեմոկրատական ռեսպուբլիկայի դասակարգային բովանդակության իր վերլուծությունը։ Հեղափոխության հիմնական շարժիչ ուժերը բանվորներն ու գյուղացիներն են։ Ցարիզմը տապալելուց հետո նրանք թույլ չեն տա, որ բուրժուազիան իր ձեռքը վերցնի իշխանությունը։ Հաղթանակող դասակարգերն էլ, բնականաբար, կկազմեն իրենց, այսինքն՝ բանվորա-գյուղացիական դեմոկրատական ռեսպուբլիկան։ Դեռ գարնանը բանվորական շարժման խոշոր կենտրոններում այստեղ-այնտեղ երևան էին գալիս սովետներ ու գործադուլային կոմիտեներ, սակայն խիստ կարճակյաց։ Ցարիզմը կարողանում էր արագ լիկվիդացնել դրանք։

Բայց 1905 թվականի աշնանը հեղափոխական իրադարձություններն ավելի բարդացան։ Հոկտեմբերյան համընդհանուր գործադուլի ընթացքում ամբողջ Ռուսաստանում ծնունդ առան նոր տիպի կազմակերպությունները՝ սովետները։ Եթե նրանք 1905 թվականի գարնանը դեռևս խիստ փոքրաքանակ էին և կարճ կյանք էին ունենում, ապա աշնանը, հոկտեմբերյան համընդհանուր գործադուլի ընթացքում, այնքան մասսայական դարձան, որ Լենինն այդ գործադուլն անվանում էր «հոկտեմբերյան ռևոլյուցիա»։

Բնական է, որ երբ ժողովրդական մասսաներն ստեղծում են իրենց քաղաքական օրգանները, ապա նրանց պայքարը ղեկավարող կուսակցության և նրա գործիչների դերն այստեղ իրենց դասակարգի ռևոլյուցիոն նախաձեռնությանը ժամանակին արձագանքելը, այդպիսի կազմակերպությունների գործունեությանը ուղղություն տալն է։

Լենինը 1905 թվականին, դեռևս էմիգրացիայում, «անիծյալ հեռվից», ինչպես ինքն է ասում, սովետները համարեց քաղաքական կազմակերպության նոր ձևեր, արձագանքեց պրոլետարիատի ռևոլյուցիոն նորարարությանը, բացահայտելով սովետների դերը հեղափոխության հիմնական ուժերի կազմակերպման ու ղեկավարման մեջ։

Նոյեմբերի կեսերին, սովետների հանդես գալուց շատ չանցած, էմիգրացիայից Ռուսաստան վերադարձի ճանապարհին, նա Ստոկհոլմից մի նամակ է գրում բոլշևիկյան «Новая жизнь» առաջին լեգալ թերթի խմբագրությանը՝ «Մեր խնդիրները և բանվորների դեպուտատների սովետը» վերնագրով[1], որտեղ արտահայտում է այն կարծիքը, որ նորածին սովետները ապագա ռևոլյուցիոն իշխանության սաղմն են հանդիսանում։

Այժմ ստեղծվել է մի տեսակ հավասարակշռություն հեղափոխության և հակահեղափոխության ուժերի միջև, գրում է նա, բայց ցարիզմի ուժերը քանի գնում կազմալուծվում են, իսկ հեղափոխության ուժերն ավելի լավ կազմակերպելու համար անհրաժեշտ է բոլոր սովետները համախմբել մի ընդհանուր քաղաքական կենտրոնի շուրջը։

---

1 Այդ նամակում Լենինը գրում է, որ խմբագրության իրավասությանն է թողնում նրա հրապարակումը, քանի որ իրեն իրավունք է վերապահում, որ դա, տեղում տեսնի սովետները, նոր այն ժամանակ արտահայտի իր կարծիքն անմիջականորեն։ Ըստ երևույթին խմբագրությունը չի հրապարակում այդ նամակը։ Այն գտնվել և հրապարակվել է «Правда»-ում, միայն 1940 թ.։



«Պակասում է կենդանի, թարմ, ժողովրդի մեջ իր խոր արմատներով ուժեղ, մասսաների բացարձակ վստահությունը վայելող, եռուն ռևոլյուցիոն էներգիայով օժտված, ռևոլյուցիոն ու սոցիալիստական կազմակերպված պարտիաների հետ սերտորեն կապված համառուսաստանյան քաղաքական կենտրոնը» (Երկեր, հ. 10, էջ 9)։

Այդպիսի համառուսաստանյան քաղաքական կենտրոնի դերը կարող է կատարել Պետերբուրգի սովետը, որը, գրում է Լենինը, պետք է դիտել այժմ իբրև ռևոլյուցիոն ժամանակավոր կառավարության սաղմ։ Նա արտահայտում է այն միտքը, որ Պետերբուրգի սովետն իրեն պետք է հռչակի «ժամանակավոր ռևոլյուցիոն կառավարություն» կամ ստեղծի այդպիսին՝ ներգրավելով իր մեջ բանվորների պատգամավորներից բացի նաև նավաստիների, զինվորների, գյուղացիության պատգամավորներին, ինչպես նաև հեղափոխական բուրժուական ինտելիգենցիայի ներկայացուցիչներին։ Ընտրելով «կառավարության ուժեղ միջուկ», սովետը պետք է իր շուրջը համախմբի հեղափոխական բոլոր ուժերին, դառնա մի հուժկու կենտրոն, հրապարակի իր մանիֆեստը և հեղափոխությունը հասցնի իր վճռական վախճանին։ Դժբախտաբար թե՛ Պետերբուրգի, և թե Մոսկվայի սովետները չկարողացան բարձրանալ այդպիսի քաղաքական կենտրոնի աստիճանի։ Պետերբուրգի սովետը, մենշևիկյան ղեկավարության դավաճանության պատճառով, նույնիսկ զինված ապստամբության օրգան չդարձավ։ Եվ միայն Մոսկվայի սովետը դեկտեմբերին ապստամբության դրոշ բարձրացրեց։

Դեկտեմբերյան զինված ապստամբության պարտությունից հետո Լենինը մի քանի անգամ անդրադառնում է սովետների հարցին։ 1906 թվականի փետրվարի վերջին ՌՍԴԲԿ IV, միավորիչ համագումարի նախօրյակին նա կազմում է բանաձևի իր նախագիծը՝ «Տակտիկական պլատֆորմ ՌՍԴԲԿ միավորիչ համագումարի առթիվ» վերնագրով, որտեղ զարգացնում է այն գաղափարը թե սովետները պետք է հեղափոխական ժամանակավոր կառավարություն կազմեն։

Պայքարն ինքնակալության դեմ բացահայտ զինված ապստամբության է վերածվել և տեղական բնակչության ռևոլյուցիոն տարրերը, գրում է Լենինը, բացառապես պրոլետարական ու մանր բուրժուազիայի առաջավոր խավերը, անհրաժեշտաբար ստեղծում են այնպիսի կազմակերպություններ, որոնք, փաստորեն, հանդիսանում են ռևոլյուցիոն իշխանության սաղմեր։ Դրանց թվում Լենինը հիշատակում է բանվորների դեպուտատների սովետները Պետերբուրգում, Մոսկվայում և ուրիշ քաղաքներում, զինվորների դեպուտատների սովետները՝ Վլադիվոստոկում, Կրասնոյարսկում և այլուր, երկաթուղային կոմիտեները՝ Սիբիրում և հարավում, գյուղացիական կոմիտեները՝ Սարատովի նահանգում, քաղաքային հեղափոխական կոմիտեները Նովոռոսիյսկում ու այլ քաղաքներում և, վերջապես, ընտրովի գյուղացիական օրգանները՝ Կովկասում ու Մերձբալթյան երկրներում։

Այդ բանաձևերում Լենինն առաջարկում է սոցիալ-դեմոկրատներին՝ մըտնել սովետների մեջ, ղեկավարել և ուղղություն տալ նրանց աշխատանքներին՝ պարտիայի խնդիրների համաձայն։ Այդ ժամանակ Լենինը դեռ հնարավոր էր համարում զինված ապստամբության մի ավելի հուժկու ալիք և կոչ էր անում «ռևոլյուցիոն մասսաների կողմից ստեղծված ապստամբության օրգաններին» կազմակերպել նոր մարտական ուժեր։ Սովետների գլխավոր խնդիրն է այժմ,

գրում է նա, զինել ռևոլյուցիոն մասսաներին, ամրապնդել պրոլետարիատի ռազմական կազմակերպությունը, այդ մեծ բանակի օգնությամբ տապալել կառավարական իշխանությունները տեղերում: Հաղթության դեպքում պետք է հիմնել նոր կառավարություն կամ հենց սովետներն իրենք պետք է դառնան ժամանակավոր ռևոլյուցիոն կառավարություն (տե՛ս Երկեր, հատ. 10, էջ 187—188):

Ինչպես կանխատեսում էր Լենինը, սովետներն իրենց դասակարգային կազմով և սոցիալ-դեմոկրատիայի ղեկավարությամբ դեմոկրատական հեղափոխության հաղթության դեպքում կարող էին դառնալ այնպիսի մի պետական ձև, որը լիովին ի վիճակի լիներ դեմոկրատական հեղափոխության ավարտումից հետո աստիճանաբար իրականացնել սոցիալիստական հեղափոխության խնդիրները:

Սակայն, ինչպես հայտնի է, հեղափոխության պարտության պատճառով պրոլետարիատի քաղաքական իշխանության հարցի քննարկումը ժամանակավորապես օրակարգից դուրս է գալիս: Վրա են հասնում ռեակցիայի տարիները: Բոլշևիկներն անցնում են ընդհատակ:

1905—1907 թթ. և հետագա տարիների իր աշխատություններում Լենինը վեր է հանում առաջին սովետների, որպես «նոր ռևոլյուցիոն իշխանության սաղմի», մի քանի բնորոշ առանձնահատկությունները, որոնք հետագայում ամբողջականացվում և զարգացվում են 1917 թվականի փետրվարյան և հոկտեմբերյան հեղափոխությունների փորձի հիման վրա գրված նրա աշխատություններում: Հետաքրքրական է այն, որ երբ ծագում են առաջին սովետները, որոշ ընկերներ չեն հասկանում դրանց նշանակությունը, տեղն ու դերը:

1905 թվականի նոյեմբերին բոլշևիկյան «Новая жизнь» առաջին լեգալ թերթը (լույս էր տեսնում Պետերբուրգում, նոյեմբերի 9-ից մինչև դեկտեմբերի 16-ը նոր տոմարով), հրապարակում է մի հոդված, որի հեղինակը կուսակցությունը հակադրում է սովետին: Նա հարցը դնում է այսպես՝ բանվորների դեպուտատների սովե՞տ, թե՞ կուսակցություն:

Լենինը իր վերոհիշյալ նամակում խմբագրությանը գրում էր, որ հարցն այդպես դնելը ամենևին իրավացի չէ: Անհրաժեշտ և չափազանց կարևոր է այժմ ոչ թե սովետը հակադրել կուսակցությանը, այլ իրարից զատել նրանց խնդիրները և զուգակցել նրանց աշխատանքը: Չի կարելի ոչ նույնացնել սովետը կուսակցության հետ և ոչ էլ հակադրել նրանց:

Բանը նրանում է, որ բանվորների պատգամավորների սովետը ծնունդ է առել ընդհանուր քաղաքական գործադուլից, որին մասնակցել է ամբողջ պրոլետարիատը: Բայց բոլոր պրոլետարներն էլ սոցիալ-դեմոկրատներ չեն: Ընդհանուր գործադուլը հետապնդում է այնպիսի տնտեսական և քաղաքական նպատակներ, որոնք բխում են բոլոր աշխատավորների շահերից, ուրեմն՝ այդ շարժման ստեղծած քաղաքական կազմակերպությունն էլ պետք է լայն աշխատավորական մասսայի օրգանը լինի: Ավելին: «...բանվորների դեպուտատների սովետը... պետք է ձգտի այն բանին, որպեսզի իր կազմի մեջ մտցնի դեպուտատներ բոլոր բանվորներից, ծառայողներից, սպասավորներից, բատրակներից և այլն, բոլորից, ովքեր միայն ցանկանում են ու կարող են միահամուռ պայքարել ամբողջ աշխատավոր ժողովրդի կյանքի բարելավման համար...» (Լենին, Երկեր, հ. 10, էջ 7):

Սոցիալ-դեմոկրատական կուսակցությունը պետք է կարողանա ղեկավա-



րել այդպիսի քաղաքական լայն կազմակերպությունները, ուղղություն տալ նրանց աշխատանքին, բարձրացնել բանվորների հասարակական-քաղաքական գիտակցությունը, առաջին հերթին այն բանվորների, որոնք հանդես են գալիս որպես սովետների պատգամավորներ:

Լենինը հենց սկզբից ընդգծում է առաջին սովետների, որպես նոր տիպի կազմակերպությունների այն առանձնահատկությունը, որ վերջիններս բանվոր դասակարգի ամենադեմոկրատական, ամենալայն քաղաքական կազմակերպություններն են: Պատասխանելով առանձին ընկերների, նա գրում է, որ սովետները կուսակցական կազմակերպություններ չեն և, անկախ կրոնական ու սոցիալական համոզմունքից, այն բոլոր մարդիկ, ովքեր մասնակցում են հեղափոխական շարժմանն ընդդեմ հին կարգերի, եթե անգամ նրանք սոցիալ-դեմոկրատներ չեն և նույնիսկ սոցիալ-ռևոլյուցիոներներ են, նրանց բոլորին պետք է ներգրավել սովետների մեջ: Զինվորների, նավաստիների և գյուղացիության պատգամավորներին, հեղափոխական բուրժուական ինտելիգենցիայի ներկայացուցիչներին, հեղափոխությանը իրոք ազնվորեն նվիրված բոլոր ժողովրդական խավերի ներկայացուցիչներին պետք է ընդգրկել սովետների մեջ: Լենինն առանձնապես ընդգծում է, որ հեղափոխական բուրժուական դեմոկրատիան, օրինակ՝ սոցիալիստ ռևոլյուցիոներները (էսեռները) սոցիալ դեմոկրատիայի հետ միասնաբար են հանդես գալիս բուրժուա-դեմոկրատական հեղափոխության ժամանակ և նրանց վտարումը սովետներից, ինչպես պահանջում էին որոշ ընկերներ, «անմտություն ու խենթություն կլիներ»:

Որպեսզի Պետերբուրգի բանվորների պատգամավորների սովետը իրեն հռչակի ռևոլյուցիոն ժամանակավոր կառավարություն, պետք է լայնացնի իր կազմը, գրում էր Լենինը 1905 թվականի նոյեմբերին, սովետը պետք է լրացնի իր կազմը, ընդգրկելով բոլոր ռևոլյուցիոն կուսակցությունների ներկայացուցիչներին: «Մենք չենք վախենում կազմի այդպիսի լայնությունից ու խայտաբղետությունից, այլ ցանկանում ենք այն, քանի որ առանց պրոլետարիատի ու գյուղացիության միավորման, առանց սոցիալ-դեմոկրատների ու ռևոլյուցիոն դեմոկրատների մարտական մերձեցման ռուսական մեծ ռևոլյուցիայի լիակատար հաջողությունը հնարավոր չէ» (Երկեր, հ. 10, էջ 11):

Իհարկե, նման դաշինքի նպատակը մերձակա խնդիրների իրականացումն է, այն երբեք չի նշանակում բանվոր դասակարգի կուսակցության միաձուլում ոչ պրոլետարական կուսակցությունների հետ: Բացի այդ, բանվորական կուսակցությունն ի վիճակի կլինի միշտ էլ պաշտպանելու իր դասակարգի շահերը բուրժուազիայի ոտնձգություններից: Դրա համար անհրաժեշտ է, որ հեղափոխական ժամանակավոր կառավարության մեջ «ուժեղ լինի հիմնական զուտ պրոլետարական միջուկը, որ բանվորների, նավաստիների, զինվորների, գյուղացիների հարյուրավոր դեպուտատներին, ասենք օրինակի համար, ընկնեին ինտելիգենտական ռևոլյուցիոն միությունների տասնյակ դեպուտատներ» (Նույն տեղը, էջ 12):

Առաջին սովետների մյուս կարևոր առանձնահատկությունն այն է, որ նրանք բացի ամենադեմոկրատական, մասսայական կազմակերպություններ լինելուց, նաև ինտերնացիոնալիստական կազմակերպություններ են: Աշխատավոր ժողովրդի ընդհանուր թշնամու՝ ցարիզմի դեմ պայքարում էին ո՛չ միայն ռուս բանվորն ու գյուղացին, այլ նաև ուկրաինացի, բելոռուս, հայ, վրացի, ղազախ, թաթար և մյուս ազգերի բանվորներն ու գյուղացիները: Սովետ-

ներն իրենց ծագման սկզբից հանդիսանում են զինված ապստամբության ին-
տերնացիոնալ օրգաններ։ Լենինը նշում է, որ ռուսական սոցիալ-դեմոկրա-
տիան կարողացավ փշրել երիտասարդ պրոլետարիատի մեջ եղած ազգային և
բուրժուական կեղծ-հայրենասիրական պատրանքները և ստեղծել միասնական
համախմբված ռևոլյուցիոն պրոլետարիատ ընդդեմ ցարիզմի։

Իր «Կոմունայի դասերը» հոդվածում, համեմատելով առաջին սովետները
Փարիզի Կոմունայի հետ, Լենինը նկատում է, որ ի տարբերություն Կոմունայից
սովետները զերծ էին «համազգային» և «Հայրենասիրական» մոլորություննե-
րից, որոնք շեղում էին կոմունարների ուշադրությունը իրենց հիմնական խնդ-
րից։ Փարիզի ապստամբ պրոլետարիատը, գրում է Վ. Ի. Լենինը, երկու խնդիր
էր հանձն առել, մեկը՝ Ֆրանսիայի ազատագրումը Գերմանիայի արշավանքից,
մյուսը՝ բանվոր դասակարգի ազատագրումը կապիտալիզմից։ Բայց հենց այդ
երկու հանգամանքն էլ մոլորության մեջ են գցում կոմունարներին։ «Ֆրանսիա-
կան սոցիալիստների ճակատագրական սխալն էր հակասական խնդիրների՝
հայրենասիրության և սոցիալիզմի միացումը։ Արդեն Ինտերնացիոնալի Մանի-
ֆեստում 1870 թ. սեպտեմբերին, Մարքսը նախազգուշացնում էր ֆրանսիա-
կան պրոլետարիատին կեղծ ազգային գաղափարով հրապուրվելուց» (Երկեր,
հ. 13, էջ 613)։

Ռուսական ցարիզմը, ընդհանուր ռեակցիոն միջոցառումների հետ միա-
ժամանակ, վարում էր ուրիշ ազգերի նկատմամբ ազգային նսեմացման քա-
ղաքականություն, սերմանում ատելություն տարբեր ազգերի միջև, ոտնահա-
րում ազգային փոքրամասնությունների տարրական իրավունքները, կազմա-
կերպում հրեական, հայ-թուրքական ազգային սեհարյուրյակային ջարդեր և
այլն։

Ռուսաստանի սոցիալ դեմոկրատական կուսակցությունը, պայքարելով
ցարիզմի մեծապետական, շովինիստական քաղաքականության դեմ, ամրա-
պնդում է ինտերնացիոնալ կապերը տարբեր ազգերի պրոլետարների միջև,
ցույց տալիս, որ ցարիզմը Ռուսաստանի բոլոր ազգերի ընդհանուր թշնամին է։
Եվ ռուսական պրոլետարիատը, որը զերծ էր «համազգային» պատրանքներից,
գրում է Լենինը, իր դասակարգային ուժերը կենտրոնացնում էր իր մասսայա-
կան կազմակերպությունների մեջ՝ բանվորների և զինվորների պատգամավոր-
ների սովետներում (տե՛ս, Երկեր, հ. 13, էջ 615)։

Առաջին սովետների մյուս առանձնահատկությունը, որ նշում է Լենինը այս
շրջանում, այն է, որ իբրև կանոն նրանք ծագում են ամենից առաջ բանվորա-
կան շրջաններում և համարյա բոլոր արդյունաբերական կենտրոններում նրանց
հիմնական կորիզը բանվորներն են։ Այդ հանգամանքը սովետներին ավելի
խոր բովանդակություն է տալիս, քան դեմոկրատական հեղափոխությունն է։
Նրանք դառնում են բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության հե-
ղափոխական իշխանության օրգաններ ո՛չ միայն ցարիզմի տապալման, այլև
կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու համար։ Սովետների, որպես նոր տի-
պի քաղաքական կազմակերպության, այս առանձնահատկությունն ավելի
ցայտուն դրսևորվեց 1917 թվականի փետրվարյան հեղափոխությունից հետո։

Այս մի շարք առանձնահատկությունների ու դրական կողմերի հետ մեկ-
տեղ առաջին սովետներն ունեին նաև թերություններ, որոնք, ինչպես նշում է
Վ. Ի. Լենինը, իրենց ազդեցությունն ունեցան շարժման հետագա ընթացքի վրա։

1905 թվականի սովետների առաջին և գլխավոր թերությունը Լենինը հա-



մարում է նրանց ցրվածությունը, անջատվածությունը, այն, որ շատ տեղերում
նրանք չկարողացան դուրս գալ սաղմնային վիճակից։ Դեռ նոյեմբերին Լենինը
գրում էր, որ սովետների համախմբման ու կազմակերպման համար պակասում
է միասնական ընդհանուր քաղաքական կենտրոնը, որն անհապաղ պետք է
իրեն հռչակեր ժամանակավոր ռևոլյուցիոն կառավարություն։

Սովետները և նրանց տիպի զինված ապստամբության օրգանները անջատ-
անջատ էին, պատահական, անվճռական իրենց գործողությունների մեջ և չէին
հենվում ռևոլյուցիայի կազմակերպված զինված ուժի վրա,— ուստի և անխու-
սափելիորեն դատապարտված էին կործանման կոնտրռևոլյուցիոն բանակների
առաջին իսկ հարձակողական գործողությունների պահին» (Երկեր, հ. 10,
էջ 185)։

Շատ տեղերում, նույնիսկ խոշոր արդյունաբերական կենտրոններում, ինչ-
պիսին, օրինակ, Պետերբուրգն էր, սովետները չդարձան զինված ապստամբու-
թյան օրգաններ, չվերածվեցին հեղափոխության մարտական օջախների։

Սովետների սաղմնայնության և մասնատվածության պատճառներից մեկն
էլ միասնական բանվորական կուսակցության բացակայությունն էր։ Մենշե-
վիկները ո՛չ միայն խանգարում էին սովետների քաղաքական հասունացմանը,
նրանք, առհասարակ, գտնում էին, որ բանվորական կուսակցությունը չպետք է
մասնակցի քաղաքական իշխանությանը, քանի որ, ըստ նրանց, բուրժուական
հեղափոխության հաղթանակից հետո պետք է ստեղծել բուրժուական պետու-
թյուն, և բանվոր դասակարգը պետք է միայն բուրժուազիային օժանդակողի
դերում հանդես գա։

Լենինն իր աշխատություններում մերկացնում է մենշևիկների լիդերներ
Պլեխանովի, Մարտովի և մյուսների դավաճանական տակտիկան, որը ջլա-
տեց հեղափոխության ուժերը և հնարավորություն տվեց ցարիզմին համաձայ-
նության գալով կադետների ու հակահեղափոխական այլ ուժերի հետ, ջախ-
ջախել բանվոր դասակարգի քաղաքական կազմակերպությունները, արյունոտ
հաշվեհարդար տեսնել աշխատավորության հետ։

Առաջին հեղափոխության պարտությունից հետո Լենինը երկար ժամանակ
առիթ չունեցավ քննարկելու սովետների հարցը կամ անդրադառնալու դրան։
Բայց երբ 1917 թվականի փետրվարյան հեղափոխությունից հետո կրկին
ծնունդ առան սովետները, դեռ արտասահմանից Լենինն արձագանքեց բանվոր
դասակարգի ստեղծագործական նախաձեռնությանը։ Այնտեղից գրած նամակ-
ներում և ապա հռչակավոր Ապրիլյան թեզիսներում սովետները նա բնորոշեց
որպես պրոլետարիատի դիկտատուրայի նոր, ավելի բարձր ձև, քան պառլա-
մենտական ռեսպուբլիկան է։

Ամբողջացնելով ռուսական հեղափոխությունների և սովետական իշխա-
նության փորձը՝ Լենինը 1917—20 թթ. իր աշխատություններում ցույց տվեց
սովետների, որպես պրոլետարիատի դիկտատուրայի ավելի բարձր ձևի, բնո-
րոշ առանձնահատկությունները և նրա խնդիրները սոցիալիստական հասարա-
կարգի կառուցման գործում։

Այսպիսով, տակավին առաջին հեղափոխության շրջանում սովետների մա-
սին գրված աշխատություններից երևում է, որ Լենինը ո՛չ միայն մշակել է նոր
տիպի պետության՝ սովետների տեսությունը, այլև կանխատեսել դրանց հե-
տագա զարգացման ընթացքը, հեռանկարը։

Դեռևս ռուսական առաջին հեղափոխության շրջանում Լենինը զարգաց-

*նում է պրոլետարիատի դիկտատուրայի տեսությունը՝ առաջ քաշելով պետության այդ նոր ձևի հարցը: Երբ հանդես են գալիս սովետները, նա կարողանում է տեսնել հեղափոխական ուժերի այդ խոշոր նորարարությունը և արագությամբ կողմնորոշվում դեպի նոր, լայն մասսայական-քաղաքական կազմակերպությունները:*

*Սովետների, որպես նոր տիպի քաղաքական կազմակերպությունների հայտնագործմամբ, նրանց դերի ու նշանակության պարզաբանմամբ Լենինը զարգացրեց և մի նոր աստիճանի բարձրացրեց պրոլետարիատի դիկտատուրայի մարքսիստական ուսմունքը: Նա բացահայտեց քաղաքական կազմակերպությունների մի ամբողջ շարք՝ սովետներ, գործադուլային կոմիտեներ, գյուղացիական կոմիտեներ և այլն, որոնք, հակառակ բուրժուազիայի կամքի, ստեղծվում են բանվորների և գյուղացիների կողմից, կազմակերպություններ, որոնք բոլորն էլ, չնայած իրենց բազմազանության, ըստ էության ներկայացնում են բանվորների ու գյուղացիների քաղաքական իշխանության տեղական օրգաններ:*

*Ի հակադրություն մենշևիկների, որոնք աշխատավոր մասսաներին ինքնուրույն քաղաքական պայքարի անընդունակ էին համարում, Լենինը ցույց է տալիս, որ բանվորա-գյուղացիական մասսաներն իրենք են հանդիսանում հեղափոխության վճռական շարժիչ ուժը, նրանք են իրենց նախաձեռնությամբ ստեղծում այնպիսի քաղաքական կազմակերպություններ, որոնք, հաղթանակի դեպքում, կարող են դառնալ և դառնում են նոր պետական կարգի հիմքը: Հեղափոխությունը ճնշվածների և հարստահարվածների տոնն է, գրում է Լենինը, երբեք ժողովուրդն այնքան ընդունակ չէ հանդես գալու նոր հասարակական կարգերի ակտիվ ստեղծողի դերում, որքան հեղափոխության ժամանակ:*

*Լենինյան ուսմունքը պրոլետարիատի դիկտատուրայի մասին մեր օրերում առանձնապես լայնորեն տարածվել է ո՛չ միայն կապիտալիստական երկրներում, այլև երբեմնի գաղութային ու կախյալ երկրներում:*

*Ազգային-ազատագրական հեղափոխությունները և նոր կարգերի հիմնումը այդ երկրներում գլխավորում են ժողովրդական ու դեմոկրատական կուսակցությունները, որոնք գործնականում նվաճել են ռևոլյուցիոն մասսաների վստահությունը: Տապալելով իմպերիալիզմի ու ներքին հարստահարիչների լուծը, ամենահետամնաց երկրի ժողովուրդներն անգամ ստեղծում են այնպիսի քաղաքական կարգեր, այնպիսի պետական իշխանության ձևեր, որոնք իրականացնելով դեմոկրատական հեղափոխության խնդիրները, կես ճանապարհին կանգ չեն առնում, այլ որոշ երկրներում նույնիսկ անցնում են սոցիալիստական հեղափոխության խնդիրների իրականացմանը: Այդ ընթացքում նրանք ղեկավարվում են պրոլետարիատի դիկտատուրայի լենինյան ուսմունքով: Ազատագրական շարժման հակաիմպերիալիստական բնույթը նրանց դարձնում է սոցիալիստական երկրների բարեկամն ու բնական դաշնակիցը:*





Լ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

# ԼԵՆԻՆԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳԻ ԳԻՏԱԿԱՆ ՂԵԿԱՎԱՐՄԱՆ ՄԱՍԻՆ

*Հասարակության կառավարումը լայն հասկացողություն է: Այն ընդգրկում է տնտեսական, քաղաքական, գաղափարական և հասարակական կյանքի այլ կողմերի կարգավորումը:*

*Հասարակական կյանքի տարբեր կողմերի կառավարումն սկսվել է մարդկային հասարակության առաջացման ժամանակներից: Բայց զարգացման տարբեր շրջաններում կառավարում էին նրանք, ում պատկանում էին արտադրության միջոցները, ըստ որում՝ կառավարում էին միայն իրենց շահերից ելնելով: Կառավարման սոցիալական բնույթը, նպատակներն ու ձևերը, որոնք բնորոշում են նրա կազմակերպման հիմնական գծերը, փոխվում էին արտադրական հարաբերությունների, սոցիալ-տնտեսական և քաղաքական կարգի փոփոխության հետ մեկտեղ: Մինչսոցիալիստական բոլոր դասակարգային ֆորմացիաների համար բնորոշ է շահագործողական կառավարման կազմակերպումը:*

*Սոցիալիստական հասարակության մեջ չկա դասակարգերի անտագոնիզմ, չկան տեր ու ծառա, հետևապես՝ չկան հակադիր շահեր կառավարման օրգանների և կառավարողների միջև: Այս է սոցիալիստական հասարակության կառավարման կազմակերպման արմատական տարբերությունը կապիտալիստական և յուրաքանչյուր այլ անտագոնիստական հասարակությունից: Սոցիալիստական հասարակության կառավարման կազմակերպման մյուս արմատական տարբերությունն այն է, որ վերջինս* կառուցվում է գիտական հիմքի վրա:

*Գիտական կառավարում նշանակում է եղած գիտելիքների գործնական կիրառում մարդկանց նպատակահարմար գործունեության համար՝ կազմակերպելով նրանց հասարակական կյանքը՝ հասարակական պրոգրեսի պահանջներին համապատասխան: Ուստի, գիտելիքների օգնությամբ պետք է կարողանալ ճիշտ լուծել այն կոնկրետ խնդիրները, որոնք առաջադրում է մարդկային պրակտիկան: Ընդգծելով այդ, Լենինը գրում էր. «...մենք պետք է, ինչ էլ որ լինի, առաջադրենք մեզ մի խնդիր... որ մեզանում գիտությունը մեռած տառ*

կամ մոդայական ֆրազ չմնա (իսկ, մեղքներս ինչ թաքցնենք, մեզանում այդ առանձնապես հաճախ է լինում), որ գիտությունն իրոք միս ու արյուն դառնա, կենցաղի բաղկացուցիչ տարր՝ լիովին և իսկապես» (Հ. 33, էջ 581)։

Մեծ առաջնորդի այս խոսքերը հատուկ նշանակություն են ձեռք բերում հատկապես կոմունիզմի կառուցման պայմաններում, երբ հասարակական վերափոխությունների թափն ու մասշտաբներն անհամեմատ ավելի լայն ու խոր են, քան հասարակության զարգացման նախորդ բոլոր դարաշրջաններում։ Այդ պրոցեսում է՛լ ավելի է բարձրանում մասսաների աշխատանքային և քաղաքական ակտիվությունը, գնալով ավելի լայն չափով են նրանք ներգրավվում հասարակության ու պետության գործերի կառավարման մեջ։

Այս ամենը պայմանավորում է պարտիայի, պետական օրգանների և հասարակական կազմակերպությունների գործունեության ավելի բարձր կազմակերպման անհրաժեշտությունը կյանքի բոլոր ոլորտների կառավարման գործում։ Ահա թե ինչու ներկայումս պարտիան առաջնակարգ նշանակություն է տալիս հասարակության կառավարման գիտական կազմակերպման հարցերին։

Սոցիալիստական հասարակության կառավարման գիտական կազմակերպման հիմնական սկզբունքները մշակել է Վ. Ի. Լենինը։ Հատկապես հետհոկտեմբերյան շրջանի իր աշխատություններում նա միշտ անդրադառնում էր այդ հարցերին։

Վ. Ի. Լենինի ցուցումներին համապատասխան, սովետական իշխանության առաջին օրերից մինչև երեսնական թվականները զգալի աշխատանք է կատարվել սոցիալիստական հասարակության կառավարման գիտական կազմակերպման պրոբլեմների մշակման ուղղությամբ։ Այս հարցերին մեծ ուշադրություն է նվիրված պարտիայի XII, XIII և XV համագումարների որոշումներում։

Սակայն երեսնական թվականներին այդ աշխատանքը փաստորեն դադարեցվեց. դրա հետևանքով թեորիան գնալով ավելի կտրվեց պրակտիկայից, առաջացավ հասարակության զարգացման օբյեկտիվ օրինաչափություններն արհամարհելու տենդենց, որը տարավ դեպի սուբյեկտիվիզմ և վոլյունտարիզմ։ Կառավարման կազմակերպման գործում ըստ էության անտեսվեց ուրիշ երկըրների փորձը։ Այս բոլորը մեծ վնաս հասցրեց սոցիալիզմի կառուցման թեորիային ու պրակտիկային։

1953 թվականից հետո պարտիան ու կառավարությունը շատ բան արեցին հիշյալ տենդենցները հաղթահարելու համար։ Սակայն, այդ բեռը որոշակի չափով մնում էր նաև հետագա շրջանում, որի պատճառով էլ պարտիան, վերականգնելով ու զարգացնելով կառավարման լենինյան գիտությունը, իր քննադատության սուր ծայրը ուղղում է սուբյեկտիվիզմի և վոլյունտարիզմի դեմ, քանի որ առանց նման տենդենցների վերջնական վերացման, անհնար է իրագործել սոցիալիստական հասարակության գիտական կառավարումը և հաջողությամբ կատարել կոմունիստական շինարարության խնդիրները։

Սոցիալիստական հասարակության կառավարման գիտական կազմակերպման նման տենդենցների դրսևորման հնարավորությունը կանխող առաջին պայմանը Լենինը համարում էր հասարակության զարգացման օբյեկտիվ օրինաչափությունների հաշվառումը և այդ օրինաչափությունների պահանջներին համապատասխան ղեկավարելը։ Օբյեկտիվ օրինաչափություններն իմանալը և դրանց տիրապետելը պայմանավորում են սուբյեկտիվ գործոնի աճը հասարակության կյանքում։ Սակայն սուբյեկտիվ գործոնի ակտիվության բարձրա-



ցումը ընդհանուր ոչինչ չունի սուբյեկտիվիզմի և դրա հետ կապված վոլյունտարիզմի հետ։

Հասարակության զարգացման օբյեկտիվ օրենքները բացասող այս հոսանքների հակագիտական էությունը բացահայտել են դեռևս գիտական կոմունիզմի հիմնադիրները։ Բայց երբեմն սուբյեկտիվիզմն ու վոլյունտարիզմը դրսևորվում են նաև այն մարդկանց պրակտիկ գործունեության մեջ, որոնց գաղափարախոսությունը մարքսիզմ-լենինիզմն է։ Այդ կոնկրետ դրսևորվում է այն բանում, որ նրանք գերագնահատում են իրենց գիտելիքների ու կամքի նշանակությունը, թերագնահատում ռեալ իրադրության, գիտության և պրակտիկայի տվյալները։ Իսկ նման տենդենցները հասարակական կյանքի ղեկավարման մեջ, նույնիսկ ժամանակավոր հաջողությունների դեպքում, վերջին հաշվով, հանգեցնում են վնասակար հետևանքների։ Ղեկավարի կամքը, նրա անձնական դատողությունները օգուտ կարող են բերել միայն այն դեպքում, երբ բխում են օբյեկտիվ օրենքների պահանջներից, ռեալ իրականության գիտական վերլուծությունից։

Գիտական կառավարման կարևորագույն պահանջը Լենինը համարում էր սոցիալիստականորեն կազմակերպված տնտեսական ու քաղաքական կյանքի հարցերի ուսումնասիրությունը և լուծումը ամբողջությամբ վերցրած։ Սրան համապատասխան նա առաջ քաշեց և համակողմանիորեն մշակեց դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը՝ որպես սոցիալիստական հասարակության կառավարման հիմնական սկզբունք։

Վ. Ի. Լենինը ցույց տվեց, որ դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը օբյեկտիվորեն բխում է հենց արտադրության սոցիալիստական եղանակի էությունից։ Արտադրության միջոցների հանրային սեփականությունը պայմանավորում է սոցիալիստական հասարակության կյանքի բոլոր կողմերի կենտրոնացած ղեկավարության անհրաժեշտությունը։ Միևնույն ժամանակ, արտադրության սոցիալիստական եղանակը դեմոկրատական է իր իսկ էությամբ, քանի որ այն բացառում է շահագործումը և կառավարվում է ժողովրդի կողմից՝ նրա շահերից ելնելով։ Ահա թե ինչու սոցիալիզմի պայմաններում ցենտրալիզմի և դեմոկրատիայի զուգորդման մեջ դրսևորվում է պետության և ամբողջ ժողովրդի օրգանական միասնությունը։

Իսկական դեմոկրատական իմաստով հասկացված ցենտրալիզմը, բացատրում էր Լենինը, նախատեսում է ո՛չ միայն տեղական առանձնահատկությունների, այլև տեղական ձեռներեցության, տեղական նախաձեռնության, ընդհանուր նպատակին հասնելու ուղիների, ձևերի և շարժման միջոցների բազմազանությունը լրիվ և անարգել զարգացնելու՝ պատմության մեջ առաջին անգամ ստեղծված հնարավորությունը։ Դեմոկրատական ցենտրալիզմ նշանակում է միասնություն հիմնականում, արմատականում, էականում և բազմաձևություն առանձնահատկություններում, գործի նկատմամբ ունեցած մոտեցման մեջ, վերահսկողության իրականացման եղանակներում։ Այդ սկզբունքն ապահովում է կենտրոնացած ղեկավարության օրգանական միասնությունը՝ տեղական օրգանների մաքսիմալ նախաձեռնության, աշխատավորների լայն ինքնագործունեության զարգացման հետ։

Դեմոկրատական ցենտրալիզմը կառավարման մեջ, ամենից առաջ, նախատեսում է կառավարման ապարատի ձևավորման դեմոկրատական եղանակը, և նրա ենթակայությունը պետական իշխանության ներկայացուցչական

օրգաններին. այնուհետև՝ կենտրոնական օրգանների իրավունքների ու պարտավորությունների ճշգրիտ որոշումը և տեղական օրգանների գործում նրանց միջամտության սահմանները: Այս պահանջների պահպանումը Լենինը համարում էր տեղական օրգանների գործերին ավելորդ միջամտությունը, դրանց նկատմամբ մանրախնդիր խնամակալությունը կանխելու, կառավարման գործում բյուրոկրատիզմի տարրերը, օրինազանցությունները, անտնտեսավարությունը և սոցիալիզմի սկզբունքներին հակասող այլ դրսևորումներ ժամանակին վերացնելու իրավաբանական երաշխիք:

Ի դեպ, կառավարման չափազանց կենտրոնացման տենդենցը տիրապետող դարձավ անհատի պաշտամունքի տարիներին: Ավելին, հաստատվեց այն կարծիքը, թե իբր ամեն մի հարցի կենտրոնացած լուծումը միակ ճիշտ միջոցն է: Բյուրոկրատական այս պատրանքը քննադատվեց ՍՄԿՊ XX համագումարի կողմից: Ժողովրդական տնտեսության որոշ ճյուղերում դրական արդյունք տվեցին կառավարման վերակառուցումը, տեղական օրգանների իրավունքների ընդարձակումը: Արդյունաբերության կառավարման գործում ավելորդ կենտրոնացումը վերացնելու և ղեկավարությունը ձեռնարկություններին մոտեցնելու նպատակով ստեղծվեցին ժողտնտխորհները: Սակայն դրանք նպատակին չծառայեցին: Ավելին, ժողտնտխորհների հետագա խոշորացումից հետո կառավարման ապարատը նույնիսկ հեռացավ ձեռնարկությունից, որը, բնականաբար, բարդացրեց արդյունաբերության կառավարումը: Բացի այդ, ձեռնարկությունների դիրեկտորների իրավունքները փաստորեն ավելի սահմանափակվեցին:

Տարիներ շարունակ ակնբախ կենտրոնացում գոյություն ուներ նաև գյուղատնտեսության կառավարման մեջ, այդ արտահայտվում էր, օրինակ, այն բանում, որ սովխոզներն ու կոլտնտեսություններն ստանում էին խիստ կենտրոնացված պլանային առաջադրանքներ՝ գյուղատնտեսական արտադրանքի բոլոր տեսակների գծով: Այդպիսի պրակտիկան դատապարտվեց, և 1955 թվականին զգալիորեն ընդարձակվեցին կոլտնտեսությունների, սովխոզների ու տեղական գյուղատնտեսական օրգանների իրավունքները: Սակայն, հետագայում, նորից ծավալվեց վերևից պլաններ իջեցնելու տենդենցը՝ առանց հաշվի առնելու տեղական պայմանները և տեղական օրգանների կարծիքը: Այս ամենը հիմնովին հակասում էր դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքին, որը սոցիալիստական հասարակության և, առաջին հերթին, նրա էկոնոմիկայի կառավարման կազմակերպման գործում չի հանդուրժում ծայրահեղություններ ո՛չ կենտրոնացման և ո՛չ էլ ապակենտրոնացման գծով:

Այդ ծայրահեղությունները հաղթահարելու և կառավարման գործում դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքների անշեղ իրագործման համար անգնահատելի նշանակություն ունեն ՍՄԿՊ Կենտկոմի 1964 թ. հոկտեմբերյան և 1965 թ. մարտյան ու սեպտեմբերյան պլենումների որոշումները՝ դրանց նպատակն է ապահովել սոցիալիզմի օբյեկտիվ տնտեսական և մյուս օրենքների ճիշտ օգտագործումը, հասարակական կյանքի բոլոր ոլորտների ղեկավարման ձևերի և մեթոդների կատարելագործումը, այդ ձևերի ազատումը սուբյեկտիվիզմից և վոլյունտարիզմից: Էկոնոմիկայի ղեկավարման բնագավառում դրանք նախատեսում են միասնական պետական պլանավորման խիստ տագույն զուգորդումը լրիվ տնտեսական հաշվառքի հետ, կենտրոնացած ճյու-



ղային կառավարումը՝ ռեսպուբլիկական ինքնուրույնության ու տեղական նախաձեռնության հետ:

ՍՄԿՊ Կենտկոմի վերջին պլենումների որոշումները չեն սահմանափակվում կառավարման օրգանների սոսկ հասարակ վերակառուցմամբ: Նրանց գլխավոր նպատակն է՝ գիտական հիմունքներով վերափոխել այդ օրգանների և տնտեսական կյանքի հիմնական բջիջների միջև եղած հարաբերությունների բնույթը: Կառավարման գիտական կազմակերպման տեսակետից ամենագլխավորն այդ որոշումներում այն է, որ կենտրոնական տեղը հատկացվում է արտադրական կոլեկտիվին, ձեռնարկությանը: Այժմ ձեռնարկությունն իսկական ինքնուրույնություն ու պատասխանատվություն է ձեռք բերում արտադրության, արտադրանքի իրացման և աշխատավարձի շատ հարցերի լուծման, աշխատավորների բնակարանային և կուլտուր-կենցաղային կարիքների բավարարման գործում:

Միասնական կենտրոնացված ղեկավարման զուգորդումը տեղական ինքնուրույնության և նախաձեռնության լայն զարգացման հետ արտացոլում է սոցիալիստական հասարակության էկոնոմիկայի և կյանքի այլ հարցերի կառավարման գիտական կազմակերպման դիալեկտիկան: Այդպիսի «ցենտրալիզմն» ու «դեմոկրատիան» չեն բացառում իրար, ինչպես փորձում են պատկերել բուրժուական գաղափարախոսները: Այդ սկզբունքների միասնության պահպանումը ապահովվում է կառավարման ապարատի բոլոր օղակների գործունեության կազմակերպվածությունը, կարգապահությունը և ճշգրտությունը՝ գիտական հիմունքով:

ՍՄԿՊ Ծրագրում նշված է. «Կոմունիստական շինարարությունը ենթադրում է ամեն կերպ զարգացնել կառավարման դեմոկրատական հիմքերը՝ ամրապնդելով և կատարելագործելով ժողովրդական տնտեսության պետական կենտրոնացված ղեկավարումը»:

Սոցիալիստական հասարակության կառավարման գիտական կազմակերպման գործում Վլադիմիր Իլյիչը հատուկ նշանակություն էր տալիս կառավարման ապարատի կառուցման գիտական հիմունքների մշակմանը և նրա մշտական կատարելագործմանը: Հանդես գալով Կենտգործկոմի IX գումարման 4-րդ սեսիայում՝ նա դատապարտեց տարերային մոտեցումը ապարատի ստեղծման խնդրին և կոչ արեց մանրազնին ուսումնասիրել այդ հարցը. «... Եթե իսկապես ուսումնասիրենք մեր ապարատը և աշխատենք նրա վրա տարիներ ու տարիներ,— նշում էր Լենինը,— ապա սա կլինի հսկայական մի նվաճում, սա էլ կլինի մեր հաջողության ապահովումը» (Երկեր, հ. 33, էջ 469):

Վ. Ի. Լենինը մշտապես ընդգծում էր, որ կառավարման կազմակերպումը պետք է համապատասխանի տվյալ կոնկրետ իրադրության տնտեսական-քաղաքական խնդիրներին: Ուստի և կառավարման ապարատի կառուցվածքը պետք է մշտապես կատարելագործվի՝ այդ պայմաններին համապատասխան: «Հարկ է լինելու շատ բան վերակերտել,— ասում էր նա,— և դրա պատճառով «շփոթվելն» անհեթեթության գագաթնակետը կլիներ (եթե ոչ ավելի վատ, քան անհեթեթություն)» (Նույն տեղը, էջ 116): Սակայն անհրաժեշտ է նշել, որ վերջերս Լենինի այս դրույթը սխալ էր մեկնաբանվում և ծառայում էր որպես արդարացում կառավարման ապարատի տարբեր օղակների շուտափույթ վերակառուցումների համար: Ըստ որում պնդում էին, թե Լենինը համարձակ դիմում էր կառավարման ապարատի վերակառուցումներին՝ դեն շպրտելով հնացած

ձևերը։ Բայց, ընդսմին, մոռանում էին, որ Իլյիչը հնացած ձևերը դեն էր նետում այն դեպքում միայն, երբ գործնականում երևում էր, որ դրանք իրոք հնացել են։ Պատահական չէ, որ նա շարունակ զգուշացնում էր վերակառուցումներով տարվողներին և խորհուրդ էր տալիս նման հարցերը լուծել «չափազանց դանդաղ»։

Այս կապակցությամբ Լենինը մեծ նշանակություն էր տալիս կառավարման կազմակերպման բնագավառում էքսպերիմենտներ կատարելուն։ Այսպես՝ նա պահանջում էր, որ ԺԿԽ-ի և ԱՊԽ-ի նախագահների յուրաքանչյուր տեղակալ պատասխանատու լինի այս կամ այն ժողկոմատի մեկ-երկու բաժինների կամ հիմնարկների հաստիքների նորմաների մշակման, այդ նորմաների ստուգման, գործավարության լավագույն ձևերի կիրառման և այլ հարցերի համար։ Այդ օրինակելի հիմնարկություններում մշակված աշխատանքի ձևերը և արտադրողականության բարձրացման եղանակները, վերահսկողության մեթոդները, նշում էր նա, հետագայում պետք է կիրառվեն բոլոր հիմնարկություններում։

Պարտիական, պետական, արհմիութենական և կոմերիտական օրգանները արդյունաբերականի և գյուղականի բաժանելը ցույց տվեց, որ անթույլատրելի է կառավարման ապարատի նման վերակառուցումը։ Վլադիմիր Իլյիչը առաջարկում էր ստեղծել օրգանների հատուկ սիստեմ, որոնք զբաղվեին կառավարման ապարատի համաչափ ուսումնասիրությունով, աշխատանքի բարելավմամբ ու մշտական կատարելագործմամբ։ Այդ շրջանում գործի ղեկավարումը դրված էր ԿՎՀ—ԲԳՏ-ի վրա։ Ներկայումս պարտիան վերականգնում է Լենինի այդ ցուցումները և ամենուրեք ղեկավարվում դրանցով։

Սոցիալիստական հասարակության ղեկավարման գիտական կազմակերպման խնդրում Լենինը մեծ նշանակություն էր տալիս կառավարման ապարատի տարբեր օղակների ֆունկցիաների ճշգրիտ սահմանազատմանը և նրանց ճիշտ փոխհարաբերությունների սահմանմանը։ Մասնավորապես, խոսելով պարտիական ու սովետական ապարատի մասին, նա գրում էր. «...անհրաժեշտ է շատ ավելի ճշգրիտ սահմանագծել պարտիայի (ու նրա Կենտկոմի) և սովետական իշխանության ֆունկցիաները. բարձրացնել սովետական աշխատողների և սովետական հիմնարկների պատասխանատվությունն ու ինքնուրույնությունը, իսկ պարտիային վերապահել, ամբողջությամբ վերցրած, բոլոր պետօրգանների աշխատանքի ընդհանուր ղեկավարությունը; առանց այժմյան չափազանց հաճախակի, անկանոն, հաճախ մանր միջամտության» (Երկեր, հ. 33, էջ 297)։

Պարտիական և պետական օրգանների ու հասարակական կազմակերպությունների փոխհարաբերությունների վերաբերյալ այս պարզ դրույթները, դժբախտաբար, անհատի պաշտամունքի տարիներին մոռացության էին տրվել։ Հաստատվում էր այն կարծիքը, թե պարտիայի դերի բարձրացում նշանակում է բոլոր հարցերի լուծում պարտիական օրգանների կողմից։ Պետք է նշել, որ առանձին պարտիական օրգանների գործունեության մեջ այժմ էլ հանդիպում են նման տենդենցներ։ Հաճախ պարտիական օրգաններն իրենց վրա են վերցնում այնպիսի հարցերի լուծում, որոնք սովետների, արհմիությունների և այլ կազմակերպությունների անմիջական իրավասության առարկա են։ Հասկանալի է, որ տնտեսական, քաղաքական և կազմակերպական կարևորագույն հարցերը չեն կարող որոշվել առանց պարտիայի ղեկավար դիրեկտիվների և ցուցումների։ Բայց պարտիան իր դիրեկտիվները մշակում է ոչ թե մեկուսացած,



այլ պետական օրգանների և հասարակական կազմակերպությունների ակտիվ մասնակցությամբ։

Լենինը գտնում էր, որ նպատակահարմար է որոշ պարտիական ու սովետական հիմնարկությունների միացումը, որը նա համարում էր «մեր քաղաքականության մեջ ահագին ուժի աղբյուր» (Երկեր, հ. 33, էջ 590)։ Որքան էլ տարօրինակ է, բայց պարտիական, սովետական և այլ օրգանների կառուցման այսօրվա պրակտիկայում ինչ-որ հակադիր բան կա։ Փաստորեն ամենուրեք զուգահեռաբար գոյություն ունեն միևնույն օրգանները պարտիական, սովետական, արհմիութենական և կոմերիտական ապարատի սիստեմում։ Նույն սխեմայով բաժիններ կան, օրինակ, քաղկոմներում, շրջկոմներում և պարտիական ու սովետական օրգանների այլ օղակներում։ Այդ պատճառով էլ պատահական չէ, որ գտնվելով միևնույն տերիտորիայում և գործ ունենալով միևնույն ձեռնարկությունների հետ՝ դրանք հաճախ կրկնում են իրար։

Կառավարման գիտական կազմակերպումը նախատեսում է ո՛չ միայն հիմնավորված «կառավարչական որոշումների» ընդունում, այլ, գլխավորապես, նրանց կենսագործում։ Այդ կապակցությամբ սոցիալիստական հասարակության կառավարման գիտական կազմակերպման հիմնական պահանջներից մեկը Լենինը համարում էր կառավարման յուրաքանչյուր օրգանի և նրա ղեկավարների կոլեգիալ ու անձնական պատասխանատվության խիստ պահպանումը՝ որոշումների ընդունման և դրանց կենսագործման համար։ Հայտնի է, որ կոլեգիալությունը սոցիալիստական հասարակության կառավարման հիմնական դեմոկրատական սկզբունքներից մեկն է։ Առանց հարցերի կոլեգիալ քննարկման չի կարելի ճիշտ որոշումներ ընդունել։ Սակայն երբեմն քողարկվելով այդ սկզբունքով, որոշ ղեկավարներ խուսափում են անձնական պատասխանատվությունից։ Մինչդեռ Վլադիմիր Իլյիչն ընդգծում էր, որ «Կառավարման բոլոր հարցերի կոլեգիալ քննությունն ու վճռմանը սովետական հիմնարկություններում պետք է հարակցի սովետական ամեն մի պաշտոնի մեջ գտնվող անձերից յուրաքանչյուրի ամենաճշգրիտ պատասխանատվության սահմանումը, պատասխանատվություն պարզ ու աններկմտելի գծված որոշ առաջադրությունների և պրակտիկ աշխատանքների կատարման համար» (Երկեր, հ. 28, էջ 448)։

Յուրաքանչյուր աշխատողի անձնական պատասխանատվության բացակայությունը դիմազրկություն է ստեղծում կառավարման օրգաններում։ Այդ առաջանում է և նրանից, որ երբ վերադաս օրգանները գնահատում և վերլուծում են աշխատանքի կոնկրետ տեղամասի գործունեությունը, որպես կանոն միշտ հիշատակվում են մինիստրի, մարզկոմի, քաղկոմի և շրջկոմի քարտուղարների և, լավագույն դեպքում՝ գործարանի դիրեկտորի ազգանունները։ Հենց սրա դեմ էր ծառանում Լենինը։ Հայտնի է, որ Իլյիչի ժամանակ ԺԿԽ-ի նիստերին, կոնկրետ հարցերի քննարկման համար, հրավիրվում էին այն շարքային աշխատողները, որոնք անմիջականորեն պատասխանատու էին տվյալ տեղամասի համար։ Այդ բարձրացնում էր անձնական պատասխանատվությունը, զարգացնում գործիմացությունը, ստեղծագործական ակտիվությունը և, միաժամանակ, գործուն միջոց էր բյուրոկրատիզմի և քաշքշուկի դեմ պայքարելու համար։

Կյանքը գնալով ավելի է համոզում, որ առանց անձնական պատասխանատվության ու պահանջկոտության ուժեղացման անհնար է կազմակերպել կառավարման օրգանի ամեն մի օղակի ճշգրիտ և կարգավորված աշխատանքը։

Բայց որոշ ղեկավարներ ենթակաների նկատմամբ պահանջկոտության ու պատասխանատվության բացակայությունը երբեմն բացատրում են ղեկավարման մեթոդների դեմոկրատացմամբ։ Սակայն սոցիալիստական դեմոկրատիայի ու կարգապահության սխալ հասկացողություն է այս։ Սոցիալիստական դեմոկրատիան ու կարգապահությունն անքակտելիորեն կապված են իրար հետ։ Սոցիալիստական դեմոկրատիայի մշտական զարգացումը նշանակում է հասարակության կառավարման գործում մասսաների մասնակցության ավելի ու ավելի ընդլայնում։ Բայց սրանից չի հետևում, որ հասարակության յուրաքանչյուր անդամ կարող է անել այն, ինչ խելքին փչի, առանց հաշվի առնելու թե որքանով է նրա գործունեությունը համապատասխանում հասարակության շահերին։

Հասարակության գիտական կառավարումը անհամատեղելի է պատասխանատվության, կարգապահության ու պահանջկոտության բացակայության հետ։ Կոմունիստական բարձր գիտակցականությունը, աշխատասիրությունը և կարգապահությունը, հանրային շահերի նկատմամբ նվիրվածությունը, կոմունիստական հասարակարգի մարդու անկապտելի հատկություններն են,—ասված է ՍՄԿԿ ծրագրում։

Այդպիսի հատկությունները դաստիարակվում են տարբեր ձևերով ու մեթոդներով, ինչպես՝ վարչական միջոցների կիրառմամբ, պահանջկոտության և հանձնարարված գործի համար պատասխանատվության բարձրացմամբ։ Հասկանալի է, որ պահանջկոտության բարձրացումը և վարչական միջոցների կիրառումը ընդհանուր ոչինչ չունեն վարչարարության հետ։ Սակայն այդպիսի նույնացում, դժբախտաբար, հաճախ է հանդիպում։ Որոշ ընկերներ ենթակաների նկատմամբ իրենց միանձնյա ղեկավարությունը, պահանջկոտությունը հասցնում են միայն հրամանների արձակման, արհամարհում են կոլեկտիվի դերը, հասարակական կազմակերպություններին հեռու են պահում կառավարման կարևոր հարցերի վճռմանը մասնակցելուց։ Նման տենդենցները պետք է վերջնականապես հաղթահարվեն։ Վարչարարությամբ տարվելը ոչինչ ընդհանուր չունի գիտական ղեկավարման հետ։ Ոչ թե վարչարարություն, այլ ղեկավարման բարձր կուլտուրա և մասսաների ճամոզում։ Սա է սոցիալիստական հասարակության կառավարման գիտական կազմակերպման հիմնական պահանջներից մեկը։

Վ. Ի. Լենինը մեծ նշանակություն էր տալիս կադրերի ճիշտ ընտրությանը և նրանց քաղաքական հասունությանը՝ սոցիալիստական հասարակության կառավարման գիտական կազմակերպման այս և այլ սկզբունքների հետևողական իրագործման համար։

Եթե չկան որակյալ, գործը կազմակերպելու ունակ կադրեր, լավագույն որոշումն իսկ չի կարող կենսագործվել։ Ամեն մի ադմինիստրատոր-ղեկավար չէ, որ կարող է ապահովել կառավարման գիտական կազմակերպումը։ Վ. Ի. Լենինն ընդգծում էր, որ բացի քաղաքական հասունությունից «կառավարելու համար հարկավոր է ձեռնհաս լինել, հարկավոր է լիովին և մանրամասնորեն գիտենալ արտադրության բոլոր պայմանները, հարկավոր է գիտենալ այդ արտադրության տեխնիկան՝ նրա ժամանակակից բարձրությամբ, հարկավոր է ունենալ գիտական որոշ կրթություն» (Երկեր, հ. 30, էջ 547)։

Սակայն մասնագիտական գիտելիքները ևս բավական չեն։ Լենինը կոչ էր անում կադրերին՝ տիրապետել կառավարման գիտությանը, պահանջում էր



բոլոր պոստերից հանել այն կոմունիստներին, ովքեր լրջորեն չեն սովորում կառավարման գործը։ Վ. Ի. Լենինը գտնում էր, որ անհանդուրժելի է այն ղեկավարը, ով հաշվի չի առնում մասնագետների կարծիքները։ «Այն կոմունիստը,— ասում էր Լենինը,— որը չի ապացուցել մասնագետների աշխատանքը միավորելու և համեստորեն ուղղություն տալու իր հմտությունը, գործի էության մեջ թափանցելով, այն մանրամասն ուսումնասիրելով, այդպիսի կոմունիստը հաճախ վնասակար է» (Երկեր, հ. 32, էջ 167)։

Լենինյան պահանջներին համեմատ, ելնելով կադրերի ընտրության պրակտիկայի վերլուծությունից, մենք չենք կարող աչք փակել այն բանի առաջ, որ այդ սկզբունքները երբեմն կոպիտ կերպով խախտվում են։

Նման երևույթները Լենինը համարում էր մեծ չարիք և գտնում էր, որ դրանք ժամանակին կարելի է կանխել վերից վար վերահսկողություն և կատարման ստուգում կազմակերպելու միջոցով։ Նա բազմիցս ընդգծում էր, որ ավելի խելամիտ և տնտեսավարորեն կգործենք, եթե ժամանակին հայտնաբերենք այս կամ այն չարաշահման հազիվ նշմարվող ծիլերը և վերացնենք դրանք, քան թե կորցնենք ժամանակը, հնարավորություն տանք, որ դրանք աճեն ու հանգեցնեն ծանր հետևանքների։

Վերահսկողության և կատարման ստուգման կարևորագույն պայմանը Վ. Ի. Լենինը համարում էր լայն մասսաների մասնակցությունն այդ աշխատանքում։ «Անհրաժեշտ է,— նշում էր նա,— որ անպարտիական լայն մասսաները ստուգեն պետական բոլոր գործերը և սովորեն իրենք կառավարել» (Երկեր, հ. 30, էջ 446)։

Հետևելով Լենինի ցուցումներին, մեր պարտիան մշտապես կատարելագործում է վերահսկող օրգանների սիստեմը, ռեալ պայմաններ ստեղծում նրանց աշխատանքում մասսաների գործնական մասնակցության համար։ Հայտնի է, որ հենց այդ նպատակով էլ ստեղծվել են ժողովրդական վերահսկողության օրգանները։ Ժողովրդական վերահսկողության օրգանների կողմից ձեռնարկությունների ու հիմնարկությունների աշխատանքի սիստեմատիկ ստուգումը բոլոր հնարավոր խախտումները կանխելու գործուն միջոց է, այն հանդիսանում է մասսաների դաստիարակության և ստեղծագործական նախաձեռնության զարգացման դպրոց։ Միաժամանակ մասսաների մասնակցությունը վերահսկողության իրագործմանը հնարավորություն է տալիս մշտապես ուսումնասիրելու մասսաների փորձը, իսկ այդ իր հերթին սոցիալիստական հասարակության կառավարման գիտական կազմակերպման կարևոր պայմանն է։

Մասսաների փորձի և կարծիքի բազմակողմանի հաշվառումը և, միաժամանակ, մյուս սկզբունքների խստագույն պահպանումը հանրային, կոլեկտիվ և անձնական շահերի զուգակցման անհրաժեշտ պայմանն են, առանց դրանց անհնար է սոցիալիստական հասարակության կառավարման գիտական կազմակերպումը։ Եվ դա հասկանալի է, քանի որ հանրային կյանքի ամեն մի ճյուղի, ամեն մի ձեռնարկության կամ հիմնարկության կառավարումը կապված է մարդկանց միջև, անձնավորությունների և հասարակության միջև եղած հարաբերությունների անմիջական կարգավորման հետ։

Հասարակության կառավարման գիտական կազմակերպման համար անհրաժեշտ է, որ կառավարչական աշխատանքը կառուցված լինի գիտական հիմունքով՝ կիրառելով ժամանակակից տեխնիկայի բոլոր նվաճումները։

Կարևորագույն նշանակություն տալով ընդհանրապես աշխատանքի և,

մասնավորապես, կառավարչական աշխատանքի գիտական կազմակերպմանը, Վ. Ի. Լենինը գրում է. «Սովետական իշխանության համար հատկապես աշխատանքի կազմակերպումն առանձին խոշորագույն ձեռնարկություններում և առանձին գյուղական համայնքներում ամբողջ հասարակական կյանքի ամենագլխավոր, արմատական և հրատապ հարցն է» (Երկեր, հ. 27, էջ 238)։ Այդ նա համարում էր ամենադժվարին, բայց ազնիվ խնդիրը, որի լուծումից կախված է սոցիալիստական կարգի նվաճումը։

Ներկայումս պարտիան միջոցներ է ձեռնարկում կառավարչական աշխատանքի գիտական կազմակերպման լենինյան գաղափարների վերականգնման և զարգացման ուղղությամբ։ Հիմնված է աշխատանքի գիտահետազոտական ինստիտուտ, պայմաններ են ստեղծված այդ բնագավառում կոնկրետ սոցիոլոգիական ուսումնասիրություններ կատարելու համար, կառավարման գիտության հարցերը լայնորեն քննարկվում են փիլիսոփայական, տնտեսական, սոցիոլոգիական և իրավաբանական գրականության մեջ։ Հատուկ ուշադրություն է նվիրվում կիբեռնետիկայի և այլ գիտատեխնիկական նվաճումների օգտագործմանը՝ ինֆորմացիաների հավաքման, վերամշակման և հաղորդման համար, առանց որի արդի պայմաններում անհնար է կազմակերպել հասարակության գիտական կառավարումը։

Եվ այսպես, հասարակության կառավարման գիտական կազմակերպում նշանակում է գիտականորեն հիմնավորված և փոխադարձաբար իրար հետ կապված միջոցառումների իրագործում՝ հասարակական կյանքի տարբեր կողմերի կարգավորման համար։ Սոցիալիստական հասարակության մեջ կոմունիստական պարտիան է կառավարման գիտական սկզբունքների կրողը։ Մարքսիզմ-լենինիզմն է նրա քաղաքականության, ստրատեգիայի ու տակտիկայի տեսական հիմքը։ Ղեկավարվելով և ստեղծագործաբար զարգացնելով այդ թեորիան, պարտիան նորանոր հաջողություններ է ձեռք բերում կոմունիզմի կառուցման, ժողովրդի նյութական ու կուլտուրական բարեկեցության հետագա վերելքի ասպարեզում։



# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՊՐՈԳՐԵՍԸ ԵՎ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՊԱՅՔԱՐԸ ԿԱՊԻՏԱԼԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

Ա. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ

Գիտական ու տեխնիկական հեղաշրջումները լուրջ ծավալ ընդունեցին կապիտալիզմի զարգացման պայմաններում և, հատկապես, կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու շրջանում։ Էլեկտրականության գյուտը և նրա արդյունաբերական կիրառումը հեղաշրջում մտցրին էներգետիկ բազայի և արտադրության պրոցեսների մեջ։ Էլեկտրաէներգիան իր առավելությունների շնորհիվ հետին պլան մղեց շոգու էներգիան և լայնորեն կիրառվեց արտադրության բոլոր ճյուղերում։ Էլեկտրաէներգիայի յուրացումը հնարավորություն ստեղծեց մեծ թափով զարկ տալու մեքենայական արտադրությանը, անցնելու նրա բարձր աստիճանին՝ կոմպլեքսային մեքենայացմանն ու ավտոմատացմանը։ Էլեկտրականության շնորհիվ սկսեցին արագ զարգանալ քիմիական և էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը, էլեկտրոնիկան, կիբեռնետիկան, հրթիռային տեխնիկան, ծավալվեցին ատոմային ու ջերմամիջուկային էներգիայի հետազոտությունները։ Արտադրության կառուցվածքի մեջ այս լուրջ փոփոխությունները գիտատեխնիկական պրոգրեսի արդյունք են։

Կապիտալիզմի պայմաններում գիտատեխնիկական պրոգրեսը հակասական բնույթ ունի, որովհետև արտադրահարաբերությունները նեղ են գիտատեխնիկական հեղափոխությունն ամբողջ լայնությամբ ու խորությամբ ծավալելու համար։ Բուրժուազիան այն չափով է շահագրգռված գիտատեխնիկական պրոգրեսով, որ չափով այդ նոր շահույթներ կբերի իրեն։ Մոնոպոլիստական կապիտալիզմի նեղ շահադիտական ձգտումը հնարավորություն չի տալիս գիտատեխնիկական նվաճումներն իրենց ողջ հզորությամբ ի սպաս դնելու համամարդկային շահերին։ Սակայն գերշահույթների ստացման տենչը և այդ նպատակին ծառայող մրցակցությունը խթանում են գիտատեխնիկական պրոգրեսը, հետևապես և արտադրության կատարելագործումը։

Հետպատերազմյան շրջանում կապիտալիստական երկրների գիտատեխնիկական պրոգրեսի կարևորագույն գործոններից է նաև կապիտալիստական էկոնոմիկայի ռազմականացումը։ Սպառազինության ուժեղ մրցավազքը տարեկան մի քանի տասնյակ միլիարդ դոլարներ է կլանում։ Միայն ԱՄՆ-ի կառավարությունը յուրաքանչյուր տարի 50—55 միլիարդ դոլար է հատկացնում ռազ-

մական ծախսերին։ Մոնոպոլիաները մեծ շահույթ բերող պատվերներ են ստա-
նում իրենց կառավարություններից։ Եթե արտադրության ռազմականացած
ճյուղերը իրացման լայն շուկա են ստեղծում, ապա արտադրության մնացած
ճյուղերի մի մասը աշխատավորության նվազ գնողունակության պատճառով
այդպիսի շուկա չի ունենում։ Դրա հետևանքով էլ այդ ճյուղերը լրիվ հզորու-
թյամբ չեն աշխատում, նկատվում է խրոնիկական թերբեռնվածություն։

Վիթխարի շահույթներ կորզող մոնոպոլիստները մարդկային մտքի նվա-
ճումները փաստորեն ուղղում են հենց մարդկության դեմ։ Դրա արտահայտու-
թյունն են աշխարհի տարբեր մասերում պատերազմ բորբոքելու իմպերիալիզ-
մի փորձերը։ Ատոմային և ջերմամիջուկային ու այլ նոր զենքերի արտադրու-
թյունն ու կուտակումը դարձել են իմպերիալիստական բուրժուազիայի ամենա-
եկամտաբեր աղբյուրներից մեկը։ Կապիտալի երկրներում գիտատեխնիկական
պրոգրեսին մեծ չափով նպաստում է նաև երկու տարբեր սոցիալ-քաղաքական
սիստեմների միջև ծավալված մրցությունը։ Ամբողջությամբ վերցրած կապի-
տալիստական աշխարհի արդյունաբերությունը որոշ չափով արագ է աճել։
Այժմ մինչպատերազմյան մակարդակի համեմատությամբ այն աճել է 3 ան-
գամ։ Սակայն, այդ աճը տեղի է ունենում անհամաչափ, որոշ երկրներում ար-
տադրությունը դանդաղ է աճում, իսկ մյուսներում՝ համեմատաբար արագ։

Զարգացման տեմպերի տեսակետից, 1957—1958 թթ. հետճգնաժամային
ժամանակաշրջանում, առաջին տեղում են Ճապոնիան և Իտալիան, երկրորդ
տեղում՝ ԳՖՌ-ն, Ֆրանսիան, երրորդ տեղում՝ ԱՄՆ-ը, Կանադան, Անգլիան։
1963 թ. արտադրությունը ԱՄՆ-ում 1957 թ. համեմատությամբ, ավելացել է
միայն 24, Կանադայում՝ 26, Անգլիայում՝ 18 տոկոսով, այն դեպքում, երբ Ճա-
պոնիայում՝ ավելի քան 2 անգամ, Իտալիայում՝ 77 տոկոսով։

Ընդհանուր առմամբ, 1956—1963 թվականներին զարգացած կապիտալիս-
տական երկրներում արտադրությունն աճել է 36, իսկ թույլ զարգացած երկրնե-
րում՝ 66 տոկոսով։

Արտադրության այդպիսի աճը կապիտալիստական երկրներում, անշուշտ,
կապված է ստրուկտուրային, այսինքն՝ արտադրության կառուցվածքի այն փո-
փոխությունների, տեղաշարժերի հետ, որոնք արդյունք են հետպատերազմյան
շրջանում տեղի ունեցող գիտատեխնիկական ռևոլյուցիայի։ Հատկապես զար-
գացած կապիտալիստական երկրներում երևան են եկել արտադրության նոր,
պրոգրեսիվ ճյուղեր, որոնք զարգանում են բացառապես նոր տեխնիկայի, աշ-
խատանքի նոր առարկաների, էներգիայի նոր աղբյուրների բազայի վրա։

Գիտատեխնիկական պրոգրեսի հետևանքով արտադրության մեջ առաջա-
ցած նոր երևույթները, ստրուկտուրային փոփոխությունները, սակայն, տարբեր
կապիտալիստական երկրներում տարբեր ձևով են դրսևորվում։ ԱՄՆ-ում, օրի-
նակ, այդ պրոցեսը կրում է բարդ և հակասական բնույթ։ Այնտեղ նոր արտա-
դրաճյուղերի ծագման ու զարգացման, ավտոմատացման ու քիմիացման, աշ-
խատանքի արտադրողականության աճի, նոր հումքային բազայի ձևավորման
հետ մեկտեղ, նկատվում է ամբողջ արդյունաբերական արտադրության տեմպի
էական դանդաղում, արտադրական ապարատի խրոնիկական թերբեռնվածու-
թյուն, գործազրկության աճ։ Արդյունաբերական արտադրության զարգացման
տարեկան միջին տեմպը, օրինակ, 1953—1963 թվականներին կազմել է 3,1
տոկոս, որն, իրոք, ցածր է։ Դրա հետ մեկտեղ, սակայն, առանձին ճյուղերի,
ասենք՝ քիմիական արդյունաբերության, զարգացման տարեկան միջին տեմպը



նույն ժամանակամիջոցում կազմել է 7,7, էլեկտրաէներգիայի արտադրությա-
նը՝ 7,9, սարքաշինությանը՝ 4,4, մետաղաձուլական արդյունաբերությանը՝ 0,1,
արտահանող արդյունաբերությանը՝ 1,5 տոկոս և այլն։

Վերոհիշյալ տվյալները ցույց են տալիս, որ առավել արագ տեմպերով
զարգանում է քիմիական արդյունաբերությունը, որի արտադրական հզորու-
թյան 70 տոկոսն ստեղծվել է հետպատերազմյան տարիներին. իսկ դրա 47 տո-
կոսը՝ միայն վերջին յոթ տարիներին։ Այնուհետև, նշված տվյալներից երևում
է, որ ստրուկտուրային փոփոխությունների հետևանքով ամերիկյան արտա-
դրության որոշ ճյուղեր համարյա աճ չեն տալիս և չեն կարողանում լրիվին
օգտագործել արտադրական հզորությունները։ Վերջին երկու տարում, օրինակ,
պողպատաձուլական արդյունաբերությունն զգալի չափով ետ է մնացել, և օգ-
տագործվել է նրա արտադրական հզորությունների միայն 60 տոկոսը։ Ամե-
րիկյան մասնագետների հաշվումներով ԱՄՆ-ի արդյունաբերական արտա-
դրության հզորությունների օգտագործումը, 1943 թվականի ամենաբարձր մա-
կարդակի համեմատությամբ, 1960 թվականին իջել է մինչև 53 տոկոսի.
(Факты о положении трудящихся в США (1961—1962), 1964 г., стр.
20—21)։ Դա բացատրվում է սպառման շուկայի նեղ շրջանակներով, ուր այդ
ճյուղերի արտադրանքը հնարավոր չէ լրիվ սպառել։

Գիտատեխնիկական պրոգրեսի գլխավոր ուղղություններից մեկը արտա-
դրական պրոցեսների ավտոմատացումն է, որը լուրջ փոփոխություն է մտցնում
արտադրության հաստոցային պարկի մեջ։ Տեխնիկական այդ նորագույն մի-
ջոցների գնման ու տեղավորման համար 1962 թվականին ծախսվել է Միացյալ
Նահանգների ամբողջ արդյունաբերության մեջ նախատեսված կապիտալ ներ-
դրումների 18 տոկոսը։ Գիտատեխնիկական ռևոլյուցիայի արդյունքի ցայտուն
օրինակ է նորաստեղծ էլեկտրոնային սարքավորումների արտադրությունը։
ԱՄՆ-ում 15 տարի առաջ եղել են ընդամենը մի քանի հատ ոչ-բարդ, հաշվիչ-
վճռող մեքենաներ, իսկ 1963 թվականին բանել են 12.000 էլեկտրոնային հաշ-
վիչ մեքենաներ։

ԱՄՆ-ի արտադրության ստրուկտուրային նշված փոփոխությունների հետ
սերտ կապված են նաև գիտահետազոտական աշխատանքներին հատկացվող
ծախսերի մեջ տեղի ունեցող փոփոխությունները։ Երկրի մասշտաբով այդ ընդ-
հանուր ծախսերն զգալի չափով աճել են. եթե 1953—54 ֆինանսական տարում
դրանք կազմում էին 5 միլիարդ դոլար, ապա 1962—63 ֆինանսական տարում
հասան 17 միլիարդի։

Գիտատեխնիկական ռևոլյուցիայի շնորհիվ ստրուկտուրային փոփոխու-
թյունները ներթափանցել են նաև առանձին խոշորագույն մոնոպոլիաների գոր-
ծունեության ոլորտը։ Այսպես, օրինակ, ԱՄՆ-ում ռոկֆելերներն արտադրու-
թյան մեջ սկսել են արագ զարգացնել այնպիսի պրոգրեսիվ ճյուղեր, ինչպիսիք
են՝ քիմիական, էլեկտրատեխնիկական, էլեկտրոնային, ավիացիոն, հրթիռային
և ատոմային ճյուղերը։ Այդ ամենի շնորհիվ Ռոկֆելերի ֆինանսական խումբը
հնարավորություն է ստացել մեծ չափով մեծացնելու իր շահույթները և, հե-
տևապես, մրցակցային պայքարում դուրս գալու առաջին տեղերից մեկը և իր
հզորությամբ գրեթե հավասարվելու Մորգանին։ Եթե 1931 թվականին Մոր-
գանի կապիտալը կազմում էր 43 միլիարդ դոլար, Ռոկֆելերինը՝ 21,5 միլիարդ
կամ համարյա երկու անգամ պակաս, ապա 1961 թվականի տվյալներով Մոր-

գանի կապիտալը հասնում էր 93 միլիարդ 339 միլիոն դոլարի, իսկ Ռոկֆելլերինը՝ 88 միլիարդ 560 միլիոն դոլարի:

Վերջին տարիներին գիտատեխնիկական նոր հայտնագործությունները փոփոխություններ մտցրին նաև Արևմտյան Եվրոպայի ու Ճապոնիայի արտադրության կառուցվածքում: Արևմտյան Գերմանիայում, հատկապես, հետպատերազմյան տարիներին, բարձր տեմպերով սկսեցին զարգանալ այնպիսի ճյուղեր, ինչպիսիք են՝ արհեստական և սինթետիկ թելերի մշակումը, քիմիական, էլեկտրատեխնիկական, տրանսպորտային մեքենաշինությունը, նավթի արտահանումն ու մշակումը, էլեկտրաէներգիայի արտադրությունը, ընդհանուր մեքենաշինությունը, ճշգրիտ մեխանիկան և օպտիկան: Հատկապես մեծ է քիմիայի զարգացման տարեկան միջին տեմպը (որը 1950—1962 թվականների ժամանակաշրջանում կազմել է 11,2 տոկոս): Եթե ԳՖՌ-ում քիմիայի բաժինն արդյունաբերության մեջ 1950 թվականին կազմում էր 9,4 տոկոս, ապա 1960 թվականին այն ավելացել է 12 տոկոսով. 1950 թվականին քիմիական արդյունաբերության մեջ աշխատում էին 365 000 մարդ, 1959 թ. 620 000 մարդ:

Վերջին տասը տարում Ճապոնիան լուրջ հաջողությունների է հասել գիտատեխնիկական նվաճումների օգտագործման ասպարեզում: Ճապոնիան հետպատերազմյան շրջանում ուշ մտավ զարգացման հունի մեջ, բայց, չնայած դրան, արագ տեմպերով սկսեց զարգանալ նրա արդյունաբերությունը:

Հետպատերազմյան շրջանում, գիտատեխնիկական ռևոլյուցիան արդյունաբերությունից բացի ներթափանցել է նաև գյուղատնտեսական արտադրության մեջ և զգալի փոփոխություններ մտցրել նրա նյութա-արտադրական բազայում: Այսպես, օրինակ, վերջին տասնամյակում Արևմտյան Գերմանիայի գյուղատնտեսությունը ենթարկվել է բարձր մեքենայացման, քիմիացման ու էլեկտրիֆիկացման, որոնք բարձրացրել են նրա ինտենսիվությունը:

1950 թվականից մինչև 1960 թվականը Արևմտյան Գերմանիայում տրակտորների թիվն ավելացել է 6,2 անգամ, իսկ պարարտանյութերի օգտագործումը այդ նույն ժամանակամիջոցում աճել է 60 տոկոսով: Վերջին տասնամյակում խիստ բարձրացել է նաև աշխատանքի արտադրողականությունը:

Տեխնիկական հագեցվածության տեսակետից ֆրանսիական գյուղատնտեսությունը մինչև վերջին տասը տարին Արևմտյան Եվրոպայում ամենից հետամնացն էր համարվում: Բուրժուական տնտեսագետներն ու պատմաբաններն այդ բացատրում էին նրա ստրուկտուրայի «կոնսերվատիվ» բնույթով և մասամբ էլ՝ մանր գյուղացիական արտադրության բավականին բարձր տեսակարար կշռով: Սակայն գյուղատնտեսության մեջ խոշոր արտադրությունն աստիճանաբար ետ մղեց մանր ապրանքային տնտեսությունը և 1950 թվականից սկսած ֆրանսիական գյուղատնտեսության մեջ տեղի ունեցան քանակական և որակական լուրջ փոփոխություններ: Եթե 1946 թվականին գյուղատնտեսության մեջ հաշվվում էր 59,8 հազար տրակտոր, ապա 1962 թվականին այն հասավ մինչև 900 հազարի: Մեծ չափերով բարձրացան նաև գյուղատնտեսության էլեկտրազինվածությունն ու քիմիացումը:

Գիտատեխնիկական հեղաշրջման շնորհիվ ԱՄՆ-ի գյուղատնտեսության մեջ նյութատեխնիկական ստրուկտուրային փոփոխությունները տեղի ունեցան ավելի ինտենսիվ: ԱՄՆ-ի գյուղատնտեսությունը հագեցված է ժամանակակից գյուղատնտեսական մեքենաներով և 50-ական թվականներին արդեն ավարտվել էր հողի մշակման բոլոր գործողությունների մեքենայացումը: Այժմ լրիվ



մեքենայացվել է հացահատիկի, շաքարի ճակնդեղի, կարտոֆիլի բերքահավաքը: Եթե 1940 թվականին տրակտորային պարկում հաշվվում էին 1.567 հազար տրակտոր, ապա 1963 թվականին դրանց թիվը հասել է 5.170 հազարի, իսկ հացահատիկային կոմբայնները, համապատասխանաբար՝ 190 հազարից 1.020 հազարի:

Ամերիկյան գյուղատնտեսությունն ինտենսիվ կերպով ենթարկվում է նաև էլեկտրիֆիկացման ու քիմիացման: 1960 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, 3 անգամ ավելի քիմիական պարարտանյութեր են օգտագործվել: Երկրի մասշտաբով միայն երեք կուլտուրաներ՝ եգիպտացորենը, բամբակը և ցորենը, կլանում են օգտագործվող ամբողջ քիմիական պարարտանյութերի $1/2$-ը, որից միայն $1/3$-ը՝ բաժին է ընկնում եգիպտացորենին:

Գիտատեխնիկական պրոգրեսը, ինչպես ցույց են տալիս փաստերը, ներթափանցելով կապիտալիստական արտադրության ճյուղերի մեջ, դառնում է արտադրողական ուժերի զարգացման վճռական գործոն: Այսպիսով, գիտությունը անմիջական արտադրողական ուժի է վերածվում, սակայն, միաժամանակ, ինչպես նշված է ՍՄԿԿ Ծրագրում, «մոնոպոլիստական կապիտալի տիրապետության պայմաններում տեխնիկական առաջադիմությունը շուռ է գալիս բանվոր դասակարգի դեմ» (ՍՄԿԿ Ծրագիրը, 1961 թ., էջ 32):

Կապիտալիզմի պայմաններում տեխնիկական պրոգրեսի ամենաբացասական հետևանքներից մեկը գործազրկության աճն է, որն անմիջականորեն կապված է արտադրական պրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման հետ: Գործազրկությունը կապիտալիզմի անբուժելի արատներից մեկն է, որը նույնիսկ ԱՄՆ-ում ընդունված է համարել համար առաջին պրոբլեմ: Տվյալները ցույց են տալիս, որ ԱՄՆ-ում 1962 թվականին գործազուրկների թիվը կազմել է մոտ 5,7 մլն մարդ, իսկ 1963-ին՝ 5,5 միլիոն: Արտադրության մեքենայացումը և ավտոմատացումը ամերիկյան արդյունաբերական ձեռնարկություններից տարեկան դուրս են մղում մոտ 2 միլիոն մարդ: Ավտոմատացման հետևանքով արդյունաբերական խոշոր կենտրոններից մեկում՝ Դետրոյտում, 1959 թվականի ապրիլին 239 հազար բանվորներից գործազուրկ էին 162 հազարը. իսկ այս եզակի օրինակ չէ: Գործազրկությունը, որպես խրոնիկական երևույթ, բնորոշ է ո՛չ միայն ԱՄՆ-ին, այլև կապիտալիստական մյուս երկրներին:

Տեխնիկական պրոգրեսի հետևանքով գյուղատնտեսության արտադրության ոլորտից դուրս են մղվում մանր ու միջին գյուղացիական տնտեսությունները: Այժմ կապիտալիզմը զարգացած արդյունաբերական երկրներում վտանգի տակ է դրել ֆերմերային տնտեսությունների գոյությունը:

Ինչպես նշել է ԱՄՆ-ի պրեզիդենտի տնտեսական փորձագետների խորհրդի ղեկավար Հելլերը, մեքենայացման և ավտոմատացման հետագա զարգացումը մոտակա հինգ տարում կհասցնի այն բանին, որ ԱՄՆ-ում կվերանան մոտ 10 միլիոն բանվորական տեղ՝ բանվորական բոլոր տեղերի 15 տոկոսը:

Ինչպես տեսնում ենք, կապիտալիստական երկրներում արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության մեջ տեխնիկական պրոգրեսի հետևանքով արտադրությունից դուրս են մղվում բանվորներ ու ֆերմերներ, և գործազրկությունը մնում է անլուծելի պրոբլեմ: Սակայն դրա կողքին գործում է նաև մի ուրիշ տենդենց. կապիտալիստական ընդլայնված վերարտադրության պրոցեսը, առանձնապես նոր զարգացող ճյուղերը կլանում են աշխատուժ,

հատկապես գործազուրկների պահեստաբանակից, սակայն, միևնույն է, կապիտալիզմի պայմաններում գործազրկությունը չի վերանում։

Դեռ ավելին, որոշ կապիտալիստական երկրների (ԳՖՌ, Ֆրանսիա) զարգացող արտադրությունը աշխատուժ է կլանում նույնիսկ արտասահմանից, այն դեպքում, երբ իրենց մոտ գործազրկություն է տիրում։ Դա վկայում է, որ գիտա-տեխնիկական պրոգրեսի սոցիալական հետևանքները այստեղ ևս հանդես են գալիս հակասական ձևով։ Փաստերը ցույց են տալիս, որ հատկապես, վերջին տարիներին զբաղվածությունն աճել է ԳՖՌ-ում, Իտալիայում, Ճապոնիայում և չնչին չափով՝ ԱՄՆ-ում, Կանադայում, Անգլիայում։ Ֆրանսիական և ԳՖՌ-ի բուրժուազիան, մի կողմից՝ արտադրության աճի շնորհիվ, մյուս կողմից, որպեսզի իջեցնի տեղական աշխատուժի արժեքը, էժան աշխատուժ է հավաքագրում արտասահմանից։ Այժմ Ֆրանսիայում կան մեկ միլիոնից ավելի արտասահմանյան բանվորներ, նույնքան էլ՝ Արևմտյան Գերմանիայում։

Ներկա էտապում արտադրության վերելքը և զբաղվածության աճը, ճիշտ է, որոշ երկրներում ինչ-որ չափով պակասեցնում են գործազուրկների թիվը, սակայն, լրիվ չեն լուծում գործազրկության պրոբլեմը։ Միայն 1964 թվականին լրիվ գործազուրկների թիվը ԱՄՆ-ում կազմել է 4,138 հազար, Կանադայում՝ 336 հազար, Անգլիայում՝ 480 հազար, Ճապոնիայում՝ 417 հազար, ԳՖՌ-ում՝ 184 հազար, Ֆրանսիայում՝ 94 հազար մարդ։ Այսպիսով, 1957 թվականի համեմատությամբ, գործազուրկների թիվը 1964 թվականին կրճատվել է՝ Ճապոնիայում՝ 73 հազար, իսկ Արևմտյան Գերմանիայում՝ 478 հազար մարդով. ինչ վերաբերում է ԱՄՆ-ին, ապա այնտեղ, 1957 թվականի համեմատությամբ, 1964 թվականին գործազուրկների թիվը ոչ թե կրճատվել, այլ աճել է 1,202 հազար մարդով[1]։ Գործազուրկների թիվն ավելացել է նաև Անգլիայում ու Կանադայում։ Ինչպես տեսնում ենք, ոչ միշտ է արտադրության աճը կրճատում գործազուրկների թիվը, ընդհակառակը, որոշ դեպքերում նույնիսկ այն հանգեցնում է գործազուրկների թվի մեծացման։

Պարզ է, գործազուրկները զբաղվածների համեմատությամբ, գտնվում են ծայրահեղ վատթար նյութական պայմաններում։ Սակայն, արտադրությունում զբաղվածներն էլ միշտ սարսափի մեջ են իրենց վաղվա օրվա համար, վստահ չեն, որ իրենց աշխատանքը կայուն է։ Բացի այդ, զբաղվածների մեջ էլ կան որոշ կատեգորիաներ, որոնք տարբերվում են իրարից եկամուտների չափերով։

Մոնոպոլիստական կապիտալը, որոշ զիջում կատարելով աշխատավարձի խնդրում, դրա փոխարեն մեծ չափով փոխհատուցում է ստանում շահագործումն ուժեղացնելու միջոցով։ Մեքենայացման և ավտոմատացման պայմաններում շահագործման ուժեղացումն իրականացվում է աշխատանքի ինտենսիվության բարձրացման տարբեր մեթոդներով։ Օրինակ, կոնվեյերների շարժման արագացումը, սպասարկվող հաստոցների և սարքերի քանակի ավելացումը, ավտոմատ գծերի սպասարկման տեղամասերի ընդարձակումը, հանգստաժամանակի կրճատումը։ Ինչպես հաղորդել է ամերիկյան մամուլը, Կրայսլեր կոմպանիայի Դեյտրոյտի ավտոգործարաններում արտադրական պրոցեսի եզրափակիչ էտապում գծերի արագությունն այնպիսին է, որ բանվորը պետք է նրա հետևից վազի[2]։

1 Международная жизнь, № 1, 1965 г. стр. 26—27, И. Кузьминов, Экономическое положение капиталистических стран.

2 Факты о положении трудящихся в США (1961—1962), 1964 г., стр. 8.



Արտադրության ներկա տեխնիկական զինվածությունը, հետևապես և աշխատանքի ինտենսիվության աճը, չտեսնված մկանային և ներվային լարվածություն են ստեղծում բանվորի համար։ Դրանով է բացատրվում հոգեկան հիվանդների թվի խիստ մեծացումը կապիտալիստական երկրներում։ Այսպես, ԱՄՆ-ի հոգեկան հիվանդությունների դեմ պայքարի ազգային ասոցիացիայի
տվյալներով ԱՄՆ-ում 10 մարդուց մեկը տառապում է հոգեկան կամ ներվային հիվանդությամբ։ Աշխատանքի դուրս չեկածներից ներվային հիվանդու-
յին հիվանդությամբ։ Աշխատանքի դուրս չեկածներից ներվային հիվանդու-
թյամբ տառապում են Անգլիայում՝ 30, իսկ Ֆրանսիայում՝ 28 տոկոսը[1]։

Աշխատանքի ինտենսիվացման հետ մեկտեղ, մոնոպոլիաների շահագործումն ուժեղանում է նաև բանվորների որակավորման աճին համապատասխան չվճարելու միջոցով. այսինքն՝ բարձր որակավորում ունեցող բանվորը վարձատրվում է ցածր որակավորում ունեցողի չափով։ Այն դեպքում, երբ ավտոմատացումը արմատապես փոխում է բանվորի աշխատանքի բնույթը և նրան նոր, բարձր պահանջներ ներկայացնում, մոնոպոլիաներն արհեստականորեն պահպանում են նախկին, հնացած տարիֆային սիստեմը, այսպիսով իջեցնում բանվորի աշխատավարձը։

Սակայն վերջին տարիներին բանվորներին հաջողվել է գործադուլային պայքարի շնորհիվ աշխատավարձի բնագավառում հասնել կապիտալի կողմից որոշակի զիջումների։ Մի շարք երկրներում զբաղված բանվորների անվանական աշխատավարձը, 1958 թվականի համեմատությամբ, ավելացել է 15—20 տոկոսով։ Սակայն անվանական աշխատավարձի որոշ աճը չի կարող լրիվ պատկերացում տալ բանվորների կենսամակարդակի մասին, որովհետև դրա կողքին աճում է նաև թանկությունը։ Անգլիայում, ԱՄՆ-ում և Կանադայում նոմինալ աշխատավարձը, 1958 թ. համեմատությամբ, 1964 թ. աճել է 17—20 տոկոսով, մինչդեռ սպառողական ապրանքների գները այդ նույն ժամանակամիջոցում բարձրացել են ԱՄՆ-ում մոտավորապես 7—8, Կանադայում՝ 8—9, Անգլիայում՝ 15—18 տոկոսով։

Կանադայում և Անգլիայում ռեալ աշխատավարձի մակարդակը 1961 թվականին հազիվ հասել է 1956 թվականի մակարդակին, իսկ ԱՄՆ-ում մի փոքր անցել է դրանից։ Բայց աշխատավարձի այդ աննշան բարձրացումը ձեռք է բերվել թանկ գնով՝ ժամանակից ավելի աշխատանքի, աշխատանքի ինտենսիվության և բանվորների երկարատև պայքարի շնորհիվ։ Համարյա նույն պատկերն է ԳՖՌ-ում, Իտալիայում, Ճապոնիայում, Ֆրանսիայում։

1956—1963 թվականը մանրածախ գները ԳՖՌ-ում աճել են 16, Իտալիայում՝ 20 տոկոսով։ 60-ական թվականների սկզբին բանվորի միջին աշխատավարձը ԳՖՌ-ում կազմել է նրա մինիմալ կենսապահանջի մոտ 75, Ֆրանսիայում՝ 70, Ճապոնիայում՝ 65, Իտալիայում՝ 50 տոկոսը։ Բնորոշ է նաև հետևյալ փաստը. 1958—1963 թվականի հուլիսը Ֆրանսիայում ռեալ աշխատավարձը բարձրացել է 3,3, կամ տարեկան 0,63 տոկոսով, մինչդեռ աշխատանքի արտադրողականությունը ամբողջ ազգային մասշտաբով, պաշտոնական տվյալների համաձայն, ավելացել է տարեկան 4,3 տոկոսով։

Փաստերը ցույց են տալիս, որ հակառակ բուրժուական պրոպագանդիստների պնդման, բանվոր դասակարգի սոցիալական դրությունը կապիտալիստական սիստեմում մնում է նախկին վիճակում, նրանք զրկված են արտա-

1 Коммунист, № 7, 1965, стр. 122:

դրության միջոցներից և ստիպված են ծախել իրենց աշխատուժը։ Դեռ ավելին, նրանց աշխատանքի արդյունքի մեծ մասը յուրացնում են կապիտալիստները։ Այսպես, եթե բանվորը XIX դարի կեսում իր աշխատաժամանակի երկու հինգերորդն աշխատել էր տիրոջ համար, իսկ երեք հինգերորդը՝ իր, ապա այժմ բանվորն աշխատաժամանակի երկու երրորդն աշխատում է կապիտալիստի, իսկ մեկ երրորդը՝ իր համար («Коммунист», 1965, № 2, էջ 73)։

Կապիտալիզմի ժամանակ գիտատեխնիկական պրոգրեսի սոցիալական անցանկալի հետևանքների պատճառը պետք է փնտրել ոչ թե բուն տեխնիկայի, այլ հենց իր՝ կապիտալիստական կարգի մեջ, որի հիմքում ընկած է արտադրության միջոցների կապիտալիստական մասնավոր սեփականությունը։

Գիտատեխնիկական ռևոլյուցիայի հետագա բազմակողմանի ծավալումը և նրա նվաճումներն աշխատավորության շահերին լրիվ ծառայեցնելը հնարավոր է միայն կապիտալիստական արտադրահարաբերությունների ու նրա հիմքը կազմող արտադրամիջոցների մասնավոր սեփականության վերացման և սոցիալիստական արտադրահարաբերությունների ու արտադրամիջոցների հանրային սեփականության հաստատման բազայի վրա։

Կապիտալի երկրներում աշխատավորների դասակարգային պայքարն իր տարբեր ձևերով ուժեղանում է տվյալ երկրում դասակարգային հակասությունների սրման և սոցիալիստական երկրների հաջողությունների ազդեցության տակ։ Գործադուլային պայքարը, լինելով բանվոր դասակարգի պայքարի ձևերից մեկը, վերջին տարիներս լայնորեն ծավալվել է։ Այսպես, եթե ամբողջ կապիտալիստական աշխարհում գործադուլավորների թիվը 1958 թվականին հասնում էր 25—27 միլիոն մարդու, ապա 1963 թ. այն հասավ 58 միլիոնի։

1964 թվականի առաջին կեսում գործադուլավորների թիվը զարգացած կապիտալիստական երկրներում հասել է 22 միլիոնի։ Այսպես, ԱՄՆ-ում 1964 թվականին գործադուլ են արել 650 հազար մարդ, ավելի, քան 1963 թվականին։ Անգլիայում 1964 թվականին տեղի են ունեցել 2515 գործադուլ, 1963 թվականի 2068-ի դիմաց։ 1964 թվականի ընթացքում Իտալիայում գործադուլների հետևանքով կորսվել է 266 միլիոն մարդ-ժամ, 1963 թվականի 134 միլիոնի դիմաց։ Բնորոշ է այն, որ զարգացած կապիտալիստական երկրներին բաժին է ընկնում գործադուլավորների մեծ մասը (այսպես՝ 1963 թվականին 58 միլիոն ընդհանուր գործադուլավորներից 43 միլիոնը)։ Դա բացատրվում է նրանով, որ այդ երկրներում բանվոր դասակարգը, շնորհիվ իր կազմակերպվածության, կարողանում է գործադուլային շարժումը՝ որպես դասակարգային պայքարի ձև, օգտագործել իր շահերը պաշտպանելու համար։

Պրոլետարիատը իր դասակարգային պայքարն իրականացնում է ժողովրդի մյուս խավերի հետ, կազմելով հակամոնոպոլիստական ճակատ՝ հանուն լայն դեմոկրատիայի։

Մոնոպոլիաների դեմ մղվող համադեմոկրատական պայքարի շնորհիվ ձեռք բերված նվաճումները ոչ թե հեռացնում, այլ մոտեցնում են սոցիալիստական ռևոլյուցիան, սոցիալիզմի հաղթանակը, որը լայն ճանապարհ է բացում գիտատեխնիկական պրոգրեսի առջև և նրա նվաճումներն ի սպաս դնում աշխատավորության, ամբողջ մարդկության շահերին։

# ԾԱՂԿՈՂ ՀԱՅՐԵՆԻՔԻ ԲՅՈՒՋԵՆ

Ա. ՇԵԿՈՅԱՆ

ՀՍՍՌ ֆինանսների մինիստր

Մեր երկրի տնտեսական ու կուլտուրական զարգացման ասպարեզում մեծ դեր է կատարում պետական բյուջեն։ Ամբողջ ազգային եկամտի մոտ 60 տոկոսը վերաբաշխվում է բյուջեի միջոցով։

Համաձայն ՍՄԿՊ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի որոշումների, ընթացիկ տարվանից սկսած և 1967—1968 թվականների ընթացքում արդյունաբերական բոլոր ձեռնարկությունների և բոլոր ճյուղերի վրա պետք է տարածվի արտադրության տնտեսական խթանումն ուժեղացնելու սիստեմը, որը կընդգրկի ֆինանսական աշխատանքի բոլոր բնագավառները։ Անհրաժեշտ կլինի վերանայել ժողովրդական տնտեսության ֆինանսավորման ու վարկավորման, ինչպես և ձեռնարկություններից միջոցները պետական բյուջե գանձելու կարգը։

Արդյունաբերական ձեռնարկությունների արտադրական պլանների կատարումը չափվելու է արտադրանքի իրացման ցուցանիշով. այդպիսով մեծ չափով կբարձրանա շահույթի նշանակությունը, մի կողմից՝ ձեռնարկություններում տնտեսական հաշվարկի կիրառման, մյուս կողմից՝ բյուջեի եկամուտների զգալի մասն ապահովելու միջոցով։ Ձեռնարկության տրամադրության տակ թողնվող շահույթի և սեփական այլ ռեսուրսների հաշվին ստեղծվում են նյութական խրախուսման, սոցիալ-կուլտուրական միջոցառումների և բնակարանային շինարարության, արտադրության զարգացման ֆոնդեր։ Մասնավորապես նյութական խրախուսման ֆոնդի հաշվին միանվագ օգնություն ցույց կտրվի ձեռնարկությունների բանվորներին ու ծառայողներին, լավագույնները կպարգևատրվեն։

Ընդլայնվում են ձեռնարկությունների իրավունքները արտադրության զարգացման ու նոր տեխնիկայի ներդրման գործում։ Փոխվում է շահույթներից բյուջեում արվող մասհանումների կարգը։ Շահույթներից մասհանումները բյուջե կգանձվեն որպես վարձ արտադրական հիմնական ֆոնդերից և շրջանառու միջոցներից։ Այդ վարձի նորմաները կսահմանվեն ըստ հիմնական ու շրջանառու ֆոնդերի արժեքի (տոկոսներով)։ Փոխվում է շահութաբերության հասկացողությունը։ Շահութաբերության բարձրացում նշանակում է՝ հիմնական ու շրջանառու ֆոնդերի առավել արդյունավետ օգտագործում։ Նոր կարգը

ներդաշնակորեն զուգակցում է համապետական շահերը առանձին ձեռնարկության, ինչպես նաև աշխատողների անձնական շահերի հետ։

Բուրժուական տնտեսագետները ցանկանում են խեղաթյուրել մեր երկրում արդյունաբերության ղեկավարման նոր ձևերի նշանակությունը և փորձում այն դիտել որպես վերադարձ դեպի արտադրության կազմակերպման կապիտալիստական եղանակը։ Բայց այդ հերյուրանքը քննադատության չի դիմանում։ Շահույթը սոցիալիզմի օրոք սկզբունքորեն և իր սոցիալ-տնտեսական բովանդակությամբ արմատապես տարբերվում է կապիտալիստական շահույթից։ Կապիտալիստական հասարակարգում այն ստացվում է կապիտալիստական շահագործումից (շնորհիվ արտադրամիջոցների մասնավոր սեփականության), և հավելյալ արդյունքը կապիտալիստների կողմից յուրացնելու ընդհանրական ձև է։ Հակառակ դրան, սոցիալիզմի օրոք շահույթը հավելյալ արդյունքի ձևերից մեկն է, որը ծառայեցվում է միայն աշխատավորների շահերին։ Դրա մի մասը մասհանվում է սոցիալիստական պետության համապետական կարիքները հոգալու (բյուջեի միջոցով), իսկ մյուս մասը թողնվում է հենց ձեռնարկության և նրա կոլեկտիվի կարիքների համար։

Ֆինանսական սիստեմի վերակառուցումը (որն այժմ աստիճանաբար իրականացվում է ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի որոշումների ոգով) ամենից առաջ վերաբերում է պետական բյուջեին։ Նոր պայմաններում բարձրանում է բյուջեի դերը սոցիալիստական էկոնոմիկայի համաչափ զարգացման, հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման, խնայողության ռեժիմի պահպանման ասպարեզում։

Պետք է նկատել, որ անցած յոթնամյակի բոլոր տարիներում կատարվել են Հայկական ՍՍՌ պետական բյուջեի եկամուտների պլանները։ Բյուջեում հավաքվել է ավելի քան 3 միլիարդ 407 միլիոն ռուբլի։ Ծախսերի գումարը կազմել է 3 միլիարդ 388 միլիոն ռուբլի։ Այդ գումարի ավելի քան 90 տոկոսը հատկացվել է ժողովրդական տնտեսության և սոցիալ-կուլտուրական միջոցառումների ֆինանսավորմանը։ Համադրելի գներով յոթ տարվա ընթացքում բյուջեի ծավալն ավելացել է 2 անգամ, իսկ 1965 թվականին, 1963 թվականի համեմատությամբ, 32 տոկոսով։ Բյուջեի ծախսերի աճը զգալիորեն գերազանցում է բնակչության թվական աճին. այս վկայում է ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման մասին։ Սովետական պետությունը խոշոր միջոցներ է ներդնում արդյունաբերական ապրանքների և գյուղատնտեսական մթերքների արտադրության ընդլայնման, բնակարանային շինարարության, քաղաքների, բանավանների, շրջկենտրոնների բարեկարգման, սոցիալ-կուլտուրական միջոցառումների համար։ Հայտնի է, որ սոցիալիստական արտադրության գլխավոր նպատակը ժողովրդի պահանջմունքների բավարարումն է, որին ծառայում են մեր բոլոր պլանները, ինչպես և պետական բյուջեն։



1966 թվականի պետական բյուջեի եկամուտները և ծախսերը հաշվարկվել են ռեսպուբլիկայի 1966 թվականի ժողովրդական տնտեսության զարգացման պլանի ցուցանիշների հիման վրա։ Ինչպես եկամուտների, այնպես էլ ծախսերի գումարը կազմում է 643,5 միլիոն ռուբլի։ Նախատեսված եկամուտների ընդհանուր գումարից 580,7 միլիոն ռուբլին կամ 90,3 տոկոսը ստացվելու է սո-



ցիալիստական տնտեսությունից։ Շրջանառության հարկից ստացվող եկամուտների ընդհանուր գումարը կկազմի 357,1 միլիոն ռուբլի, որից ռեսպուբլիկայի բյուջեին կհատկացվի 343,8 միլիոն ռուբլի։

1966 թվականին սոցիալիստական տնտեսության կուտակումների և բյուջեի եկամուտներում զգալիորեն աճելու է շահույթների գումարը։ Ժողովրդական տնտեսության մեջ 1966 թվականին նախատեսված շահույթները կազմելու են 284,7 միլիոն ռուբլի կամ, նախորդ տարվա համեմատությամբ, ավելանալու են 17,6 տոկոսով։ 1966 թվականին բյուջեում շահույթներից ստացվող մուտքերը նախատեսվում են 196,1 միլիոն ռուբլի, որից 158,6 միլիոնը կհատկացվի ռեսպուբլիկայի բյուջեի ծախսերը ծածկելուն։

Ժողովրդական տնտեսության շահույթների մեծ մասը (207 միլիոն ռուբլի) կստացվի արդյունաբերությունից։ Շահույթների նախորդ տարվա համեմատությամբ զգալի աճը (մոտ 17 տոկոս) արդյունք է արդյունաբերական արտադրանքի ընդլայնման ու ինքնարժեքի իջեցման։ Հատկապես խոշոր գումարի շահույթներ կստացվեն ծանր արդյունաբերության ճյուղերի ձեռնարկություններից, մասնավորապես քիմիական արդյունաբերության և գունավոր մետալուրգիայի ճյուղերից։

Արդյունաբերական մինիստրությունների ու ձեռնարկությունների ղեկավարները պետք է հատուկ ուշադրություն նվիրեն մեր սոցիալիստական արդյունաբերության հիմնական օղակի՝ յուրաքանչյուր ձեռնարկության գործունեության բարելավմանը (մասնավորապես արտադրանքի որակի բարձրացման, ինքնարժեքի իջեցման ու շահավետության բարձրացման նպատակով)։ Դրան կնպաստի արդյունաբերության ղեկավարման ճյուղային սկզբունքը, ձեռնարկությունների պատշաճ մասնագիտացումը։

Արտադրանքի ավելացման և շահավետության մեծացման գլխավոր աղբյուրը արտադրական հիմնական ու շրջանառու ֆոնդերի օգտագործման արդյունավետության բարձրացումն է։ 1966 թվականին արդյունաբերական հիմնական և շրջանառու ֆոնդերի յուրաքանչյուր ռուբլուց ստացվող շահույթը կավելանա մոտավորապես 6 տոկոսով, սակայն, ինչպես նշեց ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումը, ժողովրդական տնտեսության մեջ հիմնական ֆոնդերի օգտագործումը այժմ անբավարար է։ Անհրաժեշտ է հասնել այն բանին, որ անընդհատ աճի արտադրական ֆոնդերում ներդրված յուրաքանչյուր ռուբլուց ստացվող եկամուտը։

Պետական գյուղատնտեսական ձեռնարկությունների և կազմակերպությունների շահույթները 1966 թվականին պլանավորվում են 24,7 միլիոն ռուբլի, այդ թվում 14 միլիոն ռուբլին՝ սովխոզներից, 6,3 միլիոնը՝ հացամթերքների գլխավոր վարչության ձեռնարկություններից։

Շահույթների ընդհանուր գումարից բյուջեի մեջ գանձվելու է միայն 7,6 միլիոն ռուբլին, այսինքն՝ $1/3$-ից էլ պակաս մասը. մնացածը թողնվելու է գյուղատնտեսական ձեռնարկությունների (հիմնականում սովխոզների) տրամադրության տակ՝ տնտեսության ընդլայնման ու ամրապնդման, կապիտալ ներդրումների ու ձեռնարկությունների մյուս կարիքների համար։

Հարկավոր է նշել, որ արդյունաբերական ձեռնարկությունների, շինարարական կազմակերպությունների և սովխոզների աշխատանքներում կան զգալի թերություններ։ Դեռևս շատ ձեռնարկություններ չեն կատարում իրենց արտադրական ու ֆինանսական պլանները, լրիվ չեն հայտաբերում ներտնտեսա-

կան ռեզերվները, թույլ են տալիս ոչ արտադրական ծախսեր, պետական բյուջե չեն մուծում սահմանված գումարները։ 1965 թվականին պետական բյուջե չմուծեցին շինարարության մինիստրությունը՝ 2,7, գյուղատնտեսությանը՝ 1,2, առևտրինը՝ 0,9, ավտոմոբիլային տրանսպորտինը՝ 0,5 միլիոն ռուբլի։

ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումի որոշումներին համապատասխան 1966 թվականի հունվարի մեկից կիրառվում է կոլտնտեսություններից գանձվող եկամտահարկի նոր օրենք։ Այսուհետև եկամտահարկը գանձվելու է ոչ թե կոլտնտեսության համախառն եկամուտներից, այլ 15 տոկոսի շահավետությունը գերազանցող մաքուր եկամտից և կոլտնտեսականների աշխատանքի վարձատրման այն ֆոնդից, որը գերազանցում է տնտեսության մեջ աշխատող կոլտնտեսականի համար սահմանված չհարկվող մինիմումը (ամսական 60 ռուբլի)։ Նոր օրենքի համաձայն հաշվարկված 1966 թվականի եկամտահարկի գումարը զգալիորեն նվազում է, կազմելով 3,3 միլիոն ռուբլի։ Եկամտահարկը պակասելու շնորհիվ կոլտնտեսությունները կշահեն մոտ 3 միլիոն ռուբլի։

Բնակչությունից գանձվող հարկերը 1966 թվականին նախատեսված են 57,6 միլիոն ռուբլի՝ ելնելով բանվորների ու ծառայողների թվաքանակի ու աշխատավարձի ֆոնդի ավելացման վերաբերյալ ժողովրդատնտեսական պլանի նախագծումներից և համաձայն հարկերի գործող օրենքների։

Ի տարբերություն նախորդ տարվա, այս տարի ռեսպուբլիկայի բյուջեն բալանսավորվել է առանց դոտացիայի։ Ռեսպուբլիկայում կուտակվող եկամուտները հիմնականում թողնվել են ռեսպուբլիկայի տրամադրության տակ, բյուջեով նախատեսված ծախսերը ֆինանսավորելու համար։

Ռեսպուբլիկայի 1966 թվականի պետական բյուջեի ծախսերի կազմը ըստ հիմնական ուղղությունների ունի հետևյալ պատկերը՝

| | (միլիոն ռուբլիներով) |
|---|---|
| 1. Ժողովրդական տնտեսության ֆինանսավորում . . . . . . . | 316,2 |
| 2. Սոցիալ-կուլտուրական միջոցառումների ֆինանսավորում . . . | 296,7 |
| 3. Պետական կառավարման օրգանների ու դատարանների պահպանման համար . . . . . . . . . . . . . . . . . . | 11,7 |
| 4. Այլ ծախսեր . . . . . . . . . . . . . . . . . . . . | 18,9 |
| Ընդամենը՝ | 643,5 |

Բերված թվերն արտացոլում են մեր բյուջեի ժողովրդա-տնտեսական բնույթը։ Պետք է նկատի ունենալ որ բյուջետային միջոցներից բացի ժողովրդական տնտեսության ֆինանսավորման համար ձեռնարկությունների սեփական կուտակումներից կհատկացվի ևս 222,2 միլիոն ռուբլի։ Այսպիսով, ժողովրդական տնտեսության ֆինանսավորման ընդհանուր գումարը 1966 թվականին կկազմի 538,4 միլիոն ռուբլի։ Այդ միջոցները կուղղվեն կապիտալ ներդրումների, շրջանառու միջոցների ավելացման, երկրաբանական-հետախուզական, քաղաքների, շրջկենտրոնների ու բանավանների բարեկարգման աշխատանքների, սովխոզներում հիմնական հոտի կազմավորման ու ժողովրդական տնտեսության բնագավառում կենսագործվող մի շարք այլ միջոցառումների ֆինանսավորման նպատակին։

Պետական կենտրոնացված կապիտալ ներդրումների ընդհանուր գումարը 1966 թվականի ժողտնտպլանով սահմանված է 360,7 միլիոն ռուբլի, իսկ ֆի-



նանսավորման գումարը՝ ներառյալ շրջանառու միջոցների աճը, կազմում է 361,6 միլիոն ռուբլի։ Կապիտալ ներդրումների 67,1 տոկոսը կամ 242,7 միլիոն ռուբլին կֆինանսավորվի բյուջեի հաշվին։

Բնակարանային շինարարությանը միայն կենտրոնացված կապիտալ ներդրումների հաշվին հատկացված է 61,5 միլիոն ռուբլի, այդ նպատակով զգալի գումարներ կտրամադրվեն նաև ձեռնարկությունների ու տնտեսական կազմակերպությունների միջոցներից։ Պետական և կոոպերատիվ շինարարության հաշվին շահագործման կհանձնվի ընդամենը 622,5 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։ Բնակելի ֆոնդը նշանակալի չափով կավելանա նաև ի հաշիվ անհատական բնակարանային շինարարության։

Ձեռնարկությունների և տնտեսական կազմակերպությունների սեփական շրջանառու միջոցները 1966 թվականին, ժողովրդա-տնտեսական պլանի ցուցանիշներին համապատասխան, նախատեսվում է ավելացնել 31,4 միլիոն ռուբլով, որից 5,8 միլիոնը բյուջեի, մնացած մասը տնտեսության սեփական միջոցների և բանկային վարկի հաշվին։ Սեփական շրջանառու միջոցների ընդհանուր գումարը ժողտնտեսության մեջ 1966 թվականի վերջին կկազմի 454,8 միլիոն ռուբլի։

Պետությունը հսկայական միջոցներ է տրամադրում ձեռնարկություններին՝ շրջանառու միջոցների ձևով։ Սակայն ներկայումս մեծ թերություններ կան դրանց արդյունավետ օգտագործման բնագավառում, որը, մասնավորապես, արտահայտվում է շրջանառու միջոցների դանդաղ շրջապտույտով, անվճարության անբավարար ապահովմամբ և ապրանքանյութական արժեքների գերնորմատիվ մնացորդներով։

Բնակչության կենսամակարդակի բարձրացման գործում մեծ դեր են կատարում սպառման հանրային ֆոնդերը, որոնց հիմնական աղբյուրը պետական բյուջեից սոցիալ-կուլտուրական միջոցառումներին հատկացվող գումարներն են։ Այդ նպատակների համար յոթնամյակում պետական բյուջեից բաց է թողնվել մեկ միլիարդ 414 միլիոն ռուբլի, իսկ 1966 թվականին նախատեսվում է 297 միլիոն ռուբլի, այսինքն՝ 1965 թվականի հատկացումներից 20 միլիոն ռուբլով ավելի։ Այդ միջոցները կտրամադրվեն մանկապարտեզներին, հանրակրթական դպրոցներին, տեխնիկումներին, բուհերին, գիտահետազոտական հիմնարկներին, գրադարաններին, ակումբներին, թատրոններին, ռադիոհաղորդումների կոմիտեին, լուսավորությանը և կուլտուրայի մյուս բնագավառներին, առողջապահության, ֆիզիկական կուլտուրայի, սոցիալական ապահովագրության ու ապահովության բարելավման գործին և որպես նպաստ կտրվեն բազմազավակ ու միայնակ մայրերին։

Սոցիալ-կուլտուրական հիմնարկների և այդ ուղղությամբ նախատեսված միջոցառումների մասին գաղափար տալու համար հիշատակենք միայն, որ 1966 թվականին նախադպրոցական մանկական հիմնարկներում կընդգրկվեն 71,8 հազար երեխա, հանրակրթական դպրոցներում՝ 510 հազար աշակերտ, գիշերօթիկ դպրոցներում՝ 11 հազար սան, բաներիտ, գյուղերիտ և հեռակա դպրոցներում՝ 33 հազար սովորող, ռեսպուբլիկական բյուջեով պահվող բուհերում և տեխնիկումներում՝ 62,8 հազար ուսանող, պրոֆտեխնիկական ուսումնական հաստատություններում՝ 12 հազար մարդ։ Մեր համեմատաբար փոքր ռեսպուբլիկան հագեցած է նաև հիվանդանոցների, գիտահետազոտական հիմնարկների, գրադարանների և սոցիալ-կուլտուրական այլ ձեռնարկություն-

ների լայն ցանցով, որը պահպանվում է պետության հաշվին, այսինքն՝ բյու-
ջեից բաց թողնվող միջոցներով:

Մեր բյուջեի առանձնահատկություններից մեկն էլ այն է, որ մեծ չէ կա-
ռավարման ապարատի պահպանման ծախսերի տեսակարար կշիռը: 1966
թվականին ռեսպուբլիկայի պետական բյուջեում 11,6 միլիոն ռուբլի կամ բյու-
ջեի ծախսերի 1,8 տոկոսն է նախատեսված կառավարման ապարատի և դա-
տական օրգանների պահպանման համար:

Պետական ապարատի էժանացման ու պարզեցման խնդիրը միշտ էլ եղել
է պարտիայի ու կառավարության ուշադրության կենտրոնում: Լենինն իր «Լավ
է քիչ, բայց լավ» հոդվածում դեռևս քսանական թվականների սկզբներին պա-
հանջում էր ամեն կերպ պարզեցնել և ճկունացնել պետական ապարատը, դուրս
մղել նրանցից բյուրոկրատիզմի ու քաշքշուկի տարրերը: Կառավարման ապա-
րատի բարելավումը պետք է կատարել ոչ թե նրա ֆինանսավորման ու ծախ-
սերի ավելացման, այլ աշխատանքները լավագույն ձևով կազմակերպելու մի-
ջոցով:

Վարչական ծախսերը ձեռնարկություններում դեռևս մեծ են: Կան ոչ քիչ
ավելորդ հաստիքներ: Տնտեսական ղեկավարման նոր ձևերն ու մեթոդները
նպաստավոր պայմաններ են ստեղծում կառավարման ապարատի կառուցվածք-
քի կատարելագործման համար: 1966 թվականին ևս նախատեսվում է տնտե-
սական կազմակերպությունների և հիմնարկությունների կառավարման ապա-
րատի հետագա կատարելագործում, որի շնորհիվ կտնտեսվի 3,2 միլիոն ռուբլի:

Բյուջեի հաջող կատարումը պահանջում է ամենուրեք պահպանել խնայո-
ղության խիստ ռեժիմ, որը նպաստում է, մի կողմից՝ կուտակումների ավե-
լացմանը, մյուս կողմից՝ ծախսերի խնայողաբար ու նպատակահարմար օգտա-
գործմանը:

Ինչպես հայտնի է, 1965 թվականի դեկտեմբերի վերջին Մոսկվայի և
Լենինգրադի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները հանդես
եկան հայրենասիրական նախաձեռնությամբ: Նրանք առաջարկեցին մրցու-
թյուն սկսել մետաղի և նյութերի խնայողության համար և ստանձնեցին սո-
ցիալիստական պարտավորություններ: Մոսկվայի ու Լենինգրադի աշխատա-
վորների կոչը լայն արձագանք գտավ նաև մեր ռեսպուբլիկայում:

Ռեսպուբլիկայի արդյունաբերական շատ ձեռնարկությունների կոլեկտիվ-
ներ կոնկրետ միջոցներ են ձեռնարկում նյութական և դրամական ռեսուրսները
խնայողաբար ծախսելու, տնտեսված հումքով լրացուցիչ արտադրանք թողար-
կելու ուղղությամբ: Այդ նախաձեռնությունը մեկն է այն օգտաշատ գործերից,
որոնց ձեռնամուխ են եղել երկրի աշխատավորները՝ գործարաններում, սով-
խոզներում, կոլտնտեսություններում, տրանսպորտում, ժողովրդական տնտե-
սության, գիտության, կուլտուրայի, լուսավորության, բոլոր մյուս բնագավառ-
ներում. դրանց նպատակն է կենսագործել պարտիայի մշակած կարևորագույն
միջոցառումները և, մասնավորապես, Սովետական Միության կոմունիստական
պարտիայի Կենտրոնական կոմիտեի մարտյան ու սեպտեմբերյան պլենումնե-
րի որոշումները: Այդ որոշումների անշեղ կենսագործումն ավելի կմեծացնի
սովետական պետության տնտեսական հզորությունը, կբարձրացնի ժողովրդի
բարեկեցությունը, կնպաստի կոմունիստական շինարարության խնդիրների
հաջող լուծմանը:

# ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ հիմունքների դպրոց

Ա. ԿՐԱՎՉԵՆԿՈ

## ԼԵՆԻՆՅԱՆ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐՈՎ

Այս հոդվածով ավարտվում է «Պարտիայի վերաբերյալ լենինյան ուսմուն-
քի հիմունքները և պարտիական աշխատանքը կոլեկտիվում» ցիկլը: Հայտնի է,
որ պարտիայի վերաբերյալ ուսմունքը բազմակողմանի է: Վ. Ի. Լենինը հան-
գամանորեն մշակել է նոր տիպի պարտիայի մասին ուսմունքի սկզբունքները,
այսինքն՝ ելակետային դրույթները: Դրանք են ընկած նորմերի հիմքում, կո-
մունիստների կողմից միատեղ ընդունված՝ պարտիայի կառուցվածքի, գործու-
նեության, ներպարտիական կյանքի օրենքների հիմքում, որոնք ամրապնդված
են կանոնադրությամբ: Այսպիսով, պարտիայի մասին ուսմունքի հիմունքները
ինչ-որ վերացական բան չեն: Դրանց համապատասխան կառուցվում են կո-
մունիստների ամենօրյա գործնական ողջ աշխատանքը, կյանքը, որն առանձ-
նապես ընդգծվել է նախորդ յոթ հոդվածներում: Երբ խոսվում էր հասարակու-
թյան մեջ պարտիայի ունեցած դերի մասին, նշվում էին սկզբնական կազմա-
կերպության՝ որպես իր աշխատավոր կոլեկտիվի կորիզի, խնդիրները: Տնտե-
սության ղեկավարման մասին հոդվածում քննարկվում էին կոմունիստների
կոնկրետ պարտականությունները՝ գործարանում ու կոլտնտեսությունում:
Մարքս-լենինյան թեորիայի նշանակության հարցը պարզաբանելիս բացա-
հայտվում էր սկզբնական կազմակերպության դերը պրոպագանդիստական աշ-
խատանքում... Եվ ամեն տեղ ցույց էր տրվում, որ գործի հաջողությունը պայ-
մանավորված է կոմունիստների ակտիվությամբ ու նախաձեռնությամբ, նրանց
կազմակերպվածությամբ:

Այս հոդվածում խոսվելու է այն մասին, թե ինչպես են ապահովվում կո-
մունիստների ակտիվությունն ու կազմակերպվածությունը, ներպարտիական
կազմակերպական աշխատանքը:

**Պարտիական կազմակերպությունն ուժեղ է իր անդամների ակտիվությամբ**

Մեր ցիկլի առաջին հոդվածներից մեկում՝ «Կոմու-
նիզմի կոչումը պարտավորեցնում է» (տե՛ս «Լենինյան
ուղիով» ամսագրի 1965 թվականի № 11-ի հավելվածը)
մանրամասն խոսվել է կոմունիստին ներկայացվող պա-
հանջների մասին: Լենինը բազմիցս ընդգծել է, որ պար-
տիայի մարտունակությունը պայմանավորված է նրա անդամների ակտիվու-
թյամբ: Հանրահայտ են 1903 թվականին պարտիայի II համագումարում նրա
ասած խոսքերը. «Ավելի լավ է տասն աշխատող իրենց պարտիայի անդամ

չանվանեն (իսկական աշխատողները աստիճանների ետևից չեն ընկնում), քան թե մի շաղակրատող իրավունք ու հնարավորություն ունենա պարտիայի անդամ լինելու (հ. 6, էջ 641)։ Լենինյան այս պահանջներն արտացոլված են մեր պարտիայի կանոնադրության մեջ։

Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում, ասված է ՍՄԿՊ Ծրագրում, է՛լ ավելի են մեծանում կոմունիստի դերն ու պատասխանատվությունը։ Եվ այս ամենին համապատասխան էլ Կանոնադրությունը սահմանում է պարտիայի անդամի վեհ պարտականությունները, պահանջում նրանից դառնալ կոմունիզմի կառուցման ակտիվ մասնակիցը, աշխատել կազմակերպություններից մեկում, կատարել պարտիական որոշումները։ Ով չի կատարում իր բաժինը ընդհանուր աշխատանքում, նա արգելակում է գործը, խանգարում մյուսներին։

Թե ինչպիսի նշանակություն է տալիս մեր պարտիան կոմունիստի ակտիվ աշխատանքին, երևում է նրանից, որ համագումարները, կոնֆերանսները, Կենտրոնական կոմիտեի պլենումները մշտական ուշադրություն են նվիրում այդ հարցին։ Այսպես, օրինակ, IX համագումարի (1920 թվական) բանաձևում արձանագրված է. «Պարտիայի կազմակերպական գլխավոր խնդիրը ամբողջապես վերցրած այն է, որ իր շարքերը մտնող բոլոր վեց հարյուր հազար անդամներին ճիշտ բաշխի և պարտիական աշխատանքի դնի» («ՍՄԿՊ-ն բանաձևերում...», մաս 1-ին, էջ 632, 1954)։ Մշտական խնդիրը՝ բոլոր կոմունիստներին ակտիվ քաղաքական գործունեության մեջ ներգրավելը, ամենից առաջ կենսագործում են սկզբնական կազմակերպությունները, որոնց կազմում և որոնց ղեկավարությամբ ու վերահսկողությամբ գործում է պարտիայի յուրաքանչյուր անդամ։ Եվ մեկ տարի անց կայացած պարտիայի X համագումարը բջիջներից պահանջում էր անդադրում հետևել, «որ բջջի ոչ մի անդամ չմնա առանց որևէ պարտիական աշխատանքի («ՍՄԿՊ-ն բանաձևերում...», մաս 1-ին, էջ 667)։

Ինչպե՞ս է պարտկազմակերպությունը հասնում դրան։ Նա զանազան միջոցներ է գործադրում իր անդամներին պարտիական ակտիվ գործունեության մեջ ներգրավելու համար։

Ամենից առաջ պետք է նշել, որ պարտկազմակերպությունն իր կատարելիf աշխատանքը բաժանում է կոմունիստների միջև։ Մեկին հանձնարարում է պրոպագանդա մղել, մյուսին՝ ագիտացիա, երրորդին՝ ընդգրկում ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկող հանձնաժողովում, չորրորդին՝ հանձնարարում արհմիությունում որևէ աշխատանք։ Շատերին տալիս են, այսպես ասած, արտադրական հանձնարարություններ. գործատեղի հարևանին սովորեցնել աշխատանքի առաջավոր մեթոդները, արագ ներդնել տեխնիկական նորույթը, կրճատել դետալի պատրաստման համար ծախսվող մետաղը և այլն։ Մտածել ու կենսագործել, փաստերով ու գործով հիմնավորել, անձնական օրինակով համոզել՝ այս է կոմունիստի խնդիրը։

Պարտկազմակերպությունը բազում գործեր ունի, և շատ կարևոր է, որ անպայման բոլորը մասնակցեն նրա գործունեությանը։ Երբ այդ բանն անտեսվում է, ոմանք ծանրաբեռնվում են, իսկ ոմանք՝ պասսիվանում։ Արդյունքը լինում է այն, որ տուժում են և՛ կոմունիստների դաստիարակությունը, և՛ աշխատանքը կոլեկտիվում։ Այդ են վկայում «Партийная жизнь» ամսագրի խմբագրությանն ուղղված նամակները։



«Քանի՞ հանձնարարություն պետք է ունենա ՍՄԿՊ անդամը,— Դաղստա-
նից հարցնում է ընկ. Նուրմահամեդովը և ինքն էլ պատասխանում,— թվում
է, մեկ-երկու, որպեսզի կարողանա դրանք կատարել։ Իսկ իմը տասից
անցնում է։ Հանձնարարությունները ես միշտ սրբություն եմ համարել, դրանք
չկատարելը՝ խայտառակություն, բայց այժմ իմ ուժերից վեր է բոլորը ազ-
նվաբար կատարել։ Անտարբեր եմ դարձել դրանց հանդեպ. մի մասը մնում
է անկատար, դրա համար ինձ հայհոյում են... Թող հայհոյեն. միևնույն է,
բոլորն անել չեմ կարող»։

Այդպես չի լինում, երբ պարտկազմակերպությունը հաշվի է առնում, թե
ով ինչ է անում, ինչով է զբաղված մասսայական կազմակերպություններում,
որքան է նա ծանրաբեռնված հիմնական աշխատանքում։ Բայց այդ էլ քիչ է։
Անհրաժեշտ է իմանալ, թե ինչպիսի աշխատանքում կարող են ծավալվել կո-
մունիստի ունակությունները, ինչ հակումներ ունի նա։ Անշուշտ, միշտ հնա-
րավոր չէ սրտին մոտ գործ ընտրելը։ Երբեմն հարկ է լինում հանձնարարել և
այնպիսին, որին նա ձեռնամուխ է լինում առանց մեծ ցանկության։ Բայց նրա
համար պետք է միշտ պարզ լինի հանձնարարության կարևորությունը, միշտ
անհրաժեշտ են կատարման ստուգումը, պահանջկոտությունն ու օգնությունը։
Այն աշխատանքը, որի կարևորությունը գիտակցված չէ, ակտիվություն չի
առաջացնում, ավելի շուտ հակառակը, նպաստում է անգործունեությանը։ Նույն
բանին է հանգեցնում հսկողության բացակայությունը։ Ցավոք, հաճախ այս-
պես է լինում. կոմունիստը չի կատարում առաջադրանքը, նրա փոխարեն մեկ
ուրիշն է աշխատում, շատ անգամ ինքը՝ քարտուղարը, երկրորդ անգամ նույն-
պես պահանջկոտ չեն լինում, ապա ամենևին անտեսում են, մուծում «անգոր-
ծունյաների» ցուցակը։ Ակտիվությունը նվազում է նաև այն ժամանակ, երբ
ստուգող ընկերներն անընդհատ նույն գործն են կատարում։ Պարտաշխատան-
քում պետք է, անշուշտ, մասնագիտանալ (օրինակ, պրոպագանդայում), բայց
օգտակար է, երբ փոխում են հանձնարարությունը, թե չէ մարդն ինչպես ասում
են՝ «թթվում է»։

Դժբախտաբար, այդ միշտ չի նկատի առնվում։ Ավելին, երբեմն ոչ բոլոր
կոմունիստների համար է գործ գտնվում։ Ահա թե ինչ է գրում ամսագրին
Դոնի-Ռոստովից ընկ. Ալեքսանդրովը. «Արտադրամասի պարտկազմակերպու-
թյունում, որի բյուրոյի քարտուղարն եմ ընտրվել, կա մոտավորապես 150 կո-
մունիստ, ստեղծվել են պարտիական խմբեր ըստ տեղամասերի։ Բայց կո-
մունիստները պետք է հանձնարարություն ունենան։ Առաջ ես բյուրոյի քար-
տուղար էի մի այլ արտադրամասում, այնտեղ կոմունիստները շատ ավելի
քիչ էին ու բոլորի համար գործ գտնում էի։ Բայց թե այժմ ինչպե՞ս այդ անել։
Թվում է, մեծ կազմակերպությունում այնքան հանձնարարություն չես էլ գտնի,
որ բոլորին ծանրաբեռնես։ Եվ ավելի դժվար է վերահսկել հանձնարարության
կատարմանը»։

Անշուշտ, այնքան էլ հեշտ չէ կազմակերպել մեծ թվով կոմունիստների
աշխատանքը։ Բայց գործ այստեղ էլ ամենքին կհասնի, միայն թե չեն նկա-
տում։ Եվ այդ հետևանք է անբավարար կազմակերպական աշխատանքի, այն
բանի, որ համեմատաբար երկարատև ժամանակաշրջանի համար երբեմն պլան
չի կազմվում, որ հանձնարարություններ տալու համար միայն քարտուղարն է
մտահոգվում։ Իսկ եթե բոլոր կոմունիստները մասնակցեն պլան կազմելուն,
եթե բյուրոյում կամ պարտժողովում հարցերը լուծելիս նշվի, թե ում, ինչ է

հանձնարարվում, եթե պարտկազմակերպությունը մշտապես հետաքրքրվի, թե իր անդամներն ինչպես են կատարում պարտավորությունները, բոլորի համար աշխատանք կճարվի, բոլորն ակտիվ կլինեն և ամեն մեկն առանձին, առանց հանձնարարության սպասելու, կգտնի իր հիմնական անելիքը՝ մեր նպատակներին հասնելու գործում: Ի վերջո, բնավ էլ պարտադիր չէ, որ ամեն բան գրված լինի, կարևորն այն է, որ ամենքը գործեն պարտիական որոշումների ոգով:

Աշխատանքի ճիշտ կազմակերպումը՝ դրա ճիշտ բաշխումը, կատարման հսկումը, ընկերական օգնությունը, այս բոլորը շատ կարևոր են: Սակայն, հասկանալի է, որ կոմունիստը ամենուրեք ու մշտապես աշխատում է ո՛չ միայն և նույնիսկ ոչ այնքան առաջադրանքներով, որքան պարտիական խղճի թելադրանքով: Հաստոցի առաջ նա աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի օրինակ է ցույց տալիս: Օգնում է դժվարությունների հանդիպած մարդուն: Անտարբեր չի մնում սխալ դատողությունների հանդեպ, այլ բացատրում է ճիշտ, պարտիական տեսակետից: Հոգում է, որպեսզի երեխաները բակում իրենց ազատ ժամանակը խելացի կազմակերպեն... ամեն ինչում՝ յուրաքանչյուր առանձին մարդու համար, իր կոլեկտիվի, պարտիայի ու ողջ երկրի համար նա անձնական պատասխանատվություն է զգում, և այդ է պատճառը, որ նրա մեջ չի թուլանում գործելու ծարավը:

Երբ բոլոր կոմունիստները են աշխատում, կոլեկտիվի վրա կազմակերպության ազդեցությունը մեծ է, նրա հեղինակությունը՝ բարձր: Այդ դրսևորվում է մարդկանց դաստիարակության, նրանց համախմբվածության մեջ և, ի վերջո, տնտեսական-քաղաքական խնդիրների լուծմամբ: Իսկ եթե յուրաքանչյուր կազմակերպություն հաջողության է հասնում իր տեղամասում, ապա այդ նպաստում է ամբողջ պարտիայի դերի բարձրացմանը:

Կոմունիստը ապրում, աշխատում, պայքարում է հանուն կոմունիզմի, լուծում այդ նպատակին հասնելու ճանապարհին կանգնած հերթական խնդիրները: Այդպես են վարվում նրա բոլոր համախոհները: Միլիոնների նպատակասլաց աշխատանքը ավանգարդի վիթխարի ուժն է, անկախ այն բանից՝ կազմակերպության ուղղակի հանձնարարությա՞մբ, թե՞ առանց նրա, սեփական նախաձեռնությամբ են գործում: Լենինը գրում էր. «Այդ ավանգարդի ուժը տասն անգամ, հարյուր անգամ և է՛լ ավելի մեծ է, քան նրա քանակը: Հնարավո՞ր է արդյոք այդ, հարց էր տալիս նա, կարո՞ղ է հարյուրի ուժը գերազանցել հազարի ուժին»: Եվ պատասխանում էր. «Կարող է և գերազանցում է, երբ հարյուրը կազմակերպված է:

Կազմակերպությունը տասնապատկում է ուժերը» (հ. 19, էջ 502—503):

Կոմունիստների հենց այդպիսի ակտիվությամբ է ուժեղ մեր պարտիան և նրա յուրաքանչյուր կազմակերպություն: Պարտիական աշխատանքը՝ յուրատեսակ հասարակական գործունեություն է: Այն ստեղծվում է բարձր գիտակցականության, նպատակասլացության, կոլեկտիվ ջանքերի կազմակերպվածության շնորհիվ: Իսկ այդ ամենը ապահովվում է համախմբման գիտական սկզբունքներով:

**Դեմոկրատական ցենտրալիզմը**

Կոմունիստների ակտիվությունն ու կազմակերպվածությունը, ամենից առաջ, պայմանավորված է, իհարկե, նրանց գիտակցականությամբ: Պարտիան, սովորեցնում էր Լենինը, «պահանջում է գիտակից ու ինքնազոհաբերության պատրաստ մար-



դիկ» (հ. 32, էջ 57): «Առաջավոր ջոկատի գիտակցականությունը հենց, ի
միջի այլոց, նրանում է արտահայտվում, որ նա կարողանում է կազմակերպ-
վել: Իսկ կազմակերպվելով՝ նա ստանում է միասնական կամք, և այդ առա-
ջավոր հազարի, հարյուր հազարի, միլիոնի միասնական կամքը դառնում է
դասակարգի կամքը» (հ. 19, էջ 503):
Ինչպե՞ս կազմակերպել առաջավոր ջոկատը, որպեսզի ապահովվի և՛ յու-
րաքանչյուր մարդու նախաձեռնության զարգացումը, և՛ միասնական, նպա-
տակասլաց կամքը: Լենինը միշտ ապացուցում էր, որ դրան կարելի է հաս-
նել հենվելով միայն ու միայն դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքների
վրա: Ցենտրալիզմը, որն ապահովվում է միասնական ծրագրով, միասնական
կանոնադրությամբ, մի կենտրոնի ղեկավարությամբ, ենթարկվել է մենշևիկ-
ների ամենակատաղի հարձակումներին: Վ. Ի. Լենինը նրանց հակահարված
տվեց, նա գրում էր. «Այս աղայական անարխիզմն առանձնապես հատուկ է
ռուս նիհիլիստին: Պարտիական կազմակերպությունը նրան թվում էր հրեշա-
վոր «գործարան», մասի՝ ենթարկումը ամբողջին և փոքրամասնությանը՝ մե-
ծամասնության, նրան ներկայանում է «ճորտացում...», աշխատանքի բա-
ժանումը կենտրոնի ղեկավարությամբ նրա մեջ հարուցում է տրագիկոմիկա-
կան ճիչեր ընդդեմ այն երևույթի, որ մարդկանց դարձնում են «անիվակներ ու
պտուտակներ...», պարտիայի կազմակերպական կանոնադրության հիշատա-
կումն ատելության ծամածռություն և արհամարհական դիտողություն է առա-
ջացնում («ձևապաշտների» հասցեին), թե կարելի է միանգամայն առանց կա-
նոնադրության էլ» (հ. 7, էջ 504):
Կյանքը ցույց տվեց, որ Լենինը ճիշտ էր, նրա հակառակորդները՝ սխալ:
Աշխատավորների պայքարի ղեկավարման գործում դեռևս ոչ մի տեղ հաջողու-
թյունների չի հասել այն պարտիան, որը բավականաչափ հետևողականորեն,
հմտությամբ, ճկուն չի կիրառել ցենտրալիզմը:
Այդ դուցե վերաբերում է միայն բանվոր դասակարգի դիկտատուրայի
համար մղած պայքարի ժամանակաշրջանին: Որոշ ընկերներ հակված են
կարծելու, որ ժամանակակից պայմաններում ցենտրալիզմի նման ընդգծումը
գերնեղացում է: Այդպես չէ, կյանքը ցույց է տալիս, որ քանի դեռ կա պար-
տիան, ցենտրալիզմն անհրաժեշտ է: Իհարկե, պարտիայի գործունեության
կոնկրետ պայմաններին համապատասխան, փոխվում են դրա կոնկրետ դրսե-
վորումները, բայց ամեն պարագայում առանց ցենտրալիզմի չկա պարտիայի
անդամների կամքի ու գործունեության միասնություն:
Չի կարելի, այնուամենայնիվ, մոռանալ, որ խոսքը պարտիական ցենտ-
րալիզմի մասին է:
Մարդկանց այնպիսի կամավոր միավորման մեջ, ինչպիսին պարտիան է,
տերեր կարող են լինել միայն իրենք՝ կոմունիստները: Սոսկ այս պայմանով
կարելի կլինի օգտագործել կազմակերպության ամեն մի անդամի ուժերն ու
գիտելիքները, փորձը՝ ընդհանուր նպատակին հասնելու համար: Եվ այդ պատ-
ճառով էլ մեր պարտիայի բոլոր գործերը, ինչպես Լենինն է սովորեցրել,
ուղղակի կամ ներկայացուցիչների միջոցով, վարում են պարտիայի բոլոր
անդամները՝ հավասար իրավունքներով և առանց բացառության (տե՛ս հ. 11,
էջ 546): Դեմոկրատիզմը հենց այս է, ինչպես գիտենք, հունարեն «դեմոս»
նշանակում է ժողովուրդ, «կրատոս»՝ ուժ, իշխանություն և պարտիայի նկատ-
մամբ կիրառելիս կնշանակի նրա անդամների իշխանություն: Ընդհատակի

ծանր տարիներին անգամ, երբ պարտիայի անդամներն առանց իրենց գործը և կյանքը վտանգի ենթարկելու չէին կարողանում սիստեմատիկաբար հավաքվել, Լենինը ձգտում էր օգտագործել բոլոր հնարավորությունները պարտիական համագումարներ, կոնֆերանսներ, ժողովներ անց կացնելու համար։ Իսկ երբ առաջին ռևոլյուցիայի տարիներին աշխատավորները որոշ ազատություններ նվաճեցին, իրենց կազմակերպությունների գործունեության համար, 1905 թվականի Տամերֆորսի կոնֆերանսը որոշում ընդունեց. «Անվիճելի համարելով դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը, կոնֆերենցիան անհրաժեշտ է գտնում լայն ընտրական հիմունքի կիրառումը՝ ընտրված կենտրոններին լիակատար իշխանություն վերապահելով իդեական ու պրակտիկ ղեկավարության գործում, նրանց փոխարինելիության, ամենալայն հրապարակայնության ու նրանց գործողությունները խիստ հաշվետու դարձնելու հետ միասին («ՍՄԿՊ-ն բանաձևերում...», մաս 1-ին, էջ 123—124)։

Այդպես, հենց սկզբից էլ, **լենինյան պարտիայի կազմակերպական կառուցվածքի ղեկավար սկզբունքը դարձավ դեմոկրատական ցենտրալիզմը**։ Թե որքան մեծ է դրա նշանակությունը կոմունիզմի համար մղվող պայքարում, կարելի է դատել թեկուզ և այն բանով, որ ցենտրալիզմը մշտապես ենթարկվում է աշխատավորների զանազան թշնամիների կատաղի հարձակումներին։ Եվ այդ պատահական չէ, թշնամիները գիտակցում են, որ ինչպես առանց ցենտրալիզմի, այնպես էլ առանց ներպարտիական դեմոկրատիայի չի կարող լինել կենդանի, մարտական ռևոլյուցիոն պարտիա։

Դեմոկրատական ցենտրալիզմը, ամենից առաջ, նշանակում է բոլոր ղեկավար օրգանների ընտրություն ներքևից վերև. այդ օրգանները պարբերաբար հաշվետու են իրենց պարտիական կազմակերպություններին և վերադաս օրգաններին, պարտիական խիստ կարգապահություն ու փոքրամասնության ենթարկվելը մեծամասնությանը, ստորինի համար անվերապահորեն պարտադիր են վերադաս օրգանների որոշումները։

Կոմունիստներն իրենց բոլոր գործերը վարում են որոշակի ղեկավար օրգանների միջոցով։ Նրանց ձևավորումն սկսվում է սկզբնական կազմակերպություններից։ Կոմունիստները, հավաքվելով միատեղ, կազմում են իրենց սկզբնական կազմակերպության բարձրագույն ղեկավար օրգանը՝ ընդհանուր ժողովը և անմիջականորեն լուծում են նրա առջև դրված խնդիրները. Նրանք ընտրում են նաև իրենց ներկայացուցիչները՝ պատգամավորները շրջանային կազմակերպության բարձրագույն օրգանի՝ կոնֆերանսի համար։ Շրջանի կոմունիստների ներկայացուցիչներն ընտրում են շրջանային կոմիտե և պատգամավորներ մարզային պարտկազմակերպության բարձրագույն օրգանի՝ մարզային կոնֆերանսի համար։ Եվ այդպես, մինչև ՍՄԿՊ համագումարը։ Պարտիական աշխատանքում շատ բան է կախված ընտրական օրգաններից։ Կոմունիստներր ձգտում են ընտրել այն ընկերներին, որոնք ամենից լավ են կատարում պարտիայի կամքը, ուրիշներից ճիշտ են կազմակերպում իրենց գործունեությունը։ Նրանք նկատի են ունենում, որ պարտիական աշխատանքը կոլեկտիվում ինչպես հարկն է կազմակերպելու համար անհրաժեշտ է լավ հասկանալ այն գործը, որով զբաղված է կոլեկտիվը և դրա համար էլ առաջադրում են մասնագետների, ժամանակակից պայմանների համար կարևորագույն պրոֆեսիայի տեր մարդկանց։ Անհրաժեշտ է հաշվի առնել և այլ հանգամանքներ։ Օրինակ, ավելի շատ կանայք ընտրել. շատ կոլեկտիվներում կանայք



զգալի մաս են կազմում, իսկ նրանց մեջ տարվող աշխատանքը որոշակի գիտելիքներ, առանձնահատուկ մոտեցում է պահանջում։ Բազմակողմանի գիտելիքների, փորձի տեր մասսաների հետ կապված մարդկանցից կազմված պարտիական օրգանը բարեբար ազդեցություն է ունենում կազմակերպության գործունեության վրա։ Անհրաժեշտ է մտածել նաև հին, փորձված ու երիտասարդ, սկսնակ ղեկավարների զուգակցման մասին։ Բայց ընտրություններում գլխավորը եղել ու մնում են հետևյալ չափանիշները. քաղաքական կոփվածությունը, պարտիական կյանքի լենինյան նորմերն ըմբռնելն ու սրբությամբ կատարելը, մարդկանց հետ աշխատելու ունակությունը կոլեկտիվում և կոլեկտիվը գլխավորելիս։

Կոմունիստները հնարավորություն ունեն ամեն բան կշռելու և իրենց կամքը ազատ արտահայտելու։ Իսկ եթե բարձրագույն կոմիտեն պարտբյուրոյում, կոնֆերանսում առաջադրում է որևէ մեկի թեկնածությո՞ւնը։ Այն իրավասու է ներկայացնելու իր հանձնարարականները և կոմունիստներն, իհարկե, հաշվի են առնում այդ, որովհետև վերևից շատ բան է երևում։ Բայց, վերջ ի վերջո, նրանք ազատ որոշում են՝ ո՛ւմ ընտրել և ո՛ւմ մերժել։ Նրանց այդ իրավունքը երաշխավորված է ընդհանուր պարտիական նորմերով, որոնք գրված են ՍՄԿՊ կանոնադրության մեջ, պարտիայի Կենտկոմի՝ պարտիական ղեկավար օրգանների ընտրությունների անցկացման հրահանգում։ Ի դեպ, ցենտրալիզմի ու դեմոկրատիզմի սերտ միասնության դրսևորումներից մեկն է այս. ընտրությունների ընդհանուր պարտիական կարգը պայմաններ է ստեղծում ամեն մի թեկնածուի բազմակողմանի ուսումնասիրման համար։ Հատկապես խոշոր կազմակերպություններում, ուր միշտ չէ, որ մի արտադրամասի կոմունիստները լավ են ճանաչում մյուսի ակտիվին, հաշվետու-ընտրական ժողովի որոշմամբ կարելի է անցկացնել արտադրամասային պարտկազմակերպությունների ներկայացուցիչների խորհրդակցություն՝ թեկնածությունները նախատեսելու համար։ Այս օգնում է խուսափելու պատասխանատվությունից, ավելի շուտ հանգելու ընդհանուր տեսակետի։ Հնարավորություն է ստեղծվում նաև հենց ժողովում լրիվ բնութագրելու թեկնածուին, բերելու նրա ընտրության «թեր» ու «դեմ» փաստարկները։ Իսկ փակ քվեարկությունը բոլորին հնարավորություն է ընձեռում անարգել արտահայտելու իր ցանկությունը։

Կարևոր է միայն, որ կոմունիստները լավ իմանան սահմանված ընտրական կարգը պարտիայում։ Այս մասին հարկ է հիշեցնել, որովհետև դեռևս քիչ չեն ընկ. Գոլուբենկոյի (Վորոնեժի մարզ, Օլխովատկի) նամակի նման ահազանգերը։ «Ահա տասներկու տարի է, ինչ պարտիայի անդամ եմ ու այդ տարիների ընթացքում ոչ մի անգամ մեր սկզբնական պարտկազմակերպության հաշվետու-ընտրական ժողովում չի կարդացվել պարտիական օրգանների ընտրության վերաբերյալ հրահանգը։ Այս տարի ինքս վերցրի այն պարտբյուրոյի քարտուղարից ու կարդացի»։ Նա ճիշտ է վարվել։ Ամեն մի կոմունիստ պետք է ծանոթ լինի հրահանգին։ Սակայն շատերն այդ մոռանում են։ Եվ ընտրությունները երբեմն պատշաճ կազմակերպվածությամբ չեն անցնում, երբեմն թույլ են տրվում սահմանված դեմոկրատական կարգերի խախտումներ, միշտ չէ, որ կոմունիստները ժամանակին ուղղում են սխալվողներին։

**Ընտրությունների ճիշտ անցկացումը՝ դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքների կենսագործման, կոմունիստների ակտիվության զարգացման և**

պարտիայի ու իր կազմակերպության գործերի համար նրանց պատասխանատվության բարձրացման կարևորագույն պայմաններից մեկն է:

Այդպիսի պայման են նաև ընտրական օրգանների պարբերական հաշվետվությունները իրենց պարտիական կազմակերպություններին ու վերադաս օրգաններին: Ինչպես տեսնում ենք, ցենտրալիզմն ու դեմոկրատիզմը այստեղ ևս հանդես են գալիս անքակտելի կապի մեջ:

Կոմունիստները ո՛չ միայն ընտրում են ղեկավար օրգանները, այլև վերահսկում նրանց, գնահատում նրանց աշխատանքը, վերացնում թերությունները: Ընդ որում, դրանք, ինչպես ցույց տվեցին վերջերս անցկացված հաշվետու-ընտրական ժողովներն ու կոնֆերանսները, համառորեն պահանջում են, որպեսզի հաշվետվություններն ամբողջովին և օբյեկտիվ արտացոլեն ընտրական օրգանի ու նրա անդամների գործունեությունը, կազմակերպության գործերի վիճակը և չլինեն ընդհանուր ճշմարտությունների, հերթական խնդիրների սոսկ շարադրանքը: Այդ շատ կարևոր է ներգործուն վերահսկողության, ճիշտ որոշումների մշակման ու կոմունիստների ակտիվության բարձրացման համար:

Բայց կարևորը միայն հաշվետու-ընտրական ժողովներում, կոնֆերանսներում ու համագումարներում տրվող զեկուցումները չեն: Պարտիական աշխատանքում որքան մեծ է հրապարակայնությունը, այնքան լիովին են դրսևորվում ցենտրալիզմն ու դեմոկրատիզմը: Այդ պատճառով էլ ՍՄԿՊ կանոնադրության մեջ ասված է. «Միութենական ռեսպուբլիկաների կոմպարտիաների կենտկոմները, պարտիայի երկրկոմները, մարզկոմները, օկրուգկոմները, քաղկոմները, շրջկոմները համագումարների ու կոնֆերանսների միջև ընկած ժամանակաշրջանում պարտիական կազմակերպություններին սիստեմատիկաբար տեղյակ են պահում իրենց աշխատանքի մասին»:

Մեր պարտիան վաղուց ի վեր կիրառում է հրապարակայնության ընդլայնման ոչ քիչ ձևեր: Այդ, օրինակ, կոմիտեի որոշումների առաքումն է: Կոմունիստները մեծ հետաքրքրասիրություն են ցուցաբերում դրանց հանդեպ, ընդ որում նրանք ցանկանում են տեղյակ լինել ոչ միայն իրենց, ասենք, հենց շրջկոմի որոշումներին, որոնք անմիջականորեն վերաբերում են իրենց աշխատանքի բնագավառին, այլև ուրիշ որոշումների: Մեծ օգուտ են տալիս շրջկոմների, քաղկոմների գործունեության մասին զեկուցումները սկզբնական կազմակերպություններում: Նման ժողովներում կոմունիստները խոսում են կոմիտեի աշխատանքի մասին, առաջարկություններ անում, քննադատում թերությունները: Այս ամենի հետ մեկտեղ, նրանք հետևություններ են անում կոլեկտիվում աշխատանքի ճիշտ դրվածքի, շրջկոմին ավելի լավ օգնելու մասին: Այդ նպատակին են ուղղված պարտ-աշխատողների հոդվածները թերթերում, նրանց ելույթները ռադիոյում, պարտժողովներում:

Ճշգրիտ ինֆորմացիան օգնում է կոմունիստներին՝ ժամանակին ուղղելու ղեկավար օրգաններին և նպատակասլաց կազմակերպելու իրենց ամենօրյա աշխատանքը: Բացի այդ, լայն հրապարակայնությունը հնարավորություն է տալիս նրանց ավելի լավ ճանաչելու ակտիվ պարտիականներին, հետևաբար և, իրենց ղեկավար օրգանների ընտրությանը հմտորեն մոտենալու, վերջին հաշվով, զգալու և գործով դառնալու պարտիայի տերը: Այդպիսով, բարձրանում է կոմունիստների գիտակցականությունն ու ակտիվությունը, բարելավվում ղեկավար օրգանների գործունեությունը, ամրանում կարգապահությունը:

Պարտիայի մեջ ցենտրալիզմի ու դեմոկրատիայի միասնության դրսևո-



րումներն են նաև կանոնադրական այնպիսի նորմեր, ինչպես՝ պարտիական խիստ կարգապահությունը և փոքրամասնության ենթարկվելը մեծամասնությանը: Պարտիան վիճաբանության ակումբ չէ. այն պետք է գործի, կայացնի կոնկրետ որոշումներ ու դրանք ճշտորեն կատարի: Նույնը պահանջվում է նրա յուրաքանչյուր կազմակերպությունից: Այլապես հնարավոր չի լինի որևէ լուրջ աշխատանք կատարել: «Միայն ներպարտիական դեմոկրատիայի հիման վրա,— ասված է ՍՄԿՊ Կանոնադրության մեջ,— կարող են ծավալվել քննադատությունն ու ինքնաքննադատությունը և ամրապնդվել պարտիայի կարգապահությունը, որը պետք է լինի գիտակցական և ոչ թե մեխանիկական»:

Ամեն մի կոմունիստ իրավունք ունի արտահայտելու իր նկատառումները, փաստարկներ բերելու այս կամ այն հարցի վերաբերյալ, բացահայտ պաշտպանելու իր տեսակետը. պարտիայի մեջ ընդունված է հարգել ընկերոջ կարծիքը, որը շատ կարևոր է ճշմարտության բացահայտման և ներպարտիական դեմոկրատիայի զարգացման համար:

Քննարկման ընթացքում արտահայտվում են տարբեր տեսակետներ, բերվում յուրաքանչյուրի համար մատչելի փաստարկներ: Վ. Ի. Լենինը անվերապահորեն հաստատում էր, որ «Պարտիայի մեջ միշտ կլինեն վեճեր ու պայքար, դրանք պետք է միայն պարտիական շրջանակների մեջ մտցնել...» (հ. 7, էջ 578): Իսկ պարտիական շրջանակները — պարտիայի ծրագրի ու կանոնադրության վրա հիմնված քննարկումն ու ազատությունն են, դրանց գործողությունների միասնությունը: Ինչպե՞ս ապահովել գործողությունների միասնությունը: Եթե քննարկման ընթացքում բոլորը չեն հանգում միևնույն տեսակետին, որոշումն ընդունվում է ձայների մեծամասնությամբ: Եվ փոքրամասնությունն իրավունք չունի շարունակելու պայքարը պարտկազմակերպությունում: Մեծամասնությանը չենթարկվելը՝ այդ պարտիականության խախտում է, ֆրակցիոնություն, ընդհանուր գործի ձախողում, վնաս բանվոր դասակարգի, ողջ աշխատավորների շահերին: Դրա համար էլ պարտիան հետևյալ կարգն է սահմանել. կոմունիստը կատարում է մեծամասնության կամքը, ինչպես իր սեփականը:

Պարտիական օրենքները նույն չափով պարտադիր են բոլորի համար: Կոմիտեի քարտուղարը, ինչպես և կոմիտեի յուրաքանչյուր անդամ, պարտավոր է կատարել կազմակերպության կամքը, պարտիայի բազմավաստակ ու փորձառու անդամները նրա որոշումները կատարելիս պետք է գործեն երիտասարդների, փորձ չունեցողների հետ համատեղ: Ինչպիսին էլ լինի մեծամասնության դեմ ուղղված խմբավորումը, այն խիստ անհանդուրժելի է պարտիական կազմակերպությունում, այն իջեցնում է նրանց մարտունակությունը:

Գործողությունների միասնությունն արտահայտվում է նաև դեմոկրատական ցենտրալիզմի մի այլ դրույթով՝ վերադաս օրգանների որոշումները անվերապահորեն պարտադիր են ստորինների համար: Կոմունիստական պարտիան՝ կազմակերպությունների սիստեմ է: Այն կառուցվում է տերիտորիալ-արտադրական հատկանիշով. սկզբնական կազմակերպությունները, որ ստեղծվում են ըստ աշխատանքի վայրի՝ հիմնարկությունում և կոլտնտեսությունում կամ ըստ կոմունիստների բնակավայրի՝ գյուղերում ու տնային կառավարչություններին կից, ըստ տերիտորիայի միավորվում են շրջանային, քաղաքային և այլ կազմակերպություններում: Տվյալ տերիտորիային սպասարկող կազմակերպությունը հանդիսանում է ամենաբարձրը այդ տերիտորիայի մասերին

սպասարկող մյուս բոլոր պարտիական կազմակերպությունների համեմատու-
թյամբ։ ՍՄԿՊ Կենտկոմի որոշումները պարտադիր են պարտիայի բոլոր կազ-
մակերպությունների համար, շրջկոմի որոշումը՝ տվյալ շրջանի սկզբնական
կազմակերպությունների համար։

Այդպիսի կարգը յուրաքանչյուր պարտիական օրգանի պարտավորեցնում
է խստապահանջ լինել իր որոշումների հանդեպ։ Հայտնի է, որ դրանք մշա-
կելիս կոմիտեները մանրակրկիտ ուսումնասիրում են խնդիրը, հաշվի առնում
օբյեկտիվ տվյալները, մասսաների կարծիքը, առանց որի անհնար է իրոք
գիտական ղեկավարումը, որպիսին պետք է լինի պարտիական ղեկավարու-
թյունը։ Այստեղ մեծ դեր են խաղում սկզբնական կազմակերպությունները։
Սրանք վերադաս կոմիտեների առջև բարձրացնում են այս կամ այն կոլեկտիվի
կյանքից բխող խնդիրներ։ Կոմիտեների պահանջով կամ իրենց իսկ նախա-
ձեռնությամբ ինֆորմացիա են տալիս կոլեկտիվում տիրող վիճակի, այս կամ
այն հարցի շուրջ կոմունիստների, աշխատողների կարծիքի մասին։ Հաճախ
կոմիտեները խիստ կարևոր հարցերի վերաբերյալ իրենց որոշումների նախա-
գծերն ուղարկում են նրանց՝ քննարկելու, հանձնարարում կոլեկտիվում փոր-
ձարկելու այս կամ այն միջոցառումը, պարզելու համար, թե ինչ կտան առա-
ջարկվող միջոցները։ Այս ամենը անգնահատելի նշանակություն ունի և, միա-
ժամանակ, դեմոկրատիզմի ու ցենտրալիզմի արտահայտությունն է։

Այդպիսի միասնությունը հեշտ է նկատել և այլ բանում։ Յուրաքանչյուր
սկզբնական պարտկազմակերպություն պարտավոր է ճշտորեն կատարել վե-
րադաս օրգանների որոշումները, համառորեն գործը մինչև վերջ հասցնել։
Պետք չէ նրան հիշեցնել։ Որոշումն ընդունված է, հարկավոր է անմիջապես և
արագ կենսագործել, որևէ բան պարզ չլինելու դեպքում պարզաբանել այն
մասսաներին, աշխատել ճշտել։ Սակայն ճշտակատարությունը առանց ստեղ-
ծագործական մոտեցման անիմաստ է։

Կոլեկտիվներում սկզբնական կազմակերպությունները որքան համակող-
մանի են հաշվի առնում իրենց կոնկրետ պայմանները, այնքան ավելի հա-
ջող են կատարում վերադաս օրգանների որոշումները։ Քաղմասսայական
աշխատանքի կառուցվածքը գործարանում այլ է, կոլտնտեսությունում՝ այլ։
Շաբլոն չի կարող լինել նաև կազմակերպության աշխատանքում։ Տարբեր
կոլտնտեսություններ տարբեր կերպ են հասնում միևնույն տնտեսական ար-
դյունքին։ Եվ յուրաքանչյուր պարտիական կազմակերպություն պարտավոր է
և իրավունք ունի իր առանձնահատկությունների համապատասխան գործելու։
Միասնությունն ընդհանուրում ձեռք է բերվում մասնավոր բազմազանության
մեջ։ Պարտիան այդ ապահովում է կանոնադրության հետևյալ նորմով. «Բոլոր
պարտիական կազմակերպությունները ավտոնոմ են տեղական հարցերի լուծ-
ման մեջ, եթե այդ որոշումները չեն հակասում պարտիայի քաղաքականու-
թյանը»։

Ամեն մի կազմակերպություն իրավունք ունի քննարկելու և լուծելու այն
բոլոր խնդիրները, որոնք կյանքը դնում է իր առջև։ Պարտիան ամենուրեք
զարգացնում է սկզբնական կազմակերպությունների ինքնագործունեությունը։
Իսկ ի՞նչ է նշանակում ինքնագործունեություն։ Այդ նշանակում է, որ կոմու-
նիստներն ինքնուրույն լուծում են պարտիայի քաղաքականության կենսագործ-
ման ուղղությամբ կոլեկտիվում իրենց առջև ծառացած հարցերը, հաշվի առ-
նելով կոնկրետ պայմանները՝ իրենց ուժերով են լուծում դրանք։



Դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը մարմնավորում է ցենտրալիզ-
մի և ներպարտիական դեմոկրատիայի անքակտելի միասնությունը։ Պարտիա-
կան ցենտրալիզմն ու կարգապահությունն ամրապնդվում, կարգավորվում է
այն դեպքում, երբ աճում է կոմունիստի գիտակցականությունը, երբ նրանք
ակտիվ մասնակցում են պարտիական կյանքին, ազատ իրենց կամքն են
հայտնում պարտիական օրգանների ընտրություններում, երբ ղեկավարման
մեջ գործում են պարտիական մասսաների կարծիքի դրսևորման ու արտա-
ցոլման հնարավորություններն ապահովող բոլոր ինստիտուտները և դեմո-
կրատիայի ձևերը, երբ կենսագործվում է ներպարտիական դեմոկրատիան։
Վերջինս, իր հերթին, ամրապնդվում, զարգանում է միայն կազմակերպվա-
ծության ու գործարարության մթնոլորտում, երբ ճշտորեն իրականացվում է
մեծամասնության կամքը, երբ ոչ-ոք չի կարող շեղել կազմակերպության
որոշումը և երբ բոլոր կոմունիստները համերաշխ, ստեղծագործաբար ձգտում
են հասնելու ընդհանուր նպատակին։ Պարտիայի կազմակերպական կառուց-
վածքի ղեկավար սկզբունքի հետևողական կենսագործմամբ ապահովվում են
կոմունիստների նախաձեռնության և ակտիվության զարգացումը, նպատակա-
սլացությունն ու նրանց գործողությունների միասնությունը։

**Քննարկումը՝ միատեղ, իսկ պատասխանատվու-թյունը՝ միանձնյա**

Կոմունիստական պարտիան սովետական ժողովրդի
կոլեկտիվ առաջնորդն է և գիտակցում է իր մեծագույն
պատասխանատվությունը ժողովուրդների ճակատագրի
նկատմամբ։ Դրա համար էլ ղեկավարման նրա սկզբունք-
ները, աշխատանքի բոլոր ձևերն ու մեթոդներն ուղղված
են այն բանին, որպեսզի նրա որոշումներում, ամենօրյա աշխատանքում ար-
տացոլվեն միլիոնավոր կոմունիստների խելքը, գիտելիքները, փորձը, էներ-
գիան։ Կոլեկտիվիզմը բնորոշ է նրա բոլոր օրգանների աշխատանքին։ Այդ
պարտիական ղեկավարման գերագույն սկզբունքն է, պարտիական կազմա-
կերպությունների նորմալ գործունեության, ղեկավար կադրերի ճիշտ դաստիա-
րակության, կոմունիստների ակտիվության ու ինքնագործունեության զար-
գացման անհրաժեշտ պայմանը։

Պարտիան մշակել է կոլեկտիվ ղեկավարման սկզբունքի կանոնադրական
մի շարք երաշխիքներ։ Դրանցից առաջինն այն է, որ ղեկավար օրգանները՝
ներքևից վերև, կոլեկտիվ են. սահմանված են նրանց գումարման պարտադիր
ժամկետներ. պաշտպանվում են նրանց անդամների իրավունքները։ Սկզբնա-
կան պարտիական կազմակերպության բարձրագույն ղեկավար օրգանը կո-
մունիստների ընդհանուր ժողովն է։ Այն հրավիրվում է ոչ-պակաս, քան
ամիսը մեկ անգամ, և ամեն մի կոմունիստ այնտեղ իրավունք ունի ազատ
քննարկելու պարտիայի քաղաքականության ու պրակտիկ գործունեության
հարցերը, առաջարկություններ անելու և, քանի դեռ կազմակերպությունը որո-
շում չի կայացրել, բացահայտ արտահայտելու և պաշտպանելու իր կարծիքը։

Իրենցից՝ կոմունիստներից է կախված, թե ժողովն ինչ չափով է մարմ-
նավորում կոլեկտիվ ղեկավարության սկզբունքները, արտահայտում նրանց
կարծիքն ու կամքը։ Ամենից առաջ՝ անհրաժեշտ է, որ նրանք սահմանված
ժամկետում հավաքվեն և քննարկեն, իրոք արմատական հարցեր, որոնց ճիշտ
լուծումը պահանջում է բոլոր «թեր» ու «դեմ» ձայների հաշվառում, կարծիք-
ների հանգամանալի փոխանակում։

Կոլեկտիվ ղեկավարությունն ամենևին էլ չի նշանակում, թե տառացիորեն

կյանքի, ասենք, ձեռնարկության բոլոր հարցերը անպայման պետք է «նախապես որոշվեն» պարտկազմակերպությունների կողմից։ Ինչո՞ւ քննության դնել այն, ինչ պարզ հայտնի է բոլորին։ Մինչդեռ որոշ կազմակերպություններում միևնույն հարցը խիստ ընդհանուր ձևով մի ժողովից մյուսն է չվում։ Կոչ են անում, օրինակ, կատարել պլանը, միաժամանակ կրկնում են արտադրատեխնիկական այնպիսի դետալներ, որպիսիք քննարկում են տնտեսական խորհրդակցություններում։ Առանց պարտժողովի էլ բոլորն այդ գիտեն։ Իսկ թե ինչպես ուժեղացնել ազդեցությունը կոլեկտիվի, տնտեսական ղեկավարման բարելավման վրա, այս կամ այն գործում բարձրացնել առանձին կոմունիստների դերը, այս արդեն միշտ չէ, որ պարզ է լինում։ Հազվադեպ են պարտժողովները քննարկում, օրինակ, այսպիսի հարցեր. ինչպե՞ս ենք պատրաստում մեզ փոխարինողներին, ինչպիսի՞ բարելավման կարիք ունի կոմունիստների աշխատանքը արհմիությունում, անպարտիականների հետ կոմունիստների անձնական շփումը, պարտիական հանձնարարության դաստիարակչական նշանակությունը, ի՞նչ է սովորեցնում վարչական կազմի գործունեության վերահսկողության մեր փորձը, ի՞նչ են տալիս մեզ դռնբաց պարտժողովները։

Երբ ընդհանուր ժողովներում ժամանակ է վատնվում ծեծված ճշմարտությունների կրկնության վրա, այդ ո՛չ միայն տաղտկալի է, ժամանակի զուր կորուստ, այլ, ուղղակի, կոլեկտիվիզմի սահմանափակում, որովհետև պարտաշխատանքի համար իրոք գործուն նշանակություն ունեցող խնդիրները չեն լուծվում կամ լուծվում են փոքրաթիվ մարդկանց շրջանում, ուստի և երբեմն ճիշտ չեն, միակողմանի, սուբյեկտիվ մոտեցման արգասիք են։

Կոլեկտիվ քննարկման նպատակն է, լիովին հաշվի առնել հնարավոր տեսակետները ու ճիշտ որոշում մշակել։ Խոսքը, ամենից առաջ, յուրաքանչյուր առանձին կոմունիստի տեսակետի մասին է։ Նա ժողովի է նախապատրաստվում, կշռադատում փաստերը, օգտվում գրականությունից. կոմունիստը պետք է ունենա իր կարծիքը։ Սակայն շատ կարևոր է նաև անպարտիականների կարծիքը, որոնց հետ աշխատում է պարտկազմակերպությունը։ Այդ պատճառով էլ, շատ անգամ, ելնելով օրակարգից, դռնբաց ժողովներ են հրավիրվում, որոնք հնարավորություն են ընձեռում բարելավելու պարտիական ղեկավարությունը։

Կոլեկտիվիզմը մեծ մասամբ պայմանավորված է նրանով, թե ինչպես է կազմակերպված ժողովը, նրանով, թե նրա մասնակիցները հնարավորություն ունե՞ն արդյոք ժամանակին պարզաբանելու ծագող հարցերը, հայտնելու իրենց կարծիքը, տեղեկություն տալու, թե իրենց ակնածանքո՞վ են լսում։ Քննարկումն այն դեպքում է լավ անցնում, երբ ժողովականների տեսակետները մաքսիմալ չափով մոտենում են, երբ ճիշտ որոշում է մշակվում։ Սկզբնական կազմակերպության համար այն ծառայում է որպես գործողության պլան։ Նախանշելով նպատակը, կոմունիստները պայմանավորվում են, թե առաջադրված խնդիրները կատարելու համար ով ինչ է անելու և ինչպիսի ժամկետում։ Ծապաղ, ճոճռան, ոչ-ոքի և ոչինչ չպարտավորեցնող բանաձևերի վճռական հակառակորդն էր Լենինը։ Նա տվել է կոլեկտիվ գործարար ղեկավարման խոր բնորոշումը. «Քննարկումը՝ միասին, իսկ պատասխանատվությունը՝ միանձնյա» (հ. 33, էջ 62)։

Իհարկե, որոշումն ընդունվում է ձայների մեծամասնությամբ և կազմա-



կերպության յուրաքանչյուր անդամ կատարում է այն որպես իր սեփականը։ Սակայն անհրաժեշտ է այնպես հանգամանորեն ու պատշաճ քննարկել հարցերը, որ հնարավոր լինի հասնել ճշմարտության, տեսակետների մերձեցման, միասնական կարծիքի մշակման։ Միևնույնը չէ, թե ինչպիսի մեծամասնությամբ է ընդունվել որոշումը — կեսից քիչ ավելի՞ն է կողմ քվեարկել, երեք քառո՞րդը, թե՞ 99 տոկոսը։ Չէ՛ որ պարտկազմակերպությունը բարձրագույն ղեկավար օրգանն է, բայց դա և՛ պարտիականության դպրոց է, և՛ հայացքների ու գործողությունների միասնության մշակման կազմակերպական ձև։ Ժողովում ձեռք բերված միասնությունը կազմակերպության անդամների բարձր ակտիվության, պարտիական գիտակցական կարգապահության կարևորագույն պայմանն է։

Կոմունիստների կոլեկտիվ աշխատանքի կազմակերպման գործում անգնահատելի դեր ունեն գործադիր օրգանները՝ կոմիտեն, բյուրոն, քարտուղարը։ Դրանց ընտրում է ընդհանուր ժողովը՝ ընթացիկ աշխատանքը ղեկավարելու համար։ Սրանց պարտականությունների հաջող կատարումը դարձյալ մեծ չափով կախված է նրանց գործունեության կոլեկտիվ բնույթից։ Իսկ այն ձեռք է բերվում կարևոր հարցերի միատեղ քննարկմամբ, այլ ընկերների կարծիքի հանդեպ բյուրոյի յուրաքանչյուր անդամի և, հատկապես, քարտուղարի ուշադիր վերաբերմունքով, գործնական ղեկավար աշխատանքում բոլոր անդամների ամենօրյա մասնակցությամբ, նրանց պարտականությունների մտածված բաշխմամբ։

Կոմունիստների ամենօրյա եռանդուն աշխատանքի ապահովման համար կարևոր է նաև բյուրոյի անդամների՝ գործը պրակտիկ ձևով ղեկավարելու, ժամանակին անհրաժեշտ միջոցներ ձեռք առնելու, ում հարկն է հանձնարարություն տալու, դրա անշեղ կատարմանը հետևելու հմտությունը։ Այստեղ անգնահատելի նշանակություն ունի հեղինակությունը։ Որոշ կազմակերպիչներ, տասն անգամ հիշեցնում են առաջադրանքը, բոլորին հայհոյում, քայքայում իրենց և ուրիշների ներվերը, բայց գործը տեղից չի շարժվում։ Հակառակը, դրանով միայն իջնում է գործարարությունը։ Մեկ ուրիշը ձայնը երբեք չի բարձրացնի, չի ջղայնանա, կասի՝ ինչ է պահանջվում անել, և մարդիկ իսկույն գործի կանցնեն։ Ինչո՞ւ, որովհետև նրան հավատում են, հարգում. նա շատ բան գիտե, կիրթ է, բոլոր ուժերը նվիրել է գործին և անտարբեր չի անցնի գործից խուսափողների կողքով։

Կազմակերպիչների հեղինակությունը պետք է պահպանել ու բարձրացնել։ Ինչպե՞ս այդ անել։ Հասկանալի է, ոչ արժանիքների գովաբանմամբ, և ոչ էլ թերությունները լռության մատնելով։ Կյանքը բազմիցս ապացուցել է, որ «փքուն հեղինակությունը», վաղ թե ուշ, պայթում է։ Այդ դեպքում աշխատանքը ձախողվում է, և մարդկանց մեջ մնում է վիրավորանքը, ղեկավարների նկատմամբ անվստահությունը, անգործունությունը։

Ըստ էության ղեկավարի հեղինակությունը պահպանվում է սկզբունքայնությամբ, աշխատանքում ճշտապահությամբ, թերությունների քննադատությամբ։ Եթե, օրինակ, քարտուղարը մեծամտանում է, ուրիշներին չի վստահում, ամեն ինչի ինքն է ձեռնարկում, հարկավոր է նրա երեսին ասել, որ այդ վնասակար է ընդհանուր գործի համար, որ նա պետք է կոլեկտիվ աշխատանքի կազմակերպիչը լինի։ Քննադատությունն ու ինքնաքննադատությունը կատարյալ կոլեկտիվ աշխատանքի գրավականն են։

Ամենից առաջ, հենց բյուրոյում պետք է լինեն այդպիսի փոխադարձ պահանջկոտության, հարգանքի, փոխօգնության հարաբերություններ։ Բայց ընտրված կոլեկտիվի աշխատանքի մակարդակը կախված է կազմակերպության բոլոր կոմունիստների վերահսկողությունից։ Չի կարելի հանդուրժել, որ իրենց ընտրած կազմակերպիչները անջատ-անջատ գործեն, մեծամտաբար իրենց համարեն անսխալական ու անփոխարինելի։ Նման վիճակ չի կարող լինել այնտեղ, ուր բյուրոն իր աշխատանքի մասին զեկուցում է ո՛չ միայն հաշվետու-ընտրական ժողովներում, այլև դրանց միջև ընկած ժամանակամիջոցում, ու յուրաքանչյուր ժողովում հաղորդվում է անցյալում ընդունված որոշումների կատարման մասին։ Այս հնարավորություն է տալիս կոմունիստներին՝ ավելի լավ տեսնելու և ժամանակին քննարկելու առանձին ընկերների, բյուրոյի կամ ողջ կազմակերպության աշխատանքում եղած թերությունները, նշելու այն դրականը, որն անհրաժեշտ է տարածել ու զարգացնել։

Փոխադարձ բարձր պահանջկոտության պայմաններում խստիվ պահպանվում է կոլեկտիվ ղեկավարման սկզբունքը։ Սկզբնական կազմակերպություններում այդ անմիջականորեն անդրադառնում է կոմունիստների ակտիվության, իրենց աշխատանքային կոլեկտիվում իր գործի, ողջ պարտիայի գործունեության նկատմամբ նրանց պատասխանատվության վրա։



Ռևոլյուցիոն պարտիայի մասին լենինյան ուսմունքի անշեղ կենսագործումը հանդիսանում է պարտիայի՝ որպես սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժի, դերի ու նշանակության՝ հետագա բարձրացման գրավականը։ Չի կարելի անտեսել նաև ՍՄԿՊ Ծրագրի հետևյալ դրույթը. «Որպես կոմունիստական հասարակարգ կառուցող ժողովրդի առաջավոր ջոկատ, պարտիան պետք է առջևից ընթանա նաև իր ներպարտիական կյանքը կազմակերպելու գործում, ցույց տալով կոմունիստական հասարակական ինքնավարության առավել կատարյալ ձևեր մշակելու օրինակ»։

Կյանքը կոմունիստներից պահանջում է ավելի մեծ ակտիվություն ու կազմակերպվածություն, աշխատանքային կոլեկտիվում իրենց գործի հետագա բարելավում։ Այս ընդգծվել է ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի վերջին պլենումներում։ Մշակելով գյուղատնտեսության հետագա զարգացման համար անհետաձգելի միջոցառումներ՝ մարտյան (1965 թվական) պլենումն ընդգծեց, որ տնտեսական-քաղաքական խնդիրները կենսագործելիս անհրաժեշտ է հասնել մասսաների ակտիվ մասնակցությանը, տնտեսական-քաղաքական խնդիրների կենսագործմանը, հատուկ ուշադրություն նվիրեց կոլտնտեսություններում և սովխոզներում սկզբնական պարտկազմակերպությունների դերի բարձրացմանը։ Սեպտեմբերյան (1965 թվական) պլենումը որոշում ընդունելով արդյունաբերության ղեկավարումը բարելավելու, պլանավորումը կատարելագործելու և արդյունաբերական արտադրության տնտեսական խթանումն ուժեղացնելու մասին, պարտավորեցրեց պարտիական կազմակերպություններին՝ ուժեղացնել աշխատավորների կոմունիստական գիտակցականության բարձրացման աշխատանքը, զարգացնել նրանց ստեղծագործական ակտիվությունը, ամրապնդել կարգապահությունը։ Մեր ժողովրդի առջև դրված վիթխարի խնդիրների լուծման համար ամենուրեք կարևորագույն նշանակություն ունեն յուրա-



քանչյուր կոմունիստի, և բոլոր սկզբնական կազմակերպությունների ակտիվությունը, նախաձեռնությունը, սկզբունքայնությունը և կարգապահությունը։

Այս ամենը նկատի առնելով միայն կարելի է հստակ պատկերացնել պարտիայի՝ հանուն լենինյան սկզբունքների և պարտիական կյանքի նորմերի վերականգնման, անհատի պաշտամունքի ու սուբյեկտիվիզմի դեմ մղած պայքարի հսկայական նշանակությունը։ Գնալով ավելի ակնառու է դառնում մեր պարտիայի XX համագումարի, ՍՄԿՊ Կենտկոմի հոկտեմբերյան (1964 թվական) պլենումի՝ վիթխարի դերը, որպես այդ պայքարի չափազանց կարևոր էտապի։

Յուրաքանչյուր կոմունիստ պետք է որոշակի պատկերացնի, թե ինչ է պահանջում իրենից պարտիան, դրանք կատարի հստակ, համարձակ ու հմտորեն, ինչպես սովորեցրել է Վ. Ի. Լենինը. «Պահանջել պարտիայի անդամների պարտականությունների կատարումը ոչ միայն շարքայիններից, այլև վերնախավի մարդկանցից...» (հ. 7, էջ 508)։

Դրա համար կոմունիստները պետք է դաստիարակվեն պարտիայի մարտական տրադիցիաների ոգով, համառորեն ուսումնասիրեն պարտիական շինարարության լենինյան սկզբունքները։ Ընդ որում, այդ սկզբունքները ուսումնասիրեն ոչ ընդհանուր առմամբ, այլ սերտորեն կապելով պարտիայի ամենօրյա ողջ գործունեության և իր սկզբնական կազմակերպության հետ։ Լենինյան սկզբունքների պահպանումը,— ինչպես ասված է մեր Ծրագրում, պարտիայի գաղափարական ու կազմակերպական ամրության և պարտիայի շարքերի համախմբման, ներպարտիական դեմոկրատիայի ու դրա հիման վրա պարտիական բոլոր ուժերի ակտիվության բազմակողմանի զարգացման, մասսաների հետ կապի ամրապնդման անհրաժեշտ պայմանն է։

## ՀԱՄԱՌՈՏ ՄԵԹՈԴԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴՆԵՐ

Այս թեմայի պարապմունքը, թերևս ավելի դժվար է։ Բանը նրանումն է, որ այն պետք է ամփոփի «Պարտիայի վերաբերյալ լենինյան ուսմունքի հիմունքները և պարտիական աշխատանքը կոլեկտիվում» բաժինը։ Պարապմունքը պետք է այն ձևով վարել, որպեսզի օգնի ունկնդիրներին հստակ ըմբռնելու, որ սկզբնական կազմակերպության գործունեության հաջողության հիմքը լենինյան սկզբունքների պահպանումն է։ Զրույցի ընթացքում կարելի է շոշափել և ամբողջ ցիկլի հարցերը։ Բայց հիմնականը, համենայն դեպս, կլինեն տվյալ թեմայինը։ Այն հենց այդպիսի ընդգրկող վերնագիր էլ ունի՝ «Լենինյան սկզբունքներով», սակայն չի կրկնում այն ամենը, ինչ ասվել է նախորդ պարապմունքներում, այլ ընդգծում է պարտիայի կազմակերպական կառուցվածքի ղեկավար սկզբունքը և պարտիական ղեկավարության բարձրագույն սկզբունքները։ Կազմակերպական հիմքերի մասին խոսվել է ՍՄԿՊ պատմության առաջին գլուխն անցնելիս։ Այնպես որ, այժմ ունկնդիրները կարող են ամենայն խորությամբ քննարկել տվյալ թեմայի գլխավոր խնդիրները։

Զրույցի ժամանակ, մասամբ, կարելի է առաջադրել այսպիսի հարցեր. 1. Պարտիայի անդամների **ակտիվության դերը։** Որքա՞ն ակտիվ են տվյալ պարտկազմակերպության անդամները։ 2. Պարտիական օրգանների ընտրելիությունն ու հաշվետու լինելը։ Դրանց նշանակությունը, կանոնադրական հիմնական նորմերը։ Ինչպես են անցնում ձեր պարտկազմակերպության ընտրություններն ու հաշվետվությունները։ 3. Պարտիական կարգապահության էությունը։ 4. Ցենտրալիզմի և դեմոկրատիզմի միասնությունը։ Այն կոնկրետ ինչում է դրսևորվում։ 5. Սկզբնական պարտկազմակերպության կոլեկտիվ ղեկավարությունը։ Ի՞նչ ճանապարհով է այդ ձեռք բերվում։ Իհարկե, հնարավոր են նաև ուրիշ հարցեր։ Ինչպե՞ս դրանք ավելի լավ ձևակերպել. այդ պրոպագանդիստի գործն է, նա հաշվի է առնում և՛ պարապմունքի նպատակը, և՛ ունկնդիրների պատրաստականության մակարդակը և շատ այլ հարցեր։

Ինչպես և նախորդ զրույցներին, շատ կարևոր է իր սկզբնական կազմակերպության աշ-

խատանքի փորձը մաքսիմալ չափով օգտագործելը։ Այդ հաջողվում է այն ժամանակ, երբ ունկնդիրների մի խմբի վաղօրոք գործնական առաջադրանքներ է հանձնարարվում։ Բյուրոյի կամ պարտկոմի հետ համաձայնության գալով կարելի է ուսումնասիրել, օրինակ, պարտաշխատանքի պլանավորումը, դրա բաշխումը կոմունիստների միջև և հանձնարարությունների կատարման վերահսկողությունը, որևէ պարտժողովի նախապատրաստումն ու անցկացումը, և այն, թե ինչպես է այդ անդրադարձել հարցերի լուծման վրա։ Այնուամենայնիվ, պրոպագանդիստի և բյուրոյի (պարտկոմի) գործն է՝ թե ինչ ընտրել։

Իր սկզբնական պարտկազմակերպության պրակտիկայի ուսումնասիրման և այդ մասին անցկացվող զրույցի հաջողությունը որոշակի չափով պայմանավորված է նրանով, թե ինչպես են նախապատրաստված պրոպագանդիստը և ունկնդիրները։ Ուսուցման պլանում տրված է տվյալ թեմայի գրականությունը։ Պրոպագանդիստն ու ունկնդիրները մեծ օգուտ կստանան մեկ անգամ ևս կարդալով Վ. Ի. Լենինի Ի՞նչ անել IV գլխի «դ) բաժինը», ««Դավադրական» կազմակերպությունը և «դեմոկրատիզմը»». V գլխի «բ) բաժինը»։ «Ի՞նչ տիպի կազմակերպություն է մեզ հարկավոր» (հ. 5, էջ 631—643, 681—691). «Մի քայլ առաջ, երկու քայլ ետ» աշխատության «է-ժզ» և «ժէ» բաժինները (հ. 7, էջ 300—390, 487—528)։

Այս աշխատություններում էլ հենց հիմնականում մշակված են մեր պարտիայի կազմակերպական հիմունքները։ Լենինի երկերի որոշ մասեր կարելի է հանձնարարել բոլոր ունկընդիրներին, ամենից ավելի պատրաստվածները կարող են խոսել հիշյալ աշխատությունների մասին ընդհանրապես։ Մեկը կարող է հիշել առաջին և երկրորդ թեմաների առթիվ հանձնարարված աշխատությունները, մասամբ, «Բանվորների պետությունը և պարտիական շաբաթը» (հ. 30, էջ 60), «Մոսկվայի պարտիական շաբաթի արդյունքները և մեր խնդիրները» (հ. 30, էջ 70)։

Ինքնուրույնության համար անհրաժեշտ է՝ ունկնդիրները պետք է կարդան ՍՄԿՊ Ծրագրի 7-րդ բաժինը, ՍՄԿՊ Կանոնադրության ներածությունն ու 3, 4, 5 և 6-րդ բաժինները։

Տեսական զրույցները ամենօրյա գործնական պարտաշխատանքի հետ կապելու համար օգտակար է կարդալ Սկզբնական պարտիական կազմակերպության քարտուղարի տեղեկատու (Քաղհրատ, 1964) 7, 8 և 9-րդ բաժինները։

---

## «ԸՆԴՀԱՆՈՒՐ ՇՈՒԿԱՅՈՒՄ» ԵՐԿՈՒ ԳԼԽԱՎՈՐ ՄՐՑԱԿԻՑՆԵՐԸ—ԱՌՋԵՎՈՒՄ Է ԳՖՌ-Ն

| «ՆՈՒՎԸ ԿԱՆԴԻԴ», ՓԱՐԻԶ | ԱՐԵՎՄՏՅԱՆ ԳԵՐՄԱՆԻԱ | ՖՐԱՆՍԻԱ |
|---|---|---|
| Բնակչություն | 58 000 000 | 48 000 000 |
| Տնտեսապես գործունյա բնակչություն | 27 000 000 | 20 000 000 |
| Ոսկու և վալյուտայի պաշարները (մլրդ. ֆրանկներով) | 31,56 | 25,68 |
| Արտահանում (մլրդ. ֆրանկներով) | 73 | 40 |
| Ներմուծում (մլրդ. ֆրանկներով) | 65 | 4 |
| Երկաթի հալում | 32 | 18 |
| Ավտոմոբիլների արտադրությունը | 2 909 657 | 1 583 000 |
| Քիմիական արտադրանք (մլն. տ.) | 7 | 5.1 |
| Նավթ (մլն. տ.) | 4 838 | 4 400 |
| Էլեկտրաէներգիա (մեկ ամսվա միջինը կիլովատ ժամ) | 12 756 | 78 828 |
| Բնակարանային շինարարություն | 550 000 | 400000 |
| Հացահատիկ (մլն. տ.) | 14,3 | 23,6 |
| Կապիտալ ներդրումներ | 25,4 տոկոս | 19,6 տոկոս |
| Աշխատանքային շաբաթվա տևողությունը (արդյունաբերության մեջ) | 40,44 ժամ | 45,[illegible] ժամ |
| Գների աճումը (1958—1965 թթ.) | 16 տոկոս | 30 տոկոս |



# ՀՍՍՌ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԶՈՒՏ ԱՐՏԱԴՐԱՆՔԸ ԵՎ ԴՐԱ ԱՃԻ ՀՆԱՐԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Սովետական իշխանության տարիներին ռեսպուբլիկայի արդյունաբերությունը աճեց բարձր տեմպերով։ Ստեղծվեցին և լայնորեն զարգացան արդյունաբերության այնպիսի ճյուղեր, որպիսիք բոլորովին գոյություն չեն ունեցել նախառևոլյուցիոն Հայաստանում։ Արդյունաբերության այդ ճյուղերից են՝ մեքենաշինությունը, հատկապես էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը, հաստոցաշինությունը, սարքաշինությունը, քիմիական արդյունաբերությունը, հաստոցաշինությունը, շինանյութերի, ապակու, ճենապակու և հախճապակու, ինչպես նաև թեթև և սննդի արդյունաբերության շատ ճյուղեր, մասնավորապես՝ գործվածքեղենի, տրիկոտաժեղենի, հրուշակեղենի և այլն։ Սովետական վիճակագրության մեջ արդյունաբերությունը բաժանվում է 13 խոշոր ճյուղերի, դրանցից 11-ը այս կամ այն չափով գոյություն ունեն Հայաստանում։ Ներկայումս ռեսպուբլիկայի արդյունաբերությունը 3 օրում տալիս է գրեթե այնքան արտադրանք, որքան արտադրել է նախառևոլյուցիոն Հայաստանի արդյունաբերությունը ամբողջ 1913 թվականի ընթացքում։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության բուռն զարգացումը փայլուն կերպով դրսևորվում է նաև արդյունաբերության զուտ արտադրանքի արագ աճով, որի մասին վկայում են ստորև բերված աղյուսակի տվյալները։

Հայկական ՍՍՌ արդյունաբերության զուտ արտադրանքի աճման տեմպերը 1955—1963 թթ. (համադրելի գներով, ներառյալ շրջանառության հարկը)

| Տարիներ | Տոկոսներ նախորդ տարվա նկատմամբ | Տոկոսներով 1955 թ. նկատմամբ |
|---|---|---|
| 1955 | — | 100 |
| 1956 | 109,6 | 109,6 |
| 1957 | 107,7 | 118,0 |
| 1958 | 118,0 | 139,2 |
| 1959 | 107,8 | 150,1 |
| 1960 | 111,7 | 167,7 |
| 1961 | 112,1 | 188,0 |
| 1962 | 108,9 | 204,7 |
| 1963 | 104,0 | 212,9 |

Բերված տվյալները ցույց են տալիս, որ ուսումնասիրվող ժամանակաշրջանում ռեսպուբլիկայի արդյունաբերության զուտ արտադրանքն աճել է ավելի քան երկու անգամ։ Ընդ որում նրա

աճի միջին տարեկան տեմպերը այդ ժամանակամիջոցում կազմել են 9,9 տոկոս: Արդյունաբերության արագ զարգացման շնորհիվ փոխվեց նյութական արտադրության ճյուղերի փոխհարաբերությունը: Ներկայումս ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության մեջ գլխավոր տեղը պատկանում է արդյունաբերությանը, որը տալիս է հասարակական ամբողջական արդյունքի $2/3$ մասից և ազգային եկամտի կեսից ավելին: 1963 թվականին նյութական արտադրության ոլորտում զբաղված աշխատողների ընդհանուր թվի 28,4 տոկոսն աշխատում էր արդյունաբերության մեջ:

Մեկ աշխատողին ընկնող համախառն և զուտ արտադրանքի արտադրության տեսակետից ռեսպուբլիկայի նյութական արտադրության բոլոր ճյուղերում արդյունաբերությունը գրավում է առաջին տեղը: Այսպես, օրինակ, արդյունաբերության մեջ մեկ աշխատողի հաշվով արտադրված համախառն արտադրանքը 2,2 անգամ ավելի է, քան շինարարության և 9,6 անգամ ավելի, քան գյուղատնտեսության մեջ: Իսկ նոր ստեղծված արժեքի գումարի տեսակետից, արդյունաբերության մեջ յուրաքանչյուր աշխատողին ընկնում է 1,8 անգամ ավելի արտադրանք, քան շինարարության և 5,9 անգամ ավելի, քան գյուղատնտեսության մեջ:

Եթե նկատի ունենանք, որ արդյունաբերությունը շինարարության և տրանսպորտի հետ միասին տալիս է ռեսպուբլիկայի ազգային եկամտի մոտ $3/4$ մասը (1963 թ. 75,2 տոկոս), ապա միանգամայն ակնհայտ կդառնա, թե ինչպիսի զարգացած ինդուստրիալ երկիր է դարձել Սովետական Հայաստանը:

Ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքի 98,2 և զուտ արտադրանքի 98,7 տոկոսը բաժին է ընկնում պետական արդյունաբերությանը: Վերջին տարիների ընթացքում ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն և զուտ արտադրանքը հիմնականում աճել է գործադրվող կենդանի աշխատանքի ավելացման հաշվին: Այսպես, եթե զուտ արտադրանքի ամբողջ աճը 1963 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, ընդունենք 100, ապա պարզվում է, որ դրա 67,2 տոկոսը եղել է գործադրվող կենդանի աշխատանքի ավելացման հաշվին, իսկ մնացած 32,8 տոկոսը՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին: Տեխնիկական պրոգրեսի և աշխատանքի արտադրողականության սիստեմատիկ բարձրացման շնորհիվ գնալով հարաբերականորեն կիջնի գործադրվող կենդանի աշխատանքի դերը ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն և զուտ արտադրանքի աճման գործում, և կբարձրանա աշխատանքի արտադրողականության դերը: Եթե աշխատանքի արտադրողականությունը ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ մնար 1958 թվականի մակարդակին, ապա 1963 թվականի զուտ արտադրանքի արտադրության համար լրացուցիչ կպահանջվեր 28,7 հազար մարդ:

Արդյունաբերության զուտ արտադրանքի աճի մի զգալի մասը արդյունք է նյութական ծախսերի տնտեսման: Այսպես, 1958 թվականին նյութական ծախսերի տեսակարար կշիռը արդյունաբերության համախառն արտադրանքի մեջ (առանց շրջանառության հարկի) կազմել է 74,9 տոկոս, իսկ 1963 թվականին՝ 72,1 տոկոս: Նյութական ծախսերի տեսակարար կշռի իջեցումը հնարավորություն տվեց ստանալու մոտավորապես 40,5 միլիոն ռուբլու լրացուցիչ զուտ արտադրանք:

Ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն և զուտ արտադրանքի աճման գործում աշխատանքի արտադրողականության դերն ավելի մեծ կլիներ,



եթե բոլոր ձեռնարկությունները կարողանային կատարել և գերակատարել աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանային առաջադրանքը: Սակայն, ինչպես ցույց տվեցին յոթնամյակի անցած տարիների տնտեսական արդյունքները, զգալի թվով ձեռնարկություններ չկարողացան կատարել աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը:

Արդյունաբերության համախառն և զուտ արտադրանքի ավելացմանը մեծ չափով նպաստում են արտադրական պլանների կատարումն ու գերակատարումը: Արտադրական պլանների կատարումն ապահովում է նախատեսված ծավալով արդյունքի ստացումը: Արտադրական ծրագրի գերակատարումը ժողովրդական տնտեսությանը տալիս է մեծ ծավալի հասնող համախառն ու զուտ արտադրանք: Հետևաբար, արդյունաբերական ձեռնարկությունների աշխատանքում տեղ գտած թերությունների վերացումը, ներարտադրական ռեզերվների հայտնաբերումը և լրիվ օգտագործումը արտադրության աճման կարևոր աղբյուրներից են:

Հայկական ՍՍՌ մինիստրների սովետին ենթակա արդյունաբերական ձեռնարկությունները, որոնք տալիս են ռեսպուբլիկայի արդյունաբերության ամբողջ արտադրանքի ճնշող մասը, զգալի չափով գերակատարեցին յոթնամյակի անցած վեց տարիների պլանային առաջադրանքները և պլանից դուրս երկրին տվեցին 251 միլիոն ռուբլու արդյունաբերական արտադրանք:

Այս բոլորի հետ միասին պետք է նշել, որ ամբողջապես վերցրած ռեսպուբլիկայի արդյունաբերության ոլորտներում դեռևս կան էական թերություններ, որոնց լիկվիդացումը ավելի նշանակալից կդարձներ ռեսպուբլիկայի արդյունաբերության նվաճումները: Այսպես՝ դեռևս զգալի թվով արդյունաբերական ձեռնարկություններ չեն կատարում իրենց արտադրական պլանները:

Ստորև բերվող տվյալները ցույց են տալիս համախառն արտադրանքի պլանը չկատարող ձեռնարկությունների թիվը և նրանց կողմից չտրված արտադրանքի չափը՝ վերջին հինգ տարիների ընթացքում:

| | 1961 թ. | 1962 թ. | 1963 թ. | 1964 թ. | 1965 թ. |
|---|---|---|---|---|---|
| 1. Պլան չկատարող ձեռնարկությունների թիվը . . . . . . . . . | 83 | 75 | 62 | 60 | 90 |
| 2. Տոկոսներով ձեռնարկությունների ընդհանուր թվի նկատմամբ . . . | 16,5 | 15,0 | 11,0 | 11,5 | 16,2 |
| 3. Նրանց կողմից չտրված արտադրանքը (հազար ռուբլիներով) . . . . | 20966 | 15657 | 25700 | 8554 | 20600 |
| 4. Պլան չկատարող յուրաքանչյուր ձեռնարկության հաշվով չտրված արտադրանքի միջին չափը (հազար ռուբլիներով) . . . . . . | 253 | 209 | 415 | 142,5 | 229 |

Անցած յոթնամյակի տարիներին պլան չկատարող ձեռնարկությունները երկրին չտվեցին 108,8 միլիոն ռուբլու արտադրանք: Հաշվարկները ցույց են տալիս, որ եթե այդ ձեռնարկությունները կատարեին արտադրական պլանները, ապա ռեսպուբլիկայի արդյունաբերության զուտ արտադրանքը կավելանար 30,4 միլիոն ռուբլով:

Հանրահայտ է, որ սոցիալիստական արտադրությունը զարգանում է պլանաչափ, և որ նրա նպատակն է աշխատավորների պահանջմունքների բազմա-

կողմանի բավարարումը։ Այդ ենթադրում է որոշակի համամասնություններ ժողովրդական տնտեսության առանձին ճյուղերի զարգացման տեմպերի և տարբեր ապրանքների արտադրության միջև։ Հետևաբար երկրի համար կարևոր է ո՛չ միայն համախառն արտադրանքի պլանի կատարումը, այլև նրա կատարումն ըստ արտադրանքի առանձին տեսակների։

Վերջին տարիների տնտեսական գործունեության արդյունքները ցույց տվեցին, որ ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններից շատերը չեն կատարում արտադրանքի գլխավոր տեսակների թողարկման պլանը։ Բավական է նշել, որ միայն Երևան քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունները 1963 թվականին արտադրանքի գլխավոր տեսակների թողարկման պլանը կատարեցին 77,1, իսկ 1964 թվականին՝ 81,5 տոկոսով։ Ձեռնարկությունների մի զգալի մասը, տարվելով համախառն արտադրանքի պլանների կատարմամբ, տեսադաշտից բաց է թողնում բնական արտահայտությամբ արտադրանքի, մանավորապես նրա գլխավոր տեսակների պլանների կատարումը։

Այսպես, օրինակ, Երևանի «Հաղթանակ» կահույքի ֆաբրիկան 1964 թվականի համախառն արտադրանքի պլանը կատարեց 101,7 տոկոսով, բայց չկատարեց արտադրանքի գլխավոր տեսակներից և ոչ մեկինը։ Երևանի արմատուրայի գործարանը զգալի չափով գերակատարեց համախառն արտադրանքի պլանը, բայց արմատուրային իրերի արտադրությունը կատարեց միայն 75,4 տոկոսով։ Կերամիկական իրերի կոմբինատը պլանավորված արտադրանքի 3 կարևորագույն տեսակներից 2-ի պլանը չկատարեց, իսկ համախառն և ապրանքային արտադրանքինը՝ կատարեց ոչ-գլխավոր տեսակների պլանի գերակատարման հաշվին։

Արտադրական ծրագրի թերակատարման պատճառները բազմազան են, սակայն դրանցից երկուսը ամենակարևորն են։ Առաջինը՝ աշխատանքի վատ կազմակերպումն է, իսկ երկրորդը՝ նյութատեխնիկական վատ մատակարարումը։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ շատ ձեռնարկությունների արտադրական պլանների թերակատարումը հիմնականում այդ երկու պատճառների արդյունքն է։ Գաղտնիք չէ, որ շատ տնտեսական շրջաններ և արդյունաբերական ձեռնարկություններ, ելնելով նեղ գերատեսչական շահերից, թերակատարում են կոոպերացված մատակարարումների պլանները և դրանով իսկ ձախողում մյուս տնտեսական շրջանների և արդյունաբերական ձեռնարկությունների՝ պլանների կատարումը։

Արտադրական ծրագրի թերակատարման հիմնական պատճառներից մեկը ռիթմիկ արտադրության կազմակերպման բացակայությունն է։ Դեռևս շատ ձեռնարկություններում արտադրանքը անհավասարաչափ է թողարկվում։ Բավական է նշել, որ միայն Ջերժինսկու անվան հաստոցաշինական գործարանը 1965 թվականի երկրորդ եռամսյակում արտադրած մետաղահատ հաստոցների 13,8 տոկոսը թողարկել է եռամսյակի բոլոր ամիսների առաջին տասնօրյակում, 22,1 տոկոսը՝ երկրորդ, իսկ 64,1 տոկոսը՝ երրորդ տասնօրյակում։ Արտադրական ծրագրի կատարման, հետևապես արդյունաբերության արտադրանքի ավելացման կարևորագույն պայմաններից մեկը հանդիսանում է հիմնական արտադրական ֆոնդերի արդյունավետ օգտագործումը։ Սակայն այս ասպարեզում նույնպես գոյություն ունեն լուրջ թերություններ։ Այլապես ինչով կարելի է բացատրել այն փաստը, որ 1958—1963 թվականներին ռեսպուբլի-



կայի արդյունաբերության հիմնական արտադրական ֆոնդերը աճել են ավելի
արագ (85 տոկոսով), քան դրանցից ստացվող արտադրանքը (63 տոկոսով)։
Առանձին ձեռնարկություններում, ցավոք սրտի, նույնիսկ լավագույն տրա-
դիցիա ունեցող ձեռնարկություններում, հիմնական ֆոնդերի և արտադրանքի
աճման տեմպերի միջև ստեղծվել է խիստ տարբերություն, որն ամբողջապես
արդյունք է հիմնական արտադրական ֆոնդերի անբավարար օգտագործման։
Այսպես, եթե Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանը 1958
թվականին յուրաքանչյուր ռուբլու հիմնական ֆոնդի դիմաց թողարկել է
7 ռ. 34 կ. արտադրանք, ապա 1964 թվականին թողարկել է ընդամենը 5 ռ. 76 կ.
արտադրանք, իսկ Ս. Մ. Կիրովի անվան գործարանը թողարկել է 74 կոպեկի
արտադրանք՝ 1958 թվականի 90 կոպեկի փոխարեն։
Այս բոլորի հետ միաժամանակ պետք է նշել, որ արտադրական ծրագրի
թերակատարման կարևորագույն պատճառներից մեկն էլ պլանավորման ասպարեզում գոյություն ունեցող թերություններն են։ Հաճախ կազմվում են այն-
պարեզում գոյություն ունեցող թերություններն են։ Հաճախ կազմվում են այն-
պիսի պլաններ, որոնք բոլորովին չեն մոբիլիզացնում ձեռնարկությունների
կոլեկտիվներին ներարտադրական ռեզերվների հայտնաբերման և նրանց ար-
դյունավետ օգտագործման գործում։ Պլանային օրգանները շատ դեպքերում
արտադրության և նյութատեխնիկական մատակարարման պլանները կազմում
են ոչ թե ինժեներա-տնտեսագիտական հաշվարկների հիման վրա, այլ մոտա-
վոր ճշտությամբ, հաշվի չառնելով ձեռնարկությունների կոնկրետ արտադրա-
կան պայմանները։ Արդյունքը լինում է այն, որ երբեմն հարկ է լինում մի քա-
նի անգամ վերանայել պլանային առաջադրանքները։
ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի որոշման մեջ սկզբունքային
լուծում ստացան արդյունաբերության կառավարումը բարելավելու և պլանա-
վորումը կատարելագործելու խնդիրները։ Ձեռնարկությունների իրավունքների
և օպերատիվ ինքնուրույնության ընդլայնումը, վերևից սահմանվող պլանա-
յին ցուցանիշների կրճատումը, ստեղծում են ամուր հիմք արտադրության ռե-
զերվները առավել լրիվ օգտագործելու համար։
Արդյունաբերության զուտ արտադրանքի ավելացման կարևորագույն
պայմաններից են թողարկվող արտադրանքի ինքնարժեքի իջեցումը և արտա-
դրության շահութաբերության բարձրացումը։
ՍՄԿԿ Ծրագրում ասված է, որ տնտեսական ղեկավարման բոլոր օղակնե-
րում գլխավոր ուշադրությունը պետք է դարձվի նյութական, աշխատանքային
և ֆինանսական ռեսուրսների, բնական հարստությունների առավել ռացիոնալ
ու արդյունավետ օգտագործման, ավելորդ ծախքերի ու կորուստների վերաց-
ման վրա։ Հետևաբար, անհրաժեշտ է ամեն կերպ ուժեղացնել խնայողության
ռեժիմը և հասնել արտադրանքի ինքնարժեքի իջեցմանն ու արտադրության
շահութաբերության բարձրացմանը։
Սակայն պետք է նշել, որ մի շարք ձեռնարկություններ դեռևս անբավարար
են օգտագործում թողարկվող արտադրանքի ինքնարժեքի իջեցման և շահութա-
բերության բարձրացման հնարավորությունները։ Դեռևս զգալի թվով արդյու-
նաբերական ձեռնարկություններ չեն կատարում թողարկվող արտադրանքի
ինքնարժեքի իջեցման առաջադրանքները։ Այսպես, միայն ժողտնտխորհի սիս-
տեմում 1959 թվականին ինքնարժեքի իջեցման պլանը չկատարեցին 54,
1960-ին՝ 69, 1961-ին՝ 62, 1962-ին՝ 62 և 1963-ին՝ 42 ձեռնարկություններ։
1959—1963 թվականներին, ինքնարժեքի առաջադրանքների թերակատարման

պատճառով, այդ ձեռնարկությունների թույլ տված գերածախսը կազմեց 26963 հազար ռուբլի։

Արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքի իջեցման և արդյունաբերության զուտ արտադրանքի ավելացման հիմնական ուղիներից մեկը նյութական ծախսերի կրճատումն է։ Նյութական ծախսերը արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքի մեջ ամենից մեծ տեսակարար կշիռն ունեն։ Բավական է նշել, որ ժողտնտխորհի արդյունաբերության արտադրության ծախքերի մեջ նրանց տեսակարար կշիռը 1963 թվականին կազմեց 75,5 տոկոս։ Այստեղից հասկանալի է, թե ինչպիսի խոշոր նշանակություն կունենա նյութական ծախսերի կրճատումը ինքնարժեքի իջեցման և զուտ արտադրանքի ավելացման գործում։

Նյութական ծախսերի կրճատումը հիմնականում տեղի է ունենում նյութերի խնայողաբար օգտագործման, թանկարժեք ու դեֆիցիտային նյութերը էժանագին նյութերով փոխարինելու և օգտագործվող նյութերի գների իջեցման միջոցով։ Հաշվարկները ցույց են տալիս, որ 1963 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, նյութական ծախսերի կրճատման շնորհիվ տնտեսված գումարը ՀՍՍՌ արդյունաբերության մեջ կազմեց 40,5 միլիոն ռուբլի։

Նյութական ծախսումների կրճատման գործում ռեսպուբլիկայի արդյունաբերության ձեռք բերած հաջողությունները դեռևս բավականին հեռու են նրա ունեցած հնարավորություններից։ Բավական է նշել, որ արդյունաբերության մեջ դեռևս մեծ չափերի են հասնում հումքի և նյութերի կորուստները՝ մնացուկների և խոտանի ձևով։ Միայն խոտան արտադրանքից առաջացած կորուստները կազմել են 1958 թվականին՝ 697 հազար ռուբլի, 1959-ին՝ 763 հազար, 1960-ին՝ 1065 հազար, 1961-ին՝ 1602 հազար, 1962 թվականին՝ 1358 հազար ռուբլի։

Արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքի իջեցման գործում կարևոր նշանակություն ունի մեծ չափերի հասնող անարտադրողական ծախսերի կրճատումը։ Այսպես, 1958 թվականին այդ ծախսերը կազմել են 2975 հազար ռուբլի, 1959-ին՝ 2291 հազար, 1960-ին՝ 3483 հազար, 1961-ին՝ 4847 հազար, 1962-ին՝ 4242 հազար ռուբլի։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ արտադրանքի ինքնարժեքի իջեցման՝ գոյություն ունեցող հսկայական ռեզերվների գործադրումը հնարավորություն կտար զգալի չափով ավելացնելու արդյունաբերության զուտ արտադրանքի ծավալը։

Ինչպես նշեցինք, արդյունաբերության զուտ արտադրանքի ավելացման կարևոր պայման է նաև ձեռնարկությունների շահութաբերության բարձրացումը։ Տարեցտարի բարձրանում է ռեսպուբլիկայի արդյունաբերության շահութաբերության աստիճանը։ Բավական է նշել, որ 1958—1962 թթ. ստացված շահույթի բացարձակ գումարն ավելացավ 46 միլիոն ռուբլով։ 1962 թվականին ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունների շահութաբերության մակարդակը զգալիորեն բարձրացավ և դա իր դրական ազդեցությունը թողեց արտադրության զարգացման վրա։

Սակայն պետք է նշել, որ ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում շահութաբերության բարձրացման հնարավորություններն օգտագործվում են անբավարար։ Դեռևս զգալի թվով ձեռնարկություններ չեն կատարում շահույթների պլանը։



Ստորև բերված աղյուսակը ցույց է տալիս ՀՍՍՌ ժողտնտխորհի սիստեմում շահույթների պլանը թերակատարող ձեռնարկությունների թիվը և նրանց կողմից չտրված շահույթների գումարը վերջին վեց տարիների ընթացքում։

| | 1958 թ. | 1959 թ. | 1960 թ. | 1961 թ. | 1962 թ. | 1963 թ. |
|---|---|---|---|---|---|---|
| Ձեռնարկությունների ընդհանուր թիվը . | 211 | 220 | 242 | 250 | 297 | 274 |
| Այդ թվում՝ | | | | | | |
| Նախատեսված պլանից քիչ շահույթ ստացած և պլանով նախատեսված վնասից ավելի շատ վնաս ստացած ձեռնարկությունների թիվը . . . . . . . . . . | 61 | 72 | 88 | 94 | 67 | 57 |
| Տոկոսներով՝ ձեռնարկությունների ընդհանուր թվի նկատմամբ . . . . . . | 28,9 | 32,7 | 36,4 | 37,6 | 22,6 | 20,8 |
| Այդ ձեռնարկությունների վնասների գումարը (հազար ռուբլիներով) . . . . . . . | 5009 | 4025 | 6552 | 13603 | 6700 | 7000 |

Ինչպես տեսնում ենք, դեռևս բավականին բարձր է շահույթների պլանը չկատարող ձեռնարկությունների տեսակարար կշիռը և նրանց կողմից չստացված շահույթների բացարձակ գումարը։ Այս հանգամանքը պետք է խիստ անհանգստացնի արդյունաբերական ձեռնարկությունների ղեկավարներին, որոնք հաճախ տարվելով համախառն արտադրանքի պլանի կատարմամբ, տեսադաշտից դուրս են թողնում արտադրական ծրագրի որակական ցուցանիշների կատարման հարցերը։ Այլ կերպ՝ ինչով կարելի է բացատրել այն փաստը, որ եթե ՀՍՍՌ ժողտնտխորհի ձեռնարկություններից 1963 թվականին համախառն արտադրանքի պլանը չկատարեցին 34-ը, ապա աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը չկատարեցին 58, ինքնարժեքի իջեցման պլանը՝ 42, իսկ շահույթների պլանը՝ 57 ձեռնարկություն։

ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի սեպտեմբերյան պլենումը իրավացիորեն ընդգծեց, որ պլանում պահպանվող ցուցանիշների նպատակը պետք է լինի բարձրացնել արտադրության արդյունավետությունը, որի լավագույն ցուցանիշներն են՝ արտադրանքի ինքնարժեքի իջեցումը և արտադրության շահութաբերության բարձրացումը։

Արտադրանքի ինքնարժեքի իջեցման և արտադրության շահութաբերության բարձրացման հիմնական գործոնը աշխատանքի արտադրողականության բարձրացումն է։ Աշխատանքի արտադրողականության պլանը կատարող ձեռնարկությունները կատարում են նաև արտադրանքի ինքնարժեքի իջեցման առաջադրանքը։ Այսպես, օրինակ, Երևանի հիդրոպոմպերի գործարանը 1964 թվականին աշխատանքի արտադրողականության պլանը կատարեց 103,2 տոկոսով, որի շնորհիվ ապրանքային արտադրանքի յուրաքանչյուր ռուբլուն ընկնող արտադրության ծախքերը պլանով նախատեսված 66,48 կոպեկի դիմաց կազմեցին 65,31 կոպեկ։ Դրան հակառակ Երևանի գեղարվեստական ժամացույցների գործարանը 1964 թվականի աշխատանքի արտադրողականության պլանը կատարեց 99,4 տոկոսով, իսկ ապրանքային արտադրանքի մեկ ռուբլուն ընկնող ծախսերի գումարը պլանով նախատեսված 95,98 կոպեկի դիմաց կազմեց 97,52 կոպեկ։

Որոշ ձեռնարկություններում խախտվում է աշխատանքի արտադրողականության և աշխատավարձի աճման տեմպերի ճիշտ հարաբերությունը։ Միջին

աշխատավարձն աճում է ավելի արագ, քան աշխատանքի արտադրողականությունը։ Այսպես, օրինակ, Երևանի գարեջրի գործարանում մեկ աշխատողի միջին աշխատավարձը 1964 թվականին, 1963 թվականի համեմատությամբ, ավելացել է 3,9, իսկ աշխատանքի արտադրողականությունն՝ ընդամենը 0,9 տոկոսով։ Դեռ ավելին, Երևանի ծխախոտի ֆերմենտացիոն ֆաբրիկայում, այդ նույն ժամանակամիջոցում, միջին աշխատավարձն աճել է 7,2 տոկոսով, իսկ աշխատանքի արտադրողականությունն իջել է 0,8 տոկոսով։

Պարտիան և սովետական կառավարությունը տնտեսական կազմակերպություններից պահանջում են ապահովել միջին աշխատավարձի աճի համեմատությամբ աշխատանքի արտադրողականության աճի ավելի բարձր տեմպեր։

Արդյունաբերության կառավարումը բարելավելու, պլանավորումը կատարելագործելու, արդյունաբերական արտադրության տնտեսական խթանումն ուժեղացնելու և ձեռնարկությունների աշխատանքի արդյունքների բարելավման ասպարեզում աշխատողների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու վերաբերյալ պլենումի որոշումների կենսագործումը հնարավորություն կտա մեծ չափերով ավելացնելու արդյունաբերության արտադրանքը, հետևապես և՝ ազգային եկամտի ծավալը։

Փայլուն հեռանկարներ են բացվում Հայաստանի բազմաճյուղ արդյունաբերության առջև առաջիկա հնգամյակում և գլխավոր հեռանկարների ամբողջ ժամանակաշրջանում։

Ինչպես հնգամյակի, այնպես էլ գլխավոր հեռանկարի խնդիրների կատարումը հնարավորություն կտա մեծ չափերով ավելացնելու ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն ու զուտ արտադրանքի, հետևապես՝ հասարակական ամբողջական արդյունքի ու ազգային եկամտի ծավալը։

Յ. ՄԱՀՏԵՍՅԱՆ
Տնտեսական գիտությունների թեկնածու



# ՈՐԱԿ, ՀՈՒՍԱԼԻՈՒԹՅՈՒՆ ԵՎ ԵՐԿԱՐԱԿԵՑՈՒԹՅՈՒՆ

Հասարակության հարաճուն պահանջմունքները բավարարելու համար հարկավոր են նյութական ու հոգևոր բարիքներ. բայց միայն բարիքների առկա քանակն ավելացնելու ճանապարհով հնարավոր չէ հասնել դրան։ Այդ գործում կարևոր նշանակություն ունեն արտադրանքի որակը, հուսալիությունն ու երկարակեցությունը։ Արտադրանքի որակի հարցերը ներկայումս հուզում են սովետական մարդկանց։ Ողջ երկրով մեկ ծավալվել է մասսայական շարժում արդյունաբերական յուրաքանչյուր արտադրանքի գծով առաջիկա երկու-երեք տարում համաշխարհային լավագույն օրինակների մակարդակին հասնելու համար։ ՍՄԿՊ Կենտկոմի սեպտեմբերյան (1965) պլենումում իր զեկուցման մեջ ընկ. Ն. Ա. Կոսիգինը նշում էր. «Ժամանակակից գիտատեխնիկական հեղաշրջումն առաջին պլան է մղում այնպիսի հարցեր, ինչպիսիք են՝ արտադրանքի տեխնիկական մակարդակը, **որակը**, **հուսալիությունը**, օգտագործման արդյունավետությունը» (ընդգծումը մերն է.— Ռ. Ս.)։

**Որակ** ասելով, նեղ առումով, հասկանում ենք ամբողջականությունը արդյունաբերական արտադրանքի այն հատկությունների, որոնք տալիս են նրան որոշակիություն, պայմանավորում պիտանիության աստիճանը (արտադրանքի տեսակը)։

**Հուսալիություն** ասելով հասկանում ենք տվյալ արտադրանքի կամ արուրքի (изделие) անխափան աշխատանքի հավանականությունը՝ նրա օգտագործման ժամանակամիջոցում։

**Երկարակեցություն** ասելով հասկանում ենք արուրքի օգտագործելիությունը՝ սահմանված ժամանակամիջոցում։

Որակը, հուսալիությունն ու երկարակեցությունը միասին կազմում են արուրքի որակը լայն առումով՝ նրա օգտակարությունը, այսինքն՝ սպառողական արժեքը։

Դժվար չէ հասկանալ, որ մեքենայի, սարքի, սարքավորման որակից, հուսալիությունից ու երկարակեցությունից մեծ չափով կախված է նրա աշխատանքի տնտեսական արդյունավետության աստիճանը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում։ Այլ կերպ ասած, այդ արտացոլում է սոցիալիստական տնտեսավարության առաջնակարգ պահանջը՝ առավելագույն արդյունքի հասնել նվազագույն ծախսումների միջոցով։ Պարզելու համար, թե ինչ չափի կորուստներ է ունենում երկրի ժողովրդական տնտեսությունն արտադրանքի ցածրորակության պատճառով, հիշենք, որ մոտավոր հաշվարկումներով երկրի կորուստը 1958 թվականին կազմել է 15—20 միլիարդ ռուբլի, որն ավելի է,

քան Սովետական Միության այդ նույն տարվա պետական բյուջեի եկամուտների մեկ քառորդը (տե՛ս «Коммунист», 1962 թ., № 16, էջ 88)։

Երբ արտադրանքը ցածրորակ է, հուսալիությունն ու երկարակեցությունը անբավարար, միևնույն քանակի նյութերի ու ժամանակի ծախսման դեպքում ցածրորակ արտադրանքը ցածր գին է ունենում, պահանջվում են լրացուցիչ ժամանակ, լրացուցիչ նյութեր ու աշխատանք, իջնում է ձեռնարկությունում աշխատանքի արտադրողականությունը, մեծանում են ցածրորակ մեքենաների նորոգման ծախսերը, պարապուրդները, կապիտալ ներդրումների չափերը, տրանսպորտային ծախքերը, խախտվում է աշխատանքի ռիթմը. այդ ամենի հետևանքը լինում են նյութական ու աշխատանքային ռեսուրսների հսկայական կորուստները, որոնք, վերջին հաշվով, բացասաբար են անդրադառնում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման վրա։

Մինչև վերջին տարիներս որակի հարցերին բավարար ուշադրություն չի նվիրվել։ Այդ, հավանաբար, արդյունք է, ո՛չ միայն այն բանի, որ մեր արտադրության նեղ չափերի հետևանքով արտադրանքը խլացվում էր, իսկ սպառողը մեծ ընտրություն կատարելու հնարավորություն չուներ, այլև նրա, որ մեր տնտեսագիտական հետազոտություններում, իբրև կանոն, չէր դրվում արտադրանքի հասարակական օգտակարության չափի հարցը, ինչպես արդարացիորեն նկատում է պրոֆ. Տ. Տուրեցկին (տե՛ս «Коммунист», 1963 թ., № 13, էջ 86)։

Այժմ տեսնենք, թե ինչպես են որոշվում արտադրանքի հուսալիությունն ու երկարակեցությունը։ Ինչպես ասացինք, հուսալիությունը արտադրանքի (մեքենայի, սարքի, սարքավորման) անխափան աշխատանքի հավանականությունն է՝ դրա օգտագործման ժամանակամիջոցում։ Այստեղ, իհարկե, հաշվի են առնվում շահագործման և տեխնիկական սպասարկման պայմանները։

Հուսալիությունն արտադրանքի որակի կարևորագույն ցուցանիշներից մեկն է։ Ինքնըստինքյան այն չի արտացոլում արտադրանքի տեխնիկական կատարելագործման աստիճանը։ Արտադրանքը կարող է հուսալի լինել, բայց չբավարարել ժամանակակից տեխնիկական պահանջները, չհամապատասխանել տեխնիկայի զարգացման մակարդակին։ Մյուս կողմից՝ արտադրանքի տեխնիկական կատարելագործվածությունը, որը չունի համապատասխան հուսալիություն, պրակտիկ կիրառություն չի գտնի։

Արտադրության տարբեր ճյուղերի լայն ավտոմատացումը հուսալիությունը դարձնում է հիմնական պահանջ հետագա տեխնիկական առաջադիմության համար։ Տարբեր է հուսալիության ցուցանիշի կոնկրետ բովանդակությունը, ինչպես և տարբեր է հուսալիության աստիճանը որոշելու եղանակը։ Այսպես, այն սարքերի ու սարքավորումների համար, որոնց նորոգումը տեղի է ունենում միայն տեխնոլոգիական շղթայից դուրս, հուսալիությունն արտահայտվում է տվյալ սարքի կամ սարքավորման շարքից դուրս չգալու ժամանակամիջոցի հավանականությամբ։ Այս կերպ հուսալիությունը կարելի է հաշվել ռադիոլամպերի, էլեկտրալամպերի, տարբեր տեսակի դիմադրությունների, ունակությունների համար։

Ավտոմատ ու հոսքային գծերում եղած սարքի կամ սարքավորման հուսալիությունը չի սահմանափակվում միայն սարքի, սարքավորման շարքից դուրս չգալու հավանականությամբ, այլև այն ժամանակի տևողությամբ, երբ կանգ է առնում գիծը։



Հուսալիությունը որոշվում է կա՛մ ծառայության լրիվ ժամկետի, կա՛մ որոշակի ժամանակի համար։ Այսպես, օրինակ, ռադիո և էլեկտրասարքավորայի հուսալիությունը հաշվում են ծառայության լրիվ ժամկետի համար։ Եթե փորձարկում ենք հազար նույնատիպ ռադիոլամպ, որոնց ծառայության ժամկետը հավասար է ութ հարյուր ժամի և պարզվում է, որ ութ հարյուր ժամ և ավելի աշխատել են հազար ռադիոլամպերից վեց հարյուրը, ապա ռադիոլամպերի հուսալիությունը հավասար կլինի 0,6-ի.

$$\text{Հ}_1 = \frac{600}{1000} = 0,6$$

Ծառայության լրիվ ժամկետի հուսալիությունը որոշվում է նաև այսպես։ Մեր օրինակում հազար ռադիոլամպերը փորձարկման ընթացքում ցուցաբերում են ծառայության տարբեր ժամկետներ։ Ենթադրենք փորձարկվող ռադիոլամպերից 20-ը աշխատել են 200-ական ժամ, 50-ը՝ 300, 80-ը՝ 400, 100-ը՝ 500, 150-ը՝ 700, 400-ը՝ 800, 150-ը՝ 900 և 50-ը՝ 1000-ական ժամ։

Ռադիոլամպի աշխատանքի միջին տևողությունը հավասար կլինի

$$\frac{200\text{ժ}\times20+300\text{ժ}\times50+400\text{ժ}\times80+500\text{ժ}\times100+700\text{ժ}\times150+800\text{ժ}\times400+900\text{ժ}\times150+1000\text{ժ}\times50}{20+50+80+100+150+400+150+50} = 711 \text{ ժամ։}$$

Հուսալիությունը որոշելու համար ռադիոլամպի աշխատանքի միջին տևողությունը կբաժանենք նրա ծառայության լրիվ ժամկետի վրա.

$$\text{Հ}_2 = \frac{711}{800} = 0,88$$

Պետք է նկատել, որ հուսալիությունը հաշվելու երկրորդ ձևը ավելի ճիշտ պատկեր է տալիս, քան առաջինը, այդ պատճառով էլ մեծ մասամբ հուսալիությունը հաշվում են երկրորդ ձևով։

Որոշակի ժամանակի համար հուսալիությունը որոշվում է այսպես. ենթադրենք պոմպի պլանային աշխատանքի տարեկան ֆոնդը հավասար է 2000 ժամի, իսկ պոմպի փաստացի աշխատանքը կազմում է 1200 ժամ։ Այս դեպքում որոշակի ժամանակի, մեր օրինակում՝ մեկ տարվա համար պոմպի հուսալիությունը հավասար կլինի 0,6.

$$\text{Հ}_3 = \frac{1200}{2000} = 0,6$$

Ընդհատումները կկազմեն 2000 ժ—1200 ժ—800 ժամ. այստեղ հաշվի են առնված միայն այն ընդհատումները, որոնք կախված են պոմպից։

Արդյունաբերական ձեռնարկության համար հուսալիությունն ունի ավելի շատ տնտեսական նշանակություն, քան տեխնիկական։ Այդ պարզենք օրինակով։ Ընդունենք, որ պոմպի հուսալիությունը հավասար է 0,6-ի, արտադրության պրոցեսի անընդհատությունն ապահովելու համար մենք կարող ենք տվյալ պոմպի կողքին դնել երկրորդ նույնատիպ մի պոմպ, որն ավտոմատ կերպով գործարկվի՝ առաջին պոմպը շարքից դուրս գալու դեպքում. պոմպի աշխատանքի հուսալիությունը կբարձրանա և, ինչպես ցույց են տալիս հաշվումները, կկազմի 0,85, իսկ եթե դնենք երրորդ պոմպը, ապա պոմպի աշխատանքի հուսալիությունը կհասնի մինչև 0,94-ի։

Տեխնիկական տեսակետից հասկանալի է, որ կարելի է պոմպերի քանակն ավելացնել և հասնել այն բանին, որ համարյա վերացվեն ընդհատումները։ Սակայն, կապիտալ ներդրումների տեսակետից տնտեսապես դա ձեռնտու չէ։ Ամեն մի կոնկրետ դեպքում պետք է կատարել և՛ տեխնիկական, և՛ տնտեսական հաշվումներ, կիրառվող միջոցառման տնտեսական արդյունավետությունը որոշելու համար։

Հուսալիության ցուցանիշից պետք է տարբերել երկարակեցության ցուցանիշը։ Եթե հուսալիությունը որոշվում է տվյալ ծառայության ժամկետում աշխատանքի անխափանության հավանականությամբ, ապա երկարակեցությունը բնութագրվում է տվյալ սարքավորման կամ մեքենայի ծառայության ժամանակի տևողությամբ։

Տեխնիկայի երկարակեցությունը հիմնականում որոշվում է նախագծային և կոնստրուկտորական կազմակերպություններում։ Սարքավորումների և մեքենաների ծառայության միջին ժամկետները հաստատուն չեն. տեխնիկայի առաջադիմության շնորհիվ դրանք փոփոխվում՝ կրճատվում են։ Տեխնիկական նորամուծությունները, նոր հայտնագործությունները կարող են ստեղծել այնպիսի նոր սարքավորումներ ու մեքենաներ, որոնք փոխարինեն դեռ երեկվա արդյունավետ մեքենաներին և սարքավորումներին։

Երկարակեցությունը բնութագրող ցուցանիշներն են՝ ֆիզիկական և բարոյական մաշվածքը։

Ֆիզիկական մաշվածք ասելով հասկանում ենք սարքավորման կամ մեքենայի սկզբնական վիճակի շահագործական հատկությունների կորուստը՝ պայմանավորված մեխանիկական, քիմիական, ջերմային, էլեկտրական և այլ գործոններով։ Այսպես, մեքենայի մասերի տեղական մակերևութային լարումները, որոնք առաջանում են շփման և սահման ժամանակ, առաջ են բերում մաշվածք։ Մեքենայի աշխատանքի ժամանակ նրա մասերի մեջ գործում են ծավալային լարումներ, որոնք առաջացնում են մետաղի սողացողություն, կամ մետաղի հոգնածություն։

Մեքենաների երկարակեցությունն իջեցնում են մետաղների կոռոզիան, ջերմային ու էլեկտրական երևույթները։ Ինչպե՞ս են ազդում այս գործոնները մեքենայի երկարակեցության վրա. քննենք մաշվածքի ազդեցությունը, որը կարելի է դիտել գործող մեքենայի վրա։ Մաշվածքի հետևանքով մեքենան կորցնում է իր ճշգրտության աստիճանը. իջնում է մեքենայի օգտակար գործողության գործակիցը, ուժգնանում աղմուկը, փոքրանում մեքենայի մասերի դիմացկունությունը, մեքենայի առանձին հանգույցներ ու մասեր կորցնում են աշխատունակությունը։

Ահա թե ինչում է, մեծ մասամբ, դրսևորվում մեքենայի մասերի ու հանգույցների ֆիզիկական մաշվածությունը.

ա) նվազում է մեքենայի հզորությունը.

բ) մեծանում է շահագործական նյութերի ծախսումը (վառելանյութ, քսայուղ) կամ սպառելի էներգիա (էլեկտրաէներգիա, շոգի, ջուր և այլն).

գ) պակասում է մեքենայի շահագործման հուսալիությունը և մեքենայի անվտանգ աշխատանքը.

դ) ընկնում է մեքենայի արտադրողականությունը և

ե) իջնում է արտադրանքի որակը։

Տնտեսական տեսակետից ֆիզիկական մաշվածությունն արտահայտվում է



տվյալ մեքենայի, հանգույցի արժեքի նվազմամբ։ Ֆիզիկական մաշվածության և մեքենայի արժեքի նվազման միջև ուղղակի կապ կա. որքան բարձր է ֆիզիկական մաշվածության աստիճանը, այնքան ավելի մեծ չափով է նվազում մեքենայի կամ հանգույցի արժեքը։

Մեքենայի ֆիզիկական մաշվածության աստիճանը ճիշտ որոշելը կարևոր և սկզբունքային նշանակություն ունի այնպիսի պրոբլեմի համար, ինչպիսին է մեքենաների և հանգույցների նորոգման ու մոդեռնացման տնտեսական արդյունավետությունը։ Մեծ նշանակություն ունի նաև մեքենայի արժեքի որոշումը ֆիզիկական մաշվածության որևէ կոնկրետ ժամանակաշրջանում, որն անհրաժեշտ է հիմնական ֆոնդերի վերագնահատման ժամանակ։

Ֆիզիկական մաշվածությունը որոշվում է հիմնականում երկու մեթոդով.

ա) մեքենայի կամ հանգույցի ֆիզիկական մաշվածքը ըստ նրա տեխնիկական փաստացի վիճակի՝ արտահայտված տոկոսներով. այս բավականին աշխատատար պրոցես է, որով զբաղվում է մասնագետներից կազմված հանձնաժողովը.

բ) մեքենայի ֆիզիկական մաշվածքը ըստ տվյալ մեքենայի ծառայության փաստացի ժամկետի կամ մեքենայի կատարված աշխատանքի ծավալի։ Մեքենայի ծառայության փաստացի ժամկետի և նորմատիվային ժամկետի հարաբերությունն արտահայտված տոկոսներով՝ կդրսևորի ֆիզիկական մաշվածքը։ Այս մեթոդն ունի նաև թերություն. հաշվի չի առնում մինչև այդ կատարված նորոգումները։ Բոլոր դեպքերում մեքենաների ֆիզիկական մաշվածքը կապված է նրանց արժեքի նվազման հետ, և մաշվածքի աստիճանը որոշելիս հաշվի պետք է առնել ո՛չ միայն մեքենայի տեխնիկական վիճակը, ծառայության ժամկետը, այլև նորոգումները։

Տեխնիկայի բարոյական մաշվածքը օրինաչափ երևույթ է, և պայմանավորված է տեխնիկական առաջադիմությամբ։

Մարքսը մատնանշում է, որ «մեքենան բացի նյութական մաշվածքից, ենթարկվում է նաև, այսպես ասած, բարոյական մաշվածքի։ Նա կորցնում է փոխանակային արժեքն այն չափով, որ չափով նույն կոնստրուկցիան ունեցող մեքենաները սկսում են ավելի էժան վերարտադրվել կամ ավելի լավ մեքենաները մրցման մեջ են մտնում նրա հետ։ Երկու դեպքում էլ մեքենայի արժեքը, որքան էլ նա դեռ նոր ու կենսունակ լինի, այլևս չի որոշվում նրա մեջ փաստորեն առարկայացած աշխատաժամանակով, այլ նրա սեփական վերարտադրության համար կամ ավելի լավ մեքենայի վերարտադրության համար այժմ անհրաժեշտ ժամանակով։ Ուստի այդ մեքենան ավելի կամ պակաս չափով կորցնում է իր արժեքը» (Կապիտալ, հ. I, 1954 թ., էջ 424)։

Այստեղից հետևում է, որ տեխնիկայի արժեքի կորուստը կամ նրա բարոյական մաշվածքը տեղի է ունենում հասարակականորեն անհրաժեշտ աշխատաժամանակի նվազեցմամբ, որը հարկավոր է այդ տեխնիկայի վերարտադրության համար։

Պետք է տարբերել երկու տեսակի բարոյական մաշվածք։ Աշխատանքի արտադրողականության աճի պայմաններում նույն մեքենայի արժեքը նվազում է՝ համեմատած գործող մեքենայի հետ։ Այս բարոյական մաշվածքի առաջին ձևն է, որի մեծությունը կախված է նոր մեքենայի արժեքից։

Բարոյական մաշվածության երկրորդ ձևը բնութագրվում է նոր մեքենաների ստեղծմամբ, որոնք ավելի արտադրողական և խնայողական են, քան աշ-

խատող մեքենաները։ Տեխնիկապես հնացած մեքենաները պետք է փոխարինվեն նոր՝ առավել բարձր ցուցանիշներ ունեցող մեքենաներով, թեկուզ և դրանք դեռևս աշխատանքի պիտանի են։ Հին մեքենաների շահագործումը ավելի արտադրողական մեքենայի պայմաններում դառնում է տնտեսապես ոչ ձեռնտու։ Ավելի արտադրողական մեքենայի օգտագործմամբ ավելի մեծ աշխատանք է տնտեսվում, որն առարկայացած է հենց իր՝ մեքենայի մեջ. տնտեսվում է նաև շահագործման ժամանակ օգտագործվող կենդանի աշխատանքը։

Մեքենաների կամ սարքավորման ծառայության ժամկետի կրճատումը մեծ մասամբ տեղի է ունենում բարոյական մաշվածքի 2-րդ ձևի հետևանքով։

Մեքենաների ու սարքավորումների երկարակեցությունն անմիջականորեն պայմանավորված է տեխնիկական, տնտեսական, իսկ մի շարք դեպքերում էլ բնական գործոնների ազդեցությամբ։ Կարևոր տեխնիկական գործոններն են՝ մեքենայի կամ սարքավորման կոնստրուկցիան, հանգույցները, մասերը, ագրեգատները, այդ բոլոր կոնստրուկտիվ էլեմենտների պատրաստման, ինչպես նաև մեքենայի հավաքման որակը, շահագործման կուլտուրան և այլն։

Տնտեսական կարևոր գործոններն են՝ մեքենայի արժեքը, նորը ձեռք բերելու հնարավորությունը, նորոգման և մոդեռնացման հետ կապված ծախսերը։

Բնական գործոններից են, օրինակ, կլիմայական պայմանները (ճանապարհային և գյուղատնտեսական մեքենաների համար), երկրաբանական առանձնահատկությունները (լեռնային սարքավորման համար) և այլն։ Հուսալիությունն ու երկարակեցությունը կապված են իրար հետ։ Այն գործոնները, որոնք մեծացնում են հուսալիությունը, հաճախ հանդիսանում են նաև երկարակեցությունը մեծացնող գործոններ։ Բայց այդպես չի լինում միշտ։ Մի շարք դեպքերում երկարակեցության մեծացումը հանգեցնում է հուսալիության իջեցման և, ընդհակառակը, հուսալիությունը ձեռք է բերվում երկարակեցության իջեցումից։ Այս ցուցանիշները կարող են լինել միմյանցից անկախ։ Ենթադրենք, որևէ տիպի ռադիոլամպ աշխատում է 200 ժամ՝ 0,7 հուսալիությամբ։ Լամպի կոնստրուկցիայի կատարելագործման շնորհիվ նրա ծառայության ժամկետը մեծանում է, հասնելով 400 ժամի, բայց հուսալիությունը կարող է մնալ նույն մակարդակին կամ նույնիսկ նվազել։

Հուսալիությունն ու երկարակեցությունը չափվում են տարբեր միավորներով։ Հուսալիությունը հավանական մեծություն է, որն արտահայտվում է ոչ բացասական թվով, 0-ից մինչև մեկի սահմաններում։ Երկարակեցությունը չափվում է աշխատանքի ծառայության ժամերի թվով կամ բացարձակ միավորների ուրիշ թվով (օրինակ, ավտոդողերի համար՝ անցած կիլոմետրերի թվով)։

Մեր զարգացման արդի էտապում առաջին պլանի վրա է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման և անցյալի համեմատությամբ հսկայական չափերի հասնող կապիտալ ներդրումների արդյունավետության բարձրացման խնդիրը. այդ իսկ պատճառով խոշոր քաղաքական-տնտեսական նշանակություն ունի արտադրանքի որակի բարձրացումը, որն ընդգրկում է ո՛չ միայն արտադրանքի որոշակիությունը, այլև նրա հուսալիությունն ու երկարակեցությունը։

Ռ. ՍԱՐԳՍՅԱՆ



## ԱԶԱՏՈՒԹՅԱՆ ԱՆԶՆՈՒՐԱՑ ԶԻՆՎՈՐԸ

(Մ. Նալբանդյանի մահվան 100-ամյակի առթիվ)

Անցյալ դարի ռուս ռևոլյուցիոն դեմոկրատների հավատարիմ զինակից ու համախոհ, Գերցենի և Օգարյովի բարեկամ Միքայել Նալբանդյանը 50-ական թվականների վերջերին ու 60-ականների սկզբներին Ռուսաստանում ստեղծված իրադրության պայմաններում վառ ու ցայտուն կերպով արտահայտեց հայ ժողովրդի խոհերն ու տրամադրությունները։ Նա փոխ առավ «Колокол»-ի էջերից արվող «կացնով գործելու» կոչը, որը դարձավ ռևոլյուցիոն տրամադրություն ունեցող հայ երիտասարդության մարտական նշանաբանը։ Հայաստանի հասարակական մտքի ու գրականության պատմության մեջ մի նոր էտապ նշանավորեց նրա արտակարգ բազմաբեղուն գործունեությունը. Նա բանաստեղծ էր ու քաղաքացի, բոցաշունչ հրապարակախոս, փայլուն քննադատ և փիլիսոփա մատերիալիստ։ Մ. Նալբանդյանը շարունակեց ու զարգացրեց հայ դեմոկրատական գրականության առաջադիմական տրադիցիաները։ Աբովյանից անմիջապես հետո նա դրեց հայ ռեալիստական գրականության և մատերիալիստական էսթետիկայի հիմքերը։

Մ. Նալբանդյանի հայացքները գրականության և արվեստի դերի ու նշա-

*նակության մասին բխում են ռեալիզմի ու ժողովրդայնության, արվեստի ու իրականության վերաբերյալ մատերիալիստական էսթետիկայի սկզբունքներից:*

*Գրականությունն ու արվեստը համարելով ժողովրդի հոգևոր դաստիարակության հզոր զենք, Մ. Նալբանդյանն իր ամբողջ ստեղծագործությամբ ու հասարակական-քաղաքական գործունեությամբ ձգտում էր հայ գրականությունը բարձրացնել դարի պահանջների մակարդակին, ավելի զարգացած ժողովուրդների դեմոկրատական գրականության և, ամենից առաջ՝ ռուս գրականության մակարդակին, որն այն ժամանակ, ինչպես ասում էր Գերցենը, միակ ամբիոնն էր, որտեղից ժողովուրդը լսում էր «իր վրդովմունքի ու իր խղճի ճիչը»:*

*Մ. Նալբանդյանը չափազանց կարևոր էր համարում հայ գրականությունը ժողովրդին մոտեցնելու խնդիրը, ուստի և դեռ իր վաղ շրջանի աշխատություններից մեկում, որը կրում էր «Յաղագս հայկական մատենագրութեան» խորագիրը, առաջ քաշեց ժողովրդի կյանքն արտացոլող ռեալիստական արվեստի իր իդեալը: Այդ աշխատության հիմնական դրույթները նա այնուհետև զարգացրեց «Հյուսիսափայլ»-ում տպագրած ու Պետրոպավլովսկի ամրոցում գրած իր հոդվածներում:*

*«Հիշատակարան»-ում Նալբանդյանն այսպես է ձևակերպել ռեալիստական գրականության վերաբերյալ իր հայացքը.*

> «Ճշմարիտ և ստույգ մատենագրությունը մի հայելի է, որի մեջ ցոլանում է ազգի կյանքը: Եվ որպես հարգի է այն հայելին, որ ճիշտ ցոլացնում էր յուր առջև դրած առարկայի պատկերը, նույն չափով մի մատենագրություն, որի մեջ ստուգապես երևում էր ազգի կյանքը և պատկերը, սորա հակառակ, անպիտան է՝ եթե հայելին ուղիղ չէ և չէ ցոլացնում ստուգապես այն բանի պատկերը, որ ցույց էիր տվել, այսպես և մատենագրությունը» (**Մ. Նալբանդյան.** *Երկերի լիակատար ժողովածու, հ. 1, էջ 366, Երևան, 1945*):

*Խաչատուր Աբովյանի «Վերք Հայաստանի» վեպի առաջին հրատարակության վերաբերյալ իր դիտողություններում Մ. Նալբանդյանը շեշտում էր, որ գրականության առարկան պետք է լինի ազգային կյանքը, որ գրականությունը ժողովրդական է այն ժամանակ, երբ պարունակում է ժողովրդին պատկանող ու նրան հուզող բաներ, իսկ գրողն էլ ժողովրդական է այն դեպքում, երբ գրում է ժողովրդի, նրա մտավոր ու բարոյական կյանքի հետ առնչված հարցերի մասին: Ահա այդպիսի գրող էր նա համարում Խաչատուր Աբովյանին, իսկ նրա «Վերք Հայաստանի» վեպը՝ գրականության ժողովրդայնության օրինակ:*

*Բնորոշ է, որ գրականության ժողովրդայնության էության ըմբռնման հարցում Մ. Նալբանդյանը շատ մոտ էր կանգնած Դոբրոլյուբովին: Տարաս Շևչենկոյի ստեղծագործությանը նվիրված հոդվածում ռուս մեծ քննադատը գրում էր.*

> «Նա ամբողջապես ժողովրդական բանաստեղծ է... Նա դուրս է եկել ժողովրդի ծոցից, ապրել է ժողովրդի հետ և ամուր ու սերտորեն կապված է եղել նրա հետ ոչ միայն մըտքով, այլև կյանքի հանգամանքներով»:

*Ինչպես Դոբրոլյուբովի, այնպես էլ Նալբանդյանի համար գրականության ժողովրդայնության գաղափարը անխզելիորեն կապված է այն իդեալի, այն դրական հերոսի հետ, որը մարմնավորում է հարազատ ժողովրդի բոլոր լավագույն իղձերը: Ահա դրանց օրինակով պետք է դաստիարակել հայ երիտասարդ սերնդին: Ինչպիսի՜ հիացմունքով է Նալբանդյանը գրել «Վերք Հայաս-*



*տանի» վեպի հերոս Աղասու մասին, շեշտելով նրա հայրենասիրությունը, անձնուրաց պայքարը օտար հարստահարիչների դեմ:*

*Նույնպիսի հիացական տողեր է նա նվիրել նաև Պերճ Պռոշյանի «Սոս և Վարդիթեր» վեպի հերոս Արշամին, վերջինիս համարելով հայ ռևոլյուցիոն գյուղացիության նոր ուղղության ներկայացուցիչ: Նալբանդյանին դյութել են նաև Ջուզեպե Վերդիի «Տրուբադուր» օպերայի հերոսական կերպարները: Ինքը՝ Նալբանդյանը ևս իր «Իտալացի աղջկա երգը» հայտնի բանաստեղծության մեջ կերտել է հայրենիքի անկախության համար պայքարող երիտասարդ իտալուհու հմայիչ կերպարը:*

*Միքայել Նալբանդյանը բազմիցս ընդգծել է գրականության և արվեստի հասարակական ու վերափոխիչ դերը, դրանք դասելով իսկական գիտության շարքը: Օբյեկտիվ իրականությունը համարելով գիտական և գեղարվեստական իմացության առարկա, Նալբանդյանը, միաժամանակ, նշում էր, որ արվեստը գիտությունից տարբերվում է միայն կյանքի արտացոլման իր եղանակով: Նա ևս, ինչպես Բելինսկին և Չերնիշևսկին, մերժում էր «մաքուր արվեստի» իդեալիստական տեսությունը: Առանձնապես ընդգծելով թատերական արվեստի հասարակական դերը՝ իր «Ազգային թատրոն Պոլսի մեջ» (1861) հոդվածում նա գրում էր.*

> «Թատրոնի բեմը ստոր չէ ուսումնական ամբիոնից. թատրոնի բեմն է այն աթոռը, ուր նստում է փիլիսոփայությունը և մարմնավորելով բանը կենդանի, գործնական գաղափարներով և օրինակներով, ապատում է հասարակությունը այդ գաղափարքը, երևակայությամբ միայն, ըմբռնելու աշխատությենից. թատրոնի բեմն է այն բարոյական ահեղ դատաստանը, ուր արդարությունը և հանցանքը, առանց աչառության ստանում են յուրյանց արժանի հատուցումը... Նա մի նոր տեսակ դպրոց է, ուր ուսանում են ամեն հասակի մարդիկ... Նա չէ միայն ակնվացնում հասարակության գաղափարը, այլ և ցույց է տալիս առաքինության վսեմությունը, մոլության վատթարությունը. առաջինին խրախուսելով և երկրորդից պգուշացնելով...» (հ. 2, էջ 308):

*Որքա՜ն համահնչուն են այս տողերը Գոգոլի այն հայտնի խոսքերի հետ, թե թատրոնը՝*

> «...այնպիսի ամբիոն է, որտեղից միանգամից կենդանի դաս է տրվում մի ամբողջ բազմության, որտեղ լույսերի հանդիսավոր շողերի, երաժշտության հնչյունների, ծիծաղի միահամուռ պոռթկումների ներքո ցույց է տրվում ծանոթ, թաքնվող արատը և, ընդհանուր կարեկցանքի ներքին ձայնի հետ մեկտեղ ի ցույց է դրվում ծանոթ, ամոթխածորեն թաքնըվող վսեմ զգացմունքը...»:

*Հետևապես, արվեստի էական ֆունկցիան նրա գաղափարական-գեղարվեստական ներգործությունն է: Գրականության ու արվեստի ուղղությունից է կախված նրանց ներգործության ուղղությունը: Ահա թե ինչու Մ. Նալբանդյանը, լինելով ռևոլյուցիոներ-դեմոկրատ, պայքարում էր հանուն գրականության ու արվեստի գործերի հասարակական հնչեղության, հանուն դրանց բարձր գաղափարայնության և գեղարվեստական ձևի կատարելության: Ռեալիստական արվեստի համար նրա մղած պայքարը հասարակության վերափոխման՝ նրա ռևոլյուցիոն-դեմոկրատական ծրագրի կարևոր բաղադրիչ մասն էր: Այդ պայքարում նա, ամենից առաջ, հենվում էր հայ ժողովրդի ազատագրական ակնկալությունների, նրա մշակույթի, ինչպես նաև ռուս մեծ ժողովրդի ու Արևմտյան Եվրոպայի ժողովուրդների գրականության ու արվեստի նվաճումների վրա: Նա հիացմունքով է գրել Աբովյանի ու Թաղիադյանի, Ալիշանի ու Պռոշյանի, Պուշկինի ու Լերմոնտովի, Գոգոլի ու Գերցենի, Դանթեի ու Շեքսպ-*

պիրի, Վոլտերի ու Ռուսսոյի, Բայրոնի ու Գյոթեի, Շիլլերի ու Հայնեի, Հյուգոյի ու Բերանժեի, Բեթհովենի ու Ռաֆայելի մասին։

Միևնույն ժամանակ Նալբանդյանը դեմոկրատ հրապարակախոսի կրքոտությամբ մերժում էր այն ամենը, ինչ խանգարում էր ժողովրդի գաղափարական-գեղագիտական ճիշտ դաստիարակությանը։ Այսպես, «Հյուսիսափայլ»-ի էջերում նա խիստ քննադատեց արքեպիսկոպոս Խորեն Գալֆայանի՝ ֆրանսիացի բանաստեղծ Լամարթինի գործերից կատարած թարգմանությունները, իսկ Պետրոպավլովսկի ամրոցում գրած իր «Աղցմիք»-ում ծաղրի ենթարկեց հենց իր՝ Խ. Գալֆայանի կեղծ-բարեպաշտական բանաստեղծությունները «իդեալական», «աստվածային» սիրո մասին։

Մ. Նալբանդյանը գտնում էր, որ օտար գրողների գործերը հայերեն թարգմանելիս պետք է խիստ ընտրություն կատարել։ Իր «Երկու խոսք, թե ինչպես է մեր հայացքը մի օրագրի պաշտոնակատարության մասին» (1864) հոդվածում նա գրում էր.

«Մենք հավատացած ենք, որ ընտիր մի գրվածք, ազատ հայեցվածներով, ընտիր ճաշակով, գեղեցիկ բարոյականությամբ, ինչ լեզվից և թարգմանված լինի, այնուամենայնիվ մեծ և մեծ խորհուրդ ունի նորոգելու և կենդանացնելու թե՛ ճաշակը, թե՛ քաղաքային կամ ընկերական հարակցությունքը մի ազգի... Ամեն մի ընտիր վաստակ, ինչ լեզվով ևս լինի գրված, այնուամենայնիվ միշտ օգտակար է բոլոր մարդկության, մանավանդ, որ եթե նեղսիրտ ազգական հասկացողությունքը հանդես չունենան այդպիսիների մեջ, մանավանդ եթե աշխատության խորհուրդը է գեղեցիկ մի պատմություն, կամ կարդացողների ճաշակը և հասկացողությունը ազնվացնել» (հատ. 3, էջ 402—403)։

Նալբանդյանը պահանջում էր դեմոկրատացնել գրականությունը, այն ավելի մատչելի դարձնել ժողովրդի լայն մասսաներին։ Գրականությունը համարելով ժողովրդի լուսավորության կարևոր գործոն, Նալբանդյանը հետևողականորեն պայքարում էր հանուն նոր գրական լեզվի՝ աշխարհաբարի հաղթանակի։

Այդ պայքարն սկսել էին Խ. Աբովյանը և Ստ. Նազարյանը դեռ 30-ական, 40-ական թվականներին։ Բայց նրանց ուժեղ դիմադրություն էին ցույց տալիս կղերա-ֆեոդալական շրջանները։ Նոր գրական լեզվի, հետևապես և նոր գրականության համար մղվող պայքարն ավելի սրվեց, երբ պայքարի ասպարեզ մտավ Մ. Նալբանդյանը։ Նա գտնում էր, որ գրաբարը դարձել է ուսյալ մարդկանց մի ընտրյալ շրջանի և անգրագետ ու տգետ մասսաներին պատնեշող արգելափակոց։

Անսահման զայրույթով է նա խոսում նրանց դեմ, ովքեր արհամարհանքով «ռամկական» էին անվանում աշխարհաբարը և պնդում, թե հայ ժողովուրդն իբր «սեր չունի» դեպի գիրն ու գրականությունը։ Նալբանդյանն ասում էր, որ ժողովրդին ամենևին էլ խորթ չէ լուսավորությունը, բայց հարկավոր է լուսավորությունն սկսել տարրական գրագիտությունից և այն էլ՝ ժողովրդի կենդանի խոսակցական լեզվով։ Ահա թե ինչու մեծ գոհունակությամբ նա նշեց Ստ. Նազարյանի «Առաջին հոգեղեն կերակուր» քրեստոմատիայի (1853) և «Հանդես նոր հայախոսության» (1858) աշխատության առաջին հատորի լույսընծայումը.

«Խաբված չենք,— գրում էր Մ. Նալբանդյանը,— որ ազգը սիրով կընդունե այսպիսի մի գիրք, որ ընծայել է հեղինակը յուր ազգի կավակների դաստիարակությանը, որ և պիտո է շատ ձեռնտու լիներ դորան։ Մենք մեր կողմից... անպատմելի ուրախ ենք, որ ժողովրդական լեզուն ձեռք ու ոտք է ստացել և մեր նոր մատենագրության աղքատիկ գանձարանի մեջ երևում է մտավորական և կենսական շարժողություն»։



Մ. Նալբանդյանը մեծ կարևորություն էր տալիս նաև հրապարակախոսությանն ու գրաքննադատությանը։ Ստ. Նազարյանի հետ միասին նա համառորեն ձգտում էր ստեղծել այնպիսի մի ամսագիր, որի էջերից հնչեր ճշմարտության ձայնը, ժողովրդի ձայնը։

Բնութագրելով «Հյուսիսափայլ»-ի հանդես գալու իրապայմանները՝ Մ. Նալբանդյանն իր առաջին հոդվածներից մեկում նշում էր, որ հայ լրագրերի ու ամսագրերի մեծ մասը, բնավ հաշվի չառնելով գրականության խնդիրները, իր էջերը լցնում է ժողովրդի ու ժամանակի կենսական պահանջների հետ ոչ մի առնչություն չունեցող նյութերով։ Նա գրում էր.

««Հյուսիսափայլը» արդեն բարձրացուցել է, և դեռ պիտի բարձրացնե խնդիրներ, առանց նայելու շրջակայքում գտնված առօրյա արգելառիթներին. խնդիրներ, որոնց խորհուրդը մեծ էր մեր ազգի հառաջադիմության համար... Ներկա ժամանակումս, մանավանդ այս դարու վերջին կեսի հատկական բնավորությունն է բարձրացնել այդպիսի խնդիրներ մարդկեղեն աշխարհի սահմանում և վճռելով նորանց, բարվոքել մարդկության դրությունը աշխարհի երեսին...»։

Այնուհետև, նկատի ունենալով ռուս առաջադիմական մամուլը, առաջին հերթին «Современник»-ը և «Колокол»-ը, հրապարակախոսն իրավացիորեն նշում էր, որ «այս ճանապարհով հառաջանում են ավելի մեծ հաղթությունք, քան թե պատերազմի դաշտումը...»։

Մ. Նալբանդյանը հիանալի գիտեր և գնահատում էր մարտաշունչ հրապարակախոսության ուժն ու նշանակությունը հասարակական կյանքի արատները մերկացնելու գործում։ Ծաղրելով «Մեղու Հայաստանի» թերթի կեղծ-հայրենասերներին, որոնք վախենում էին ազգի «թերությունները» ցույց տալուց, Նալբանդյանն ասում էր, որ հենց ազգի կարիքները տիրաբար պահանջում են անաչառ դատավճիռ կարդալ այն ամենին, ինչ խոչընդոտում է հայ ժողովրդի առաջադիմությանը։ Նա կոչ էր անում չվախենալ հրապարակայնությունից, վճռականորեն ու համարձակորեն ներխուժել հասարակական կյանքի ոլորտը և ակտիվ ներգործել նրա զարգացման ընթացքի վրա։

Կյանքի երևույթները վերլուծելով ու քննարկելով դեմոկրատ-ռևոլյուցիոների հայեցակետից՝ Մ. Նալբանդյանը հսկայական նշանակություն էր տալիս գրաքննադատությանը։ Գրաքննադատը, ընդգծում էր նա, պարտավոր է ընթերցողին զերծ պահել մոլորություններից, վատ ճաշակից, ուղղություն տալ նրան արվեստի գործերը ճիշտ հասկանալու համար։

«Հասարակությունը,— գրում էր Մ. Նալբանդյանը,— շատ անգամ ծևերի քամակից վազելով, հագուստ և կարդարանք որոնելով, յուր հոգու բոլոր կարողությունքը լարելով, որ գտանե և տեսանե հրաշալի, ազդու, և այլ սոցա նման ուղեղ գրգռող բաներ, սառնասիրտ է մնում դեպի գործի գլխավոր արժանավորությունը, որ ճշմարտապես ասելով, շատ անգամ հայտնվում է մարդկեղեն աշխարհի մեջ պարկեշտ կերպարանքով և այս պատճառով ևս չէ ընկնում ընթերցողների ուշադրության տակ։ Այսպիսի դիպվածներում է ահա կրիտիկայի հանդեսը, այստեղ երևում է նա յուր մեծ վայելչության մեջ. նա ցույց է տալիս բացերև կերպով այն արժանավորությունքը պարկեշտ հագուստի տակ, որ անտես էին մնացած ընթերցողներից և ցույց տալով այս արժանավորությունքը, կարթացանում է ընթերցողների հոգին, գրգռում է և ջերմացնում է նոցա սիրտը դեպի այդ գործի ընդունելությունը»։

Եվ, քանի որ քննադատությունը գրականության հոգին է, ապա ուրեմն այն, ինչպես գտնում էր Նալբանդյանը, պետք է պայքարի հանուն գեղարվեստական ձևի պարզության ու կատարելության, հանուն արվեստի գաղափարական անաղարտության, մտքի խորության և ճանաչողական մեծ ուժի։ Արվես-

տը պետք է սերտորեն կապված լինի ժողովրդի հետ, որպեսզի իրավունք ունենա ժողովրդի դաստիարակ կոչվելու:

Հասարակական կյանքում գրականության ու արվեստի դերի և նշանակության վերաբերյալ Մ. Նալբանդյանի հայտնած մտքերը չեն կորցրել իրենց արժեքը նաև մեր օրերում:

Գրականության ու արվեստի պարտիականության սկզբունքը, որ առաջ էր քաշել Վ. Ի. Լենինը, և որը կրքոտ պաշտպանել են մարքսիստ քննադատներ Ա. Լունաչարսկին, Մ. Օլմինսկին, Ստ. Շահումյանը, Ալ. Մյասնիկյանը և ուրիշներ, ըստ էության հանդիսանում էր Ռուսաստանի առաջավոր հասարակական մտքի, ռևոլյուցիոն դեմոկրատների էսթետիկայի առաջադիմական տրադիցիաների շարունակությունն ու զարգացումը: Երբ մենք խոսում ենք մարքսիստական-լենինյան էսթետիկայի ժառանգած տրադիցիաների մասին, ապա Բելինսկու, Գերցենի, Չերնիշևսկու, Դոբրոլյուբովի շարքում դասում ենք նաև հայ մատերիալիստ-գեղագետ Միքայել Նալբանդյանին: Հենց այդպես են վարվել Ստ. Շահումյանը Ղ. Աղայանի հոբելյանին արտասանած իր ճառում, և Ալ. Մյասնիկյանը իր հայտնի «Միքայել Նալբանդյան» (Մոսկվա, 1919) աշխատության մեջ:

Մ. Նալբանդյանի ստեղծագործության ու հասարակական-քաղաքական գործունեության մեջ ուշագրավն այն է, որ նրա մոտ գիտական տեսությունը համաքայլ էր գեղարվեստական պրակտիկայի հետ: Հասարակական կյանքում գրականության ակտիվ դերի վերաբերյալ առաջ քաշած դրույթները նա հենց ինքն էլ մարմնավորեց իր ստեղծագործություններում:

Մ. Նալբանդյանը «Հյուսիսափայլ»-ի ոգին էր: Հենց նրա հրապարակախոսական վիթխարի տաղանդի շնորհիվ այդ ամսագիրը դարձավ ժամանակի հայ պարբերական առաջադիմական մամուլի մարտական օրգանը և դրոշը: Ինչպես որ Գերցենի փայլուն հրապարակախոսությունը յուրահատուկ, գերցենյան երանգ էր տալիս «Колокол»-ին, այնպես էլ Նալբանդյանի համարձակ ու կրքոտ, սրի պես հատու խոսքը առանձնահատուկ երանգ էր տալիս «Հյուսիսափայլ»-ին: Ինչպես որ առաջավոր ռուս երիտասարդությունը 40-ական թվականներին անհամբեր սպասում էր Բելինսկու, իսկ 50-ական թվականներին՝ Չերնիշևսկու, Դոբրոլյուբովի և Պիսարևի հոդվածներին, այնպես էլ առաջավոր հայ երիտասարդությունն անսքող համոզմունքով ու հետաքրքրությամբ էր բացում «Հյուսիսափայլ»-ի համարները, որտեղ Կոմս Էմմանուել կեղծանունով Նալբանդյանը տպագրում էր իր հայտնի «Հիշատակարանը» — ժամանակակից կյանքին վերաբերող հրապարակախոսական սուր հոդվածների, ֆելիետոնների, պամֆլետների, գրախոսականների ու ակնարկների մի ամբողջ մատենաշար: «Հյուսիսափայլ»-ի ընթերցողներն, իհարկե, կռահում էին, որ Կոմս Էմմանուելը նույն ինքը Նալբանդյանն է: Բայց նրանց այնքան էր հրապուրում հրապարակախոսի սրամիտ ու փայլուն գրիչը, որ շատ հաճախ Կոմս Էմմանուելին կենդանի մարդ էին համարում և նամակներ գրում նրան: Խոսքը, իհարկե, առաջավոր ընթերցողների մասին է: Իսկ կղերամիտ ու պահպանողական մարդիկ վախենում էին, չլինի թե ընկնեն «չարամիտ Կոմս Էմմանուելի» «Հիշատակարանը», ինչպես որ նրանց ռուս համախոհները սարսափում էին Գերցենի և Օգարյովի «Колокол»-ից, Դոբրոլյուբովի «Свисток»-ից և Կուրոչկինի «Искра»-ից:

Մ. Նալբանդյանի «Հիշատակարանի» հետ սերտորեն առնչվում է նրա



«Մեռելահարցուկ» երգիծական վեպը: Այստեղ ևս գլխավոր գործող անձը ամեն ինչ տեսնող ու ձաղկող Կոմս Էմմանուելն է: Նա մերկացնում է այնպիսի գիշատիչ բուրժուայի, ինչպիսին Հովնաթանյանն է, որի կերպարի մեջ ժամանակակիցները տեսան Մոսկվայում հայտնի վաճառական Անանովի բնորոշ գծերը:

Հովնաթանյանին կարելի է համեմատել Սալտիկով-Շչեդրինի «Նահանգական ակնարկների» վաճառական Խրեպտյուգինի և «Պազուխինի մահը» կոմեդիայի հերոս Պազուխինի հետ: Նրանք բոլորն էլ ճորտատիրական Ռուսաստանի վիժվածքն են, կապիտալի նախնական կուտակման շրջանի տիպիկ ներկայացուցիչները:

Սալտիկով-Շչեդրինի «Պազուխինի մահը» կոմեդիան սկզբում կրում էր «Մահվան թագավորությունը» վերնագիրը: Ռուս մեծ երգիծաբանը դրանով ցանկանում էր ընդգծել, որ Պազուխինների աշխարհը ներքնապես նեխած աշխարհ է, կենդանի դիակների աշխարհ: Այդ միտքը կարմիր թելի պես անցնում է նաև Նալբանդյանի «Մեռելահարցուկ» վեպով: Նկարագրելով Հովնաթանյանների գարշելի կյանքը, Նալբանդյանը դառնությամբ նշում էր. «Ո՜հ, արևը շատ անգամ դեռևս պիտի մտանե հայերի ասիական պղտոր հայացքի վերայով... Գնայուն մեռյալները (ходячие трупы) դեռևս շատ ժամանակ պիտի կենդանի մարդիկ թվին մեր արտասվելի ազգի աչքում»: Հեղինակը պատահաբար չէ «գնայուն մեռյալների» կողքին փակագծերում դրել նրա ռուսերեն համարժեքը: Այդ դարձվածքը բավական տարածված էր ռուս երգիծական գրականության մեջ և մամուլում:

«Մեռելահարցուկ» վեպում կա այսպիսի մի սիմվոլիկ պատկեր: Կոմս Էմմանուելը մի գավառական հայկական քաղաքում այցելում է ծայրամասում գտնվող գերեզմանոցը: Այստեղ նա հանդիպում է տեղի եկեղեցու ծեր ժամհարին, որը գերեզման է փորում մեռած երեսփոխանի համար: Էմմանուելի հետ ունեցած զրույցի ժամանակ գերեզմանափորը ատելությամբ է խոսում երեսփոխանի մասին, մերկացնում նրա դրամաշորթությունը, ասում, որ նա հափշտակել է եկեղեցական փողերը և անկեղծորեն խոստովանում է. «Ճշմարիտն ասեմ, ցավելու չեմ, եթե ամենայն օր գերեզման փորեմ այնպիսի մարդերի համար, որպիսու համար փորում եմ այս գերեզմանը»: Ծերունու այս խոսքերը, հիրավի, մարգարեաբար են հնչում. ժողովուրդը հանդես կգա որպես շահագործողների գերեզմանափոր: Սակայն ժողովուրդ ասելով Նալբանդյանը նկատի ուներ, ամենից առաջ, ռևոլյուցիոն գյուղացիությանը: Եվ այստեղ դրսևորվել է նրա ռևոլյուցիոն-դեմոկրատական աշխարհայացքի սահմանափակությունը:

Նալբանդյանը ռևոլյուցիոն-դեմոկրատների նման համոզված էր, որ անցումը սոցիալիզմին՝ կատարվելու է գյուղական համայնքի միջոցով: Նրա «համայնքային սոցիալիզմը» ուտոպիստական էր: Բայց հակառակ ֆրանսիական ուտոպիստ-սոցիալիստների, Նալբանդյանի, ինչպես և նրա գաղափարակիցների գործունեությունը աչքի է զարնում մարտական դեմոկրատիզմով, ռևոլյուցիոն պաթոսով: Այս է նրա պատմական-առաջադիմական դերը համառուսաստանյան ազատագրական շարժման մեջ:

Մ. Նալբանդյանը տվել է ռևոլյուցիոն-դեմոկրատական հրապարակախոսության ու գրաքննադատության այնպիսի փայլուն գործեր, ինչպես՝ «Երկու տող» (1861), «Երկրագործությունը որպես ուղիղ ճանապարհ» (1862), «Կրիտիկա» Սոս և Վարդիթերի» (1864) և այլն: Այդ ստեղծագործությունները վառ

*ու ցայտուն ուրվագծում են ռևոլյուցիոներ գրող, մեծ մտածող Միքայել Նալբանդյանի խիզախ ու անվեհեր կերպարը: Հայ երիտասարդ սերնդին ուղղած նրա բոցաշունչ խոսքերը հնչեցին որպես մարտակոչ, որպես լավագույն գալիքի համար պայքարող մարտիկի կտակ: Եվ հայ երիտասարդությունն անսաց այդ մարտակոչին և որպես էստաֆետ տարավ կրակի ու փոթորիկների միջով...*

*Իր ժամանակի առաջավոր գաղափարները Մ. Նալբանդյանն արտացոլեց նաև իր հայրենասիրական լիրիկայում: Նա խիզախորեն ռևոլյուցիոն մոտիվներ մտցրեց հայ պոեզիայի մեջ: Դեռ մինչև այդ հայ բանաստեղծներից ոչ մեկն այնպես չէր երգել ազատության բաղձանքը, ինչպես Նալբանդյանը, դեռ ոչ ոք հայ բանաստեղծության մեջ այդքան ակտիվ ու վստահ պայքարի կոչ չէր արել, որքան նա: Նրա հանրահայտ «Ազատություն» բանաստեղծությունը իրավամբ կարելի է դասել քաղաքացիական լիրիկայի այնպիսի գլուխգործոցների շարքում, ինչպիսիք են՝ Նեկրասովի «Պոետն ու քաղաքացին», Օգարյովի «Ազատությունը», Միխայլովի «Համարձակ, ընկերներ...» և այլն:*

«Կան մարդկային այնպիսի առանձին ստեղծագործություններ,— *գրել է Մարիետա Շահինյանը,*— որոնց վիճակված է ապրել ժողովրդի մեջ: Հայ պոեզիայի այդպիսի անմահ մի գանձ է դարձել Նալբանդյանի այդ բանաստեղծությունը: Գրեթե չկա մայրենի լեզուն գիտցող մի հայ, որն անգիր չիմանա այն, բայց ես հանդիպել եմ իմ սերնդին պատկանող, Մոսկվայում ծնված ու մեծացած և մայրենի լեզուն չիմացող շատ հայերի, որոնք հուզմունքով, յուրաքանչյուր հնչյունն ապրելով արտասանում էին այդ սքանչելի բանաստեղծության առաջին վսեմ տողը՝ «Ազատն աստված այն օրից...»»:

*Նալբանդյանի «Ազատությունը», որն առաջին անգամ հնչեց 1859 թվականին «Հյուսիսափայլ»-ի էջերից, շուտով դարձավ հայ ռևոլյուցիոն երիտասարդության հիմնը: Այդ բանաստեղծության հետ մեկտեղ լայն ժողովրդականություն են վայելում նաև նրա «Իտալացի աղջկա երգը», «Մանկության օրեր», «Ապոլոնին» գործերը, որոնք տոգորված են ազատաբաղձ ու ռևոլյուցիոն ձգտումներով:*

*Բայց Մ. Նալբանդյանը սոսկ պայքարի չէր կոչում: Նա ինքն էլ անձնվիրաբար մասնակցում էր այդ պայքարին և բազմիցս ասել է, որ կռվի ժամին բարիկադների վրա է իր տեղը:*

Լո՛ւռ կաց, դու քնար, այլ մի՛ հնչեր ինձ,
Ապոլոն, հե՛տ առ դարձյալ դու նորան,
Տուր մի այլ մարդու, որ ընդունակ է
Ջոհ բերել կյանքը սիրած աղջկան:

Ես պիտի դուրս գամ դեպի հրապարակ
Առանց քնարի, անկարդ խոսքերով
Եվ պիտի գոչեմ, պիտի բողոքեմ,
Խավարի ընդդեմ պատերազմելով:

Ներկա օրերում այլ ի՛նչ սև քնար,
Սուր է հարկավոր կտրիճի ձեռքին.
Արյո՛ւն ու կրա՛կ թշնամու վերա,
Այս պիտի լինի խորհուրդ մեր կյանքին:

*Միքայել Նալբանդյանը հայ գրականությունը հարստացրեց նաև Պուշկինից, Լերմոնտովից, Հայնեից և Բերանժեից կատարած հիանալի թարգմանություններով: Պուշկինի ստեղծագործությունների, հատկապես նրա «Պոետը» և «Պոետին» բանաստեղծությունների ազդեցության տակ նա գրեց իր «Բանաստեղծը» նշանավոր ոտանավորը, որով նա մեկ անգամ ևս շեշտեց բանաստեղծի քաղաքացիական կոչումը: Նրա «Մտածությունը» համահնչուն է Լերմոնտովի «Առագաստի» հետ: Այստեղ ևս բանաստեղծության առանցքը ամպրոպի ու փոթորկի դեմ գնացող խիզախ ու անվեհեր մարդն է: Հայ բանաստեղծին հարազատ էր նաև լերմոնտովյան մարգարեի, հասարակական չարիքները մերկացնողի ողբերգական ու վեհ կերպարը:*

*Իր կարճատև կյանքի ընթացքում լերմոնտովյան մարգարեի նման նա էլ շարունակ քարկոծվել է, բայց այդ երբեք չի սարսափեցրել նրան: Մինչև կյանքի վերջը նա չլքեց արդարության ու ճշմարտության մարտադաշտը: Եվ պատահական չէ, որ Ավետիք Իսահակյանը Միքայել Նալբանդյանին համարում է մարգարե, որն իր մի ձեռքում բռնած ունի սուր, իսկ մյուսում ջահ, որը լուսավորում է տենչալի ապագայի ուղին: Սերունդների հիշողության մեջ հենց այդպես էլ ընդմիշտ կմնա ժողովրդի ազատության ու երջանկության համար պայքարող աննահանջ մարտիկի լուսաշող կերպարը:*

*Ս. ԴԱՐՈՆՅԱՆ*
**Բանասիրական գիտությունների թեկնածու**

---

## ՄԻԼԻՈՆԱՏԵՐ ԱՄՍԱԳՐԵՐԸ

Ամսագրերի միանվագ տպաքանակները հունվար ամսին (1966 միլիոն օրինակ).

«Работница» — 10
«Здоровье» — 5
«Крестьянка» — 4,7
«Мурзылка» — 4,7
«Крокодил» — 4,3
«Веселые картинки» — 4
«Наука и жизнь» — 3,1
«Советский экран» — 2,6
«Роман газета» — 2,5
«Огонек» — 2
«Юность — 2
«Техника молодежи» — 1,75
«Политическое самообразование» — 1,56
«Служба быта» — 1,54
«Вокруг света» — 1,5
«За рулем» — 1,3
«Семья и школа — 1,33
«Смена» — 1
«Радио» — 1

## ՄԻԼԻՈՆԱՏԵՐ ԹԵՐԹԵՐԸ

Շարունակվում է համալրվել այն թերթերի թիվը, որոնց յուրաքանչյուր համարի տպաքանակը մեկ միլիոնից պակաս չէ: 1966 թվականի հունվարին ամենից ավելի մեծ միանվագ (միլիոն օրինակ) տպաքանակ են ունեցել հետևյալ կենտրոնական և հանրապետական թերթերը:

«Правда» — 6,57
«Пионерская правда» — 8,21
«Известия» — 7,8
«Комсомольская правда» — 6,8
«Сельская жизнь» — 6,13
«Советская Россия» — 3,23
«Советский спорт» — 2,2
«Зірка» (УССР) — 2,13
«Неделя» — 2
«Труд» — 1,93
«Учительская газета» — 1,2
«Футбол» — 1,2
«Юный ленинец» (УССР) — 1,1

# ՄԵՐ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄՆԵՐԸ

## ԷՋԵՐ ԱՆԴՐԿՈՎԿԱՍԻ ՍՈՎՈՐՈՂ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆ ՇԱՐԺՈՒՄՆԵՐԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ

1907 թվականի սկզբներին ռևոլյուցիոն շարժումներն ինչպես ամբողջ երկրում, այնպես էլ Անդրկովկասում, զգալիորեն թուլացան։ Բայց անգամ ռևոլյուցիայի այդպիսի վայրէջքի պայմաններում Անդրկովկասի, ինչպես և Ռուսաստանի մյուս վայրերի ուսումնական հաստատություններում սովորող երիտասարդները չդադարեցրին պայքարը։

1907 թվականին Անդրկովկասում տեղի ունեցան աշակերտական մի շարք դասադուլներ, որոնցից, հատկապես, հիշատակության արժանի են իրենց հեռացված ընկերներին վերականգնելու համար Թիֆլիսի ռեալական ուսումնարանի, արական գիմնազիայի, էջմիածնի Գևորգյան ճեմարանի, Ելիզավետպոլի արական գիմնազիայի և այլ ուսումնական հաստատություններում ուսանող երիտասարդների ելույթները։

1907 թվականի փետրվարին Թիֆլիսի ռեալական ուսումնարանի դիրեկցիան քաղաքի աշակերտների ռևոլյուցիոն շարժումներին ակտիվ մասնակցելու համար ոստիկանության պահանջով 9 աշակերտների հեռացրեց ուսումնարանից։ Ռեալական ուսումնարանի սոցիալ-դեմոկրատական աշակերտական խումբը իրենց ընկերներին օգնելու նպատակով փետրվարի 26-ին դասադուլ հայտարարեց՝ պահանջելով վերընդունել հեռացվածներին։

Փետրվարի 27-ին ռեալականի դասադուլավոր սովորողներին միացան № 1 արական գիմնազիայի սաները։ Դասադուլին կազմակերպված բնույթ տալու համար ՌՍԴԲՊ Թիֆլիսի կոմիտեն հանձնարարեց ռեալական ուսումնարանի ռուսաց լեզվի ուսուցիչ, ՌՍԴԲՊ անդամ Վլադիմիր Պոտկովին և ռևոլյուցիոն գործունեության համար Պետերբուրգի համալսարանից հեռացված ուսանող Մկրտչյանին՝ գործնական օգնություն և ղեկավարություն ցույց տալ դասադուլավորներին։ Փետրվարի 28-ին Վ. Պոտկովի և Մկրտչյանի մասնակցությամբ տեղի ունեցավ դասադուլ հայտարարած երկու ուսումնական հաստատությունների սոցիալ-դեմոկրատական աշակերտական խմբի անդամների գաղտնի խորհրդակցություն (տե՛ս, Վրացական ՍՍՌ, ՊԿՊԱ, ֆ. 31, ց. 1, գ. 55, թ. 7, 8։ Տե՛ս նաև նույն տեղը, ֆ. 20, ց. 1, գ. 135, թ. 408—409)։

Այստեղ էլ ստեղծվեց դասադուլը ղեկավարող կոմիտե, որի կազմում ընտրվեցին ռեալական ուսումնարանից՝ Ս. Ներսեսովը, Կ. Գամսախուրդիան, Վ. Էգելբերգը, Պ. Բեյբուտովը, իսկ արական գիմնազիայից՝ Կ. Ծատուրովը և



Վ. Պոխտինսկին։ Խորհրդակցության մասնակիցները միաձայն որոշեցին՝ աշխատել քաղաքի մյուս ուսումնական հաստատությունների սովորողներին ևս մասնակից դարձնել դասադուլին. դասադուլը դադարեցնել միայն այն դեպքում, երբ չեղյալ կհայտարարվի 9 ընկերների հեռացման հրամանը։

Ուսումնական օկրուգի հոգաբարձու Լ. Լոպատինսկին ո՛չ միայն մերժեց դասադուլավորների ներկայացրած պահանջը, այլև կարգադրեց ուսումնական հաստատությունների դիրեկտորներին՝ հեռացնել դասադուլի կազմակերպման գործում աչքի ընկած մասնակիցներին, բայց այդ սպառնալիքն ապարդյուն անցավ։ Դրանից հետո ուսումնական հաստատությունների ղեկավարները դիմեցին ոստիկանական ուժերի օգնությանը։ Սկսվեցին մասսայական խուզարկությունները՝ ծեծը, ծնողների նկատմամբ սպառնալիքները, բայց դրանք ևս չօգնեցին։ Նրանց չհաջողվեց կոտրել աշակերտների համառ կամքը։ Ավելին, սպառնալից դրություն էր ստեղծվել նաև քաղաքի մյուս ուսումնական հաստատություններում։ Ամենուրեք տեղի ունեցող աշակերտական ժողովները իրենց դասադուլավոր ընկերներին միանալու որոշումներ էին ընդունում։ Սովորող երիտասարդների այդ միասնական պայքարի պատճառով ծագող հետագա բարդություններից խուսափելու համար ուսումնական օկրուգի հոգաբարձուն ժամանակավորապես նահանջեց։ Չեղյալ հայտարարվեցին աշակերտների հեռացման հրամանները։ Այսպիսով, ռևոլյուցիայի նույնիսկ վայրէջքի դեպքում Թիֆլիսի դասադուլավոր աշակերտների հակակառավարական ելույթը՝ ռևոլյուցիոն գործունեության համար մեղադրվող ընկերներին պաշտպանելու նպատակով, մեկշաբաթյա համառ պայքարից հետո վերջացավ հաղթանակով։

Երկրամասի ուսումնական հաստատություններում 1907 թվականի աչքի ընկնող ռևոլյուցիոն երկրորդ իրադարձությունը տեղի ունեցավ էջմիածնի Գևորգյան ճեմարանում։

Հայտնի է, որ այս ուսումնական հաստատությունը անմիջականորեն ենթարկվում էր հայոց կաթողիկոսին։ Այստեղ հաստատված էր դաժան ռեժիմ, մամլակի տակ էր դրված աշակերտների ստեղծագործական եռանդը թե՛ ուսման ասպարեզում և թե հասարակական կյանքում։ Առանձնապես անտանելի էր ուսուցման գիշերօթիկ սիստեմի դաժան ռեժիմը, որի հետևանքով աշակերտները բոլորովին մեկուսացվում էին արտաքին աշխարհից և փակվում ճեմարանի չորս պատերի մեջ։ Միաժամանակ ուսուցման մեջ իշխում էին կրոնական սխոլաստիկան ու դոգմատիկան, հալածանքների ենթարկվում ազատասիրական հայացքները. սակայն այս ամենը ի վիճակի չեղան սովորող երիտասարդության մեջ մեռցնելու ձգտումը դեպի լույսն ու ազատությունը։

Պայքարի ավանգարդում էին ուսանողները և բարձր դասարանների աշակերտները, որոնք դեռևս 1905 թվականի հոկտեմբեր ամսին կազմակերպել էին սոցիալ-դեմոկրատական մարքսիստական խմբակ և ակտիվ արձագանքում էին Անդրկովկասի ուսումնական հաստատություններում ծավալված ռևոլյուցիոն շարժումներին։

Այդ ժամանակ ճեմարանի սոցիալ-դեմոկրատական խմբակում (ընդհատակյա) իրենց գործարար մասնակցությամբ աչքի էին ընկնում Գուրգեն Հայկունին, Թադևոս Ավդալբեկյանը, Առաքել Առաքելյանը, Վահրամ Փիլոսյանը, Վաղարշակ Աղեկյանը, Էդուարդ Ամատունին, Ալեքսանդր Մելիք-Աղաջանյանը, Վարդան Փոթեյանը և ուրիշներ։

Խմբակը կապի մեջ էր Բաքվի, Թիֆլիսի, Երևանի սոցիալ-դեմոկրատական

կազմակերպությունների հետ, նրանցից ստանում էր թե՛ ղեկավար ցուցումներ և թե մարքսիստական գրականություն։ Ճեմարանի խմբակի ռևոլյուցիոն գործունեությունը չէր սահմանափակվում միայն ուսումնական հաստատության շրջանակներով. Նրա անդամները գործում էին նաև քաղաքի բնակչության ու զինվորական կայազորի մեջ, քաղաքական ագիտացիա ու պրոպագանդա մղում, ռևոլյուցիոն գրականություն տարածում։ Ճեմարանի մարքսիստական խմբակի անդամների ջանքերով ստեղծված անլեգալ «Լույս» կոչվող գրադարանում կային Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի «Կոմունիստական պարտիայի մանիֆեստը», Վ. Ի. Լենինի ու Պլեխանովի մի շարք աշխատություններ, բոլշևիկյան պարբերական մամուլի, թռուցիկների ու կոչերի բազմաթիվ օրինակներ։ Գրադարանում սիստեմատիկ կազմակերպվում էին սովորողների գաղտնի ժողովներ, հավաքներ, որտեղ քննարկվում էին ռուսական ռևոլյուցիայի խնդիրներին, գիտական կոմունիզմին, գյուղացիությանը և դպրոցին վերաբերող հարցեր։

Սոցիալ-դեմոկրատական աշակերտական խմբակի ռևոլյուցիոն գործունեության արգասիքը հանդիսացան 1905—1906 թվականներին ճեմարանում բռնկած հակացարական և հակաեկեղեցական ելույթները, որոնց նպատակն էր նաև դաշնակցության դավաճանական քաղաքականության մերկացումը։

1907 թվականի հունվարի 16-ի մանկավարժական խորհրդի նիստը ձայների մեծամասնությամբ որոշում կայացրեց ճեմարանից հեռացնել «Ա» լսարանի ուսանողներ Վաղարշակ Աղեկյանին և Վահրամ Փիլոսյանին։ Նրանք մեղադրվում էին որպես սաների մեջ անհնազանդություն սերմանողներ, ճեմարանում տիրող բարքերը քննադատողներ և մանկավարժական կոլեկտիվի որոշ անդամների զրպարտողներ։

Ճեմարանում գործող սոցիալ-դեմոկրատական և դաշնակցական աշակերտական խմբակների համար մանկավարժական խորհրդի որոշումը լուրջ քննարկման առիթ դարձավ։ Այդ քննարկումները մեկ անգամ ևս ընդգծեցին դաշնակցական պարտիայի ու նրա ղեկավարությամբ գործող աշակերտական խմբակի հակառևոլյուցիոն վարքագիծը։

Դաշնակցական աշակերտական խմբակը, որն ընդգրկում էր աշակերտության մեծամասնությունը[1], որոշեց հավանություն տալ մանկավարժական խորհրդի անարդարացի վճռին և պահանջեց տեսչից՝ անհապաղ հեռացնել ճեմարանական կարգերի դեմ ըմբոստացած աշակերտներ Վ. Աղեկյանին և Վ. Փիլոսյանին։ Իսկ սոցիալ-դեմոկրատական աշակերտական խմբակը հեռացված ընկերներին պաշտպանելու համար 24 աշակերտների ստորագրությամբ բողոքագիր ներկայացրեց ճեմարանի տեսչին, կաթողիկոսին և համապատասխան հոդված ուղարկեց «Մշակ» թերթի խմբագրությանը։ Բողոքներն անարդարացի էին համարում մանկավարժական ժողովի որոշումը, գտնելով, որ Վ. Աղեկյանի և Վ. Փիլոսյանի պահանջներն իրավացի են։ Իրոք, հակասանիտարական վիճակում են ճեմարանի հիվանդանոցը, ճաշարանը, վատ է սնունդը, աղքատիկ սաների հագուստը, իսկ ուսուցիչներ Վեհապետյանը և Ալթունյանը ո՛չ միայն հայտնի են իրենց հակամանկավարժական արարքներով, «այլև դատապարտելի են նաև այդ ուսուցիչների դասավանդման ձևերն ու եղանակները» (Հայկական ՍՍՌ ՊԿՊԱ, ֆ. 312, թղթ. 27, գ. 172, թ. 23)։

---

[1] Այստեղ և այնուհետև մեծամասնականներ ասելով պետք է նկատի ունենալ սովորողների մեծամասնությունը կազմող դաշնակցական աշակերտական խմբակի անդամներին։



Հունվարի 22-ին տեղի ունեցած մանկավարժական խորհրդի նիստում 24 աշակերտների բողոքագրի մասին հաղորդեց ճեմարանի տեսուչ, դաշնակցական Մեսրոպ վարդապետը։ Վերջինս ճեմարանում ծավալված հուզումնալից դեպքերի ամբողջ պատասխանատվությունը բարդեց սոցիալ-դեմոկրատական աշակերտական խմբակի վրա, առանձնապես շեշտելով, որ «Ճեմարանում տեղի ունեցող ներկա տխուր դեպքերը միտումնավոր և հրահանգված բաներ են, որի նախապատրաստման վրա ջանք ու եռանդ չեն խնայել մանկավարժական խորհրդի որոշման դեմ բողոքի դուրս եկած վերոհիշյալ 24 խռովարար աշակերտները։ Ուստի պատահական չէ, որ նրանք իրենց բողոքում գրում են. «Ամբողջապես վերցրած և ամենամեծ չափով համաձայն ենք մեր ընկերների (Վ. Աղեկյանի ու Վ. Փիլոսյանի) հետ, որովհետև նրանց արածների ու արարքների մեջ չկան այնպիսի հետքեր, որոնց համար արժանի լիներ մեկին արտաքսել դպրոցից»... Նրանք պահանջում են վերստին ընդունել... արձակվածներին և հակառակ դեպքում մինչև վերջ կպաշտպանեն նրանց իրենց ցանկացած միջոցներով» (Հայկական ՍՍՌ ՊԿՊԱ, ֆ. 312, թղթ. 27, վ. 173, թ. 24—25)։

Վերոհիշյալ փաստը, անկասկած, համոզում է, որ հեռացված աշակերտներ Աղեկյանը և Փիլոսյանը գործել են սոցիալ-դեմոկրատական խմբակի հանձնարարությամբ, իսկ նրանց ներկայացրած բողոքը՝ ուղղված ճեմարանի անտանելի պայմանների և ստրկական բարքերի մերկացման դեմ, գրվել է այդ խմբակի անդամների հավանությամբ և նրանց մասնակցությամբ։

Մանկավարժական խորհուրդը ձայների մեծամասնությամբ մերժում է 24-ի բողոքը և հանձնարարում ճեմարանի ուսուցիչներ Մ. Աբեղյանին, Գ. Լևոնյանին և Ա. Օլթեցյանին՝ բացատրել բողոքագրի հեղինակներին, որ մանկավարժական խորհրդի ընդունած որոշումը երբեք չի փոխվի, իսկ նրանց ցուցաբերած համառությունը կարող է միայն առիթ հանդիսանալ իշխանությունների ձեռքին՝ ճեմարանը փակելու համար։ Միաժամանակ պահանջեց՝ բողոքող աշակերտներին մանկավարժական խորհրդի որոշման հետ հաշտեցնելու արդյունքների մասին լսել հաջորդ մանկավարժական խորհրդի նիստում։

Հունվարի 25-ին կայացած մանկավարժական խորհրդի նիստի մասնակիցներին իրազեկ դարձրին, որ բողոքագրի հեղինակ 24 աշակերտները կտրականապես մերժել են նշանակված ուսուցիչների հարուցած միջնորդությունը և հայտարարել՝ «Կամ նոքա մեզ հետ, կամ մենք նրանց հետ», որ «Մեզ միայն սվիններով կարող են դուրս քշել ճեմարանից» (Հայկական ՍՍՌ ՊԿՊԱ, ֆ. 312, թղթ. 327, վ. 173, թ. 24—25)։

Մանկավարժական խորհուրդը ստեղծված ծանր դրությունից դուրս գալու և սպասվող հետևանքների պատասխանատվությունից խուսափելու համար ընդունեց հետևյալ որոշումը. «Ի նկատի ունենալով, որ աշակերտության մեջ եղած խռովությունն ու դժգոհությունը կարող է ավելի սաստկանալով ծանր հետևանքներ առաջ բերել, խնդիրը բոլոր մանրամասնություններով ներկայացնել Նորին վեհափառության տնօրինության, հայտնելով, որ ժողովն այլևս անձեռնհաս է հարցին լուծում տալու» (նույն տեղում, թ. 174)։

Ճեմարանի տեսուչը, կատարելով մանկավարժական խորհրդի որոշումը, հեռացված երկու աշակերտների մասին եղած բոլոր նյութերը կից զեկուցագրով ներկայացրեց կաթողիկոսին։ Վերջինս, ծանոթանալով ճեմարանում բռնկած աշակերտության հուզումներին վերաբերող նյութերին, հավանություն տվեց մանկավարժական խորհրդի ընդունած որոշմանը և պահանջեց տեսչից՝

ոչ մի ներում չշնորհել խռովարարության համար հեռացված աշակերտներին։ Կաթողիկոսի անարդարացի վերաբերմունքն ավելի զայրացրեց սոցիալ-դեմոկրատական խմբի անդամներին։ Նրանք որոշեցին, ի պատասխան դրա, բոյկոտի ենթարկել ճեմարանը և միասնական կերպով հրաժարվել իրենց ուսումը այնտեղ շարունակելուց։

Այդ առթիվ իրենց ընկերների պաշտպանությամբ հանդես եկած երիտասարդները միաժամանակ կաթողիկոսի հասցեով ուղարկեցին հետևյալ բովանդակությամբ նամակը. «Աշակերտների և ուսանողների մեծամասնությունը կազմող խումբը մերժում է (հեռացված ուսանողների վերաբերյալ բողոքի քննությունը)։ Հետղհետե հարաբերությունները սրվեցան ու թշնամական դարձան... Փոքրամասնություն կազմող և ընկերներին պաշտպանել ցանկացող խումբը, նկատի ունենալով, որ հարաբերությունների այդպիսի լարումը կարող է ավելի բարդ հետևանքներ ունենալ, որ պարապմունքը ճեմարանում կարող է դադարել ժամանակից առաջ կամ ձերդ վեհափառության հրամանով և կամ կառավարության միջամտությամբ, աչքի առաջ ունենալով միայն հասարակության օգուտը, վճռեց խաղաղ հեռանալ ճեմարանից, բայց թողնել յուր ներկայացուցիչներին գործի քննության համար։

Ահա վեհափառ տեր, թե այդ ուսանողների բողոքը ինչ հանգամանքների արդյունք է» (Հայկական ՍՍՌ ՊԿՊԱ, ֆ. 56, գ. 501, թ. 36—37)։

Այսպիսով, նամակի հեղինակները ո՛չ միայն իրենց վերաբերմունքն են հայտնում մանկավարժական խորհրդի ընդունած անարդարացի որոշման նկատմամբ, այլև մատնում են ճեմարանում մեծամասնություն կազմող դաշնակցական աշակերտական խմբի դավաճանական գործունեությունը։ Միաժամանակ նամակի հեղինակները, ակնարկելով ճեմարանում ստեղծված լարված իրադրությունը, նկատի ունեին Էջմիածնում վխտացող դաշնակցական խուժանի ամեն օր ուղարկվող անստորագիր սպառնալից նամակները և կիրառվող շանտաժի բազում ձևերը։ Մեր եզրակացությունը հիմնավորելու համար բերենք հետևյալ անստորագիր նամակը, որը ճեմարանի սոցիալ-դեմոկրատ աշակերտների խնդրանքով տպագրվել է «Մշակ» թերթում։

«Մշեցի Վաղարշակ, «Ա» դասարանցի։ Տո, Վաղարշակ ես, ինչ չոռ ու ցավ ես (խոսքը վերաբերում է ճեմարանից հեռացված Վ. Աղեկյանին—Տ. Օ.)։

— ...Դու էսքան տարի ճեմարանում ապրել ես ազգի հացով ու շորով. էս օր էլ դեմոկրատիա կտարածես, հայու դեմ կկռվես։ ...Ձեզ կսենք, եթե սուս ու փուս ճեմարանից չեք հեռանա, ձեզ թաթարի պես կկոտրենք։ Երդվում ենք մեր «սուրբ» դրոշակով, որ ձեր հախից կգանք... («Մշակ» № 30, 1907 թ.)։

Դաշնակցականների ավանտյուրիստական քաղաքականությունը մատնող այս անստորագիր նամակը այն բազմաթիվ փաստերից մեկն է, որոնք ցույց են տալիս, թե ինչպիսի ստոր ճանապարհներով էին մեծամասնականները պայքարում սոցիալ-դեմոկրատների դեմ։ Բայց սխալ կլինի վերոհիշյալից եզրակացնել, որ ճեմարանի 20 աշակերտների հեռացումը եղել է վերոհիշյալ խուլիգանական տարրերի շանտաժից վախենալու հետևանք։ Նամակի հեղինակներն ի լուր ամենքի հայտարարում են, որ դաշնակցականների հալածանքներից չեն վախենում։ Հեռանում են, որովհետև չեն կարող հրաժարվել իրենց համոզմունքներից, իսկ այդ հանգամանքը, անկասկած, առիթ կընձեռի թե՛ հոգևոր և թե պետական իշխանություններին ճեմարանը փակելու համար։ «Ճեմարանի թվով 20 սովորողներ,— ասված էր «Մշակ» թերթում տպագրված մի հոդվածում,— 10 լսարանցի և 10 «Զ» դասարանցի, որոնք չեն հրաժարվում իրենց համոզմունքներից, բայց աչքի առաջ ունենալով հասարակությանը հասանելիք վտանգը, ինքնակամ հեռանում են ճեմարանից»։ Քսան առաջադեմ սովորող երիտասարդների հեռացումից հետո ևս չդադարեցին սոցիալ դեմոկրատ աշակերտների և ուսանողների բողոքները։ Ինքնակամ հեռացած աշակերտների հանձնարարությամբ ճեմարանում մնացած սոցիալ-դեմոկրատները կաթողիկոսին դիմեցին հետևյալ բովանդակությամբ համախոսականով.

«Վեհափառ տեր։ Այսօր ճեմարանում կատարվեց մի այնպիսի դեպք, որ դպրոցական կյանքում սակավ է պատահում։ Մեր ընկերներից 20 հոգի ստիպված թողին ճեմարանը՝ իրենց երկու ընկերներին պաշտպանելու համար, որոնք մանկավարժական ժողովի կողմից ճանաչվել էին իբրև խռովարարներ։ Բայց այսօր թե այդ երկու խռովարար ճանաչվածները և թե նոցա կողմնակիցները հեռացան ճեմարանից՝ դատարկ թողնելով Ա և Բ լսարանները, որպեսզի պատճառ չդառնան ճեմարանի խաղաղությունը վրդովելուն, հայտնելով միանգամայն, որ իրենք արդարության և կարգի պաշտպաններ են և ոչ խռովարարներ։ Այսպիսի զոհողությունը բնականաբար ստիպում է մեզ մտածել, որ մի մեծ անարդարություն է կատարվել մեր ընկերների հետ։ Ուստի ի սեր արդարության, ի սեր այդպիսի մեծ զոհողություն հանձն առած մեր ընկերների՝ Ձեր ուշադրությունն ենք հրավիրում ճեմարանում կատարված դեպքերի վրա և խնդրում, որ հրամայեք անաչառ և արդարամիտ անձերից մի հանձնախումբ կազմել և քննել տալ կատարված դեպքերի պատճառները...» (Հայկական ՍՍՌ ՊԿՊԱ, ֆ. 56, գ. 501, թ. 28)։ Կաթողիկոսն այս համախոսականի պահանջն էլ մերժեց, հայտնելով, որ խռովարարները և նրանց պաշտպանները ոչ մի դեպքում տեղ չպետք է ունենան ճեմարանում։

20 ճեմարանականների հեռացման լուրը խիստ զայրույթ առաջ բերեց հասարակության առաջադեմ խավերի շրջանում։ Այսպես, օրինակ, Թիֆլիսի 12 թերթերի խմբագրություններ միասնական հայտարարությամբ պաշտպանության տակ առնելով հեռացված սովորող երիտասարդների արդարացի բողոքը, իրենց հերթին անարգանքի սյունին էին գամում ճեմարանում տիրող բարքերը և պահանջում անհապաղ չեղյալ հայտարարել մանկավարժական խորհրդի կողմից ընդունված անարդարացի որոշումն ու ետ կանչել անձնազոհության հիանալի օրինակ ցուցաբերած 20 երիտասարդներին։

Մասսայական բողոքների ճնշման տակ ըմբոստացած աշակերտներին և ուսանողներին թույլատրվեց էքստերն կարգով հանձնելու ավարտական քննությունները։

Եկեղեցական իշխանությունների և ռեակցիոն տրամադրություններով համակված ուսուցիչների դրդմամբ ճեմարանի ղեկավարությունն աշխատեց արհեստական դժվարություններ ստեղծել էքստերն քննություններ հանձնողների համար, նպատակ ունենալով առավել ակտիվ կազմակերպիչներին զրկել ավարտական ստանալու իրավունքից։ Բայց այդ չհաջողվեց. քննության ներկայացած բոլոր աշակերտները բարձր գնահատականներով հանձնեցին քննությունները և ուսուցչի կոչումով աշխատանքի մեկնեցին հայկական գյուղերը։

Տ. ՕՀԱՆՋԱՆՅԱՆ

# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

## ՀԵՐՈՍԱԿԱՆ ԱՆՑՅԱԼԻՑ

Հայաստանում Սովետական իշխանությունը հաղթանակեց երկարատև ու դժվարին պայքարից հետո։ Այդ պայքարի պատմության ամենափայլուն էջերից մեկը Մայիսյան ապստամբությունն է։ Այն ուներ Համառուսաստանյան նշանակություն՝ լինելով հերոսական պայքար Հայաստանում սովետական կարգերի հաստատման համար, միաժամանակ պայքար էր հանուն Ռուսաստանում սովետական իշխանության ամրապնդման։ Հայաստանի բանվոր դասակարգը և բոլոր աշխատավորները մայիսյան արյունահեղ մարտերով ձախողեցին Անտանտի և Անդրկովկասի բուրժուա-ազգայնական կառավարությունների համատեղ ձգտումները երկրամասը որպես ռազմաբեմ օգտագործելու և չորրորդ արշավանք կազմակերպելու համար։

Մենք երախտագիտությամբ ենք նշում, որ Մայիսյան ապստամբության մասին առատ գրականություն կա՝ հրապարակի վրա են փաստաթղթերի ժողովածուներ, ուսումնասիրություններ, մասնակիցների հիշողություններ, բրոշյուրներ և բազմաթիվ հոդվածներ։

Բացի դրանից, Հայաստանի սովետական շրջանի շատ պատմաբաններ տարբեր առիթներով կանգ են առել նաև Մայիսյան ապստամբության հարցերի վրա։ 1920—1935 թթ. ու վերջին 15-ամյակում բավականին գրականություն է ստեղծվել։ Եվ ակնառու է մի բան՝ ավելի շատ փաստեր են արձանագրվել, փաստաթղթեր հավաքվել ու լուսաբանվել. խորացել է ուսումնասիրությունը, ընդարձակվել են հետաքրքրության շրջանակները։ Յուրաքանչյուր նոր գիրք մի առողջ հատիկ է ավելացնում մեր հերոսական անցյալի գիտական ուսումնասիրությանը։

Առաջին լուրջ քայլն արել է ակադեմիկոս Ա. Հովհաննիսյանը դեռևս 42 տարի առաջ։ Նա իրավացի եղավ ասելով, որ մեր հետազոտողները Մայիսյան ապստամբության տարբեր հարցերի մասին կայուն տեսակետներ կմշակեն։ Այս ոգեշնչող և ուժեր կլանող աշխատանքում գնահատման փորձեր շատ եղան, կարծիքներ բախվեցին, բանավեճ եղավ։ Անցած տարիներին գնալով խորացավ Մայիսյան ապստամբության պատմության վերաբերյալ անընդհատ աճող հետաքրքրությունը, որովհետև այն «մեր պարտիայի պատմության լավագույն էջն է» (Լուկաշին)։ 1930—1932 թթ. ՀԿ(բ)Պ Կենտկոմը Մայիսյան ապստամբության մասին արժեքավոր ծավալուն ժողովածուներ լույս ընծայեց։ Տվյալ հարցի պատմագրության մեջ կարևոր տեղ գրավեց Ա. Խանջյանի «Մայիսյան ապստամբությունից դեպի նոյեմբերյան հաղթանակը» բրոշյուրը։

Հիմա էլ բազմաթիվ մենագրություններ են լույս տեսել, որոնք հարստացնում են մեր գիտելիքները Մայիսյան ապստամբության մասին։ Գ. Ղարիբջանյանը տվել է ապստամբության պատմությունը գլխավոր գործող անձերով, նոր փաստաթղթեր է գիտական շրջանառության մեջ դրել։ Հ. Կարապետյանի «Մայիսյան ապստամբությունը Հայաստանում 1920 թ.» մենագրությունում պատմական որոշ փաստեր ճշտված են, խորն է նյութի գիտական վերլուծությունը։ Ծ. Աղայանը, Գ. Գալոյանը, Ս. Վարդանյանը, Խ. Բարսեղյանը, Ս. Կարապետյանը իրենց մի շարք ուշագրավ աշխատություններում հիմնավորված քննադատության են ենթարկել 40-ական թվականների Մայիսյան ապստամբության ղեկավարների հասցեին հորինված սուբյեկտիվ գնահատականը, հանգամանորեն վեր են հանել ապստամբության պարտության պատճառները։ Որոշ պատմաբաններ վերանայել են նախկինում ունեցած իրենց տեսակետը, շտկել են թույլ տված սխալները և այլն։

Ի վերջո, Մայիսյան ապստամբության մասին ստեղծվել է սոլիդ գրականություն, որի նշանակությունը դժվար է գերագնահատել։



Իհարկե, այս չի նշանակում, որ բոլոր հարցերը սպառված են և հետաքրքրությունը լիովին բավարարված է։ Չենք տարակուսում, որ որոշ հարցերի վերաբերյալ դեռևս կայուն տեսակետներ չկան։

Վիճելի հարցերին է նվիրված պատմական գիտությունների թեկնածու, դոցենտ Ա. Մելքոնյանի վերջերս լույս տեսած մենագրությունը՝ «Մայիսյան ապստամբության պատմության հարցի շուրջը», որը մասնագետ ընթերցողի համար որոշակի հետաքրքրություն է ներկայացնում։

Որտեղից են գալիս տարակարծությունները, վիճելի հարցերը, որն է նրանց ակունքը։ Հեղինակը դրանց պատճառը համարում է մի շարք պարտիական պաշտոնական փաստաթղթերի բացակայությունը (էջ՝ 6) և 1936—1937 թթ. կամայականությունները՝ համաժողովրդական ապստամբության ղեկավարներին և ակտիվ մասնակիցներին ռեպրեսիայի ենթարկելը ու նրանց գրական ժառանգության, ինչպես նաև 15—16 տարում ստեղծված գրականությունն արգելելն ու շրջանառությունից հանելը։

Իրոք այդպես է։ Բարեբախտաբար վերջին տարիներս արգելվածը վերականգնվեց, լույս տեսավ նոր, լիարժեք աշխատություններ, պատմաբանները խոսեցին անկաշկանդ կերպով։ Բայց և այնպես շատ հարցեր մնացին վիճելի։ Կարծիքները բախվում են գլխավորապես հետևյալ հարցերի շուրջ. ա) Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների 1920 թ. հունվարյան կոնֆերանսի բանաձևը. բ) այդ կոնֆերանսի ընտրած կոմիտեի կազմը. գ) Արմենկոմի և ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեների կազմը Մայիսյան ապստամբության շրջանում. դ) զինված ապստամբության նախապատրաստման ու կենսագործման մասին։

Գրախոսվող գրքի հեղինակը առաջինն է, որ գրականության և արխիվային նյութերի լայն տեսություն է գրել և ըստ այդմ էլ հիմնավորել է իր կարծիքը, ձգտելով կայուն տեսակետ ստեղծել նշված հարցերի վերաբերյալ։ Ամենայն բարեխղճությամբ նա լուսաբանել է պատմական փաստերը, դեմքերն ու դեպքերը։ Ինչպես վայել է ճետազոտողին, նա պատրաստ է ողջունելու ամեն մեկին, ով «փաստերով հիմնավորված ուղղում կմտցնի» այս կամ այն հարցում (էջ 40)։

Վերցնենք վերջին երեք հարցերը. Առաջին կոնֆերանսի մասնակիցների կազմը, օրակարգի հարցերը ճշտվել և ցույց է տրվել, որ Արմենկոմի կազմի մեջ մտնում էին 13 հոգի, որոնցից 7-ը ընտրվել են կոնֆերանսում (Ս. Կասյան, Ա. Մռավյան, Ստ. Ալավերդյան, Ա. Նուրիջանյան, Հ. Պողոսյան, Դ. Շահվերդյան, Ս. Մարտիկյան), 6-ը՝ տարբեր ժամանակ կոոպտացիոն կարգով (Ղ. Ղուկասյան, Հ. Կոստանյան, Դ. Տեր-Սիմոնյան, Հ. Սարուխանյան, Ա. Գոգունց, Ա. Գրիգորյան)։ Արմենկոմի այս կազմը հաստատվում է կոնֆերանսի փաստաթղթերի և նրա մասնակիցների թողած նյութերի հիման վրա։ Սրանք կարևոր հարցեր են, քանի որ առանց դրանց Արմենկոմի գործունեության գնահատականը և ներպարտիական տարաձայնությունների էությունը, որոնք Մայիսյան ապստամբության վերլուծման համար խիստ կարևոր են, կմնան մշուշապատ։ Ճիշտ է հեղինակի տեսակետն այն մասին, որ կոնֆերանսը զինված ապստամբության կուրս ընդունեց, այն կապելով Կարմիր բանակի անմիջական օգնության և սահմանակից ռեսպուբլիկաներում կատարվող հեղաշրջման հետ։ Պարտիական կազմակերպությունները Արմենկոմի գլխավորությամբ երկարատև մասսայական աշխատանքներ ծավալեցին, որի շնորհիվ կարող էր տեղի ունենալ համաժողովրդական ապստամբությունը։ Այս տեսակետից համոզիչ են ընկ. Ա. Մելքոնյանի քննադատական դիտողությունները ուղղված որոշ հեղինակների, որոնք խեղաթյուրում են կոնֆերանսի որոշումները և մտացածին ավելորդ փաստարանությունների տեղիք տալիս։ Բնութագրելով Մայիսյան ապստամբությունը որպես սոցիալիստական, նա հիմնավորում է հակառակ տեսակետի սնանկությունը, ցույց տալիս, որ բնակչության մեծամասնությունը կազմող գյուղացիությունը ակտիվ մասնակցություն ունեցավ ապստամբությանը, իսկ հեգեմոն դերը շարժման մեջ պրոլետարիատին էր պատկանում։

Այնուհետև գրախոսվող գրքում ճշտված են Ալեքսանդրապոլի Մայիսյան խորհրդակցության օրվա և զինված ապստամբությանը վերաբերող մի շարք հարցեր։ Հեղինակը համոզում է, որ Արմենկոմի ներկայացուցիչները Ալեքսանդրապոլ են եկել մայիսի 6-ին, իսկ 7—8-ին խորհրդակցությունն է կայացել։ Ճիշտ է և այն, որ այս խորհրդակցությունը որոշում է ընդունել ապստամբությունը Ղազախից սկսելու մասին։ Հեղինակը ճշտում է նաև մի շարք շրջանների ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեների կազմը, պարզություն մտցնում Ալեքսանդրապոլն առանց դիմադրության հանձնելու հարցում և այլն։

Սակայն համոզիչ չեն նրա բացատրությունները կոնֆերանսի բանաձևի մասին։ Նա նորություն չի ասում. ի մի է հավաքել տեղեկությունները բանաձևի մասին, տվել նրա պատմությունը, բայց չի կարողացել մոտեցում ցուցաբերել պատմական դոկումենտի պատկանելության հարցի նկատմամբ։

Կոնֆերանսը բանաձև պիտի ընդուներ, բայց քանի որ այն գաղտնի էր, ստիպված էր շուտ ավարտել իր նիստերը, որի պատճառով էլ բանաձև մշակելը հանձնարարվեց հատուկ հանձ-



# ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ

## ՖԵԼԻԵՏՈՆԸ ՇՐՋԱՆԱՅԻՆ ԹԵՐԹԵՐՈՒՄ

Կյանքի հետ անմիջական կապը և մարդկանց հետ ամենօրյա շփումը մամուլի դրական առանձնահատկություններից մեկն է։ Կյանքն արտացոլելու, նրա երևույթներին արձագանքելու բազմաթիվ միջոցներ ունի շրջանային թերթը։

Բազմազան են մամուլի ժանրերը։

Ինչպես կյանքի, այնպես էլ գրականության աղն են ծիծաղը, հումորը, և դրա համար էլ ֆելիետոնն իր ուրույն տեղն ունի մամուլում։ Այն իր ձևով, կոնկրետությամբ անմիջապես գրավում է ընթերցողի ուշադրությունը. ընթերցողն սպասում է դրանց, կարդալով «ֆելիետոն» վերտառությունը, ակնկալում սուր, անվրեպ, համով-հոտով, մերթ անզիջում, խայթող, մերթ բարի, բարեկամական, բայց միշտ էլ սովորեցնող, ուղիներ ցույց տվող քննադատություն։

Մեծ են մեր ընթերցողների սպասելիքները ֆելիետոնիստներից, խիստ ինքնատիպ նրանց պահանջները՝ խմբագրությունից։ Ֆելիետոնը, նվիրված լինելով որևէ արտառոց, միաժամանակ հասարակական կարևոր նշանակություն ունեցող երևույթի, բնականաբար, պետք է համեմված լինի հումորով, ծիծաղ հարուցի։ Հակառակ դեպքում այն կվանի ընթերցողին, եթե նույնիսկ խմբագրությունն ամենախոշոր տառերով ազդարարի, թե իր տպագրածը ֆելիետոն է։ Դժբախտաբար այդպիսի օրինակներ շատ կարելի է բերել մեր շրջանային թերթերի էջերում տպագրված ֆելիետոններից։

Ապարանի Տաղկունք թերթը (խմբագիր՝ Կ. Արշակյան) 1965 թվականի 69-րդ համարում տպագրել է Ց. Միրզոյանի և Ա. Հակոբյանի Երկու դաս ֆելիետոնը։ Թեման ռուսաց և հայոց լեզվի դասավանդման վիճակն է Սանգյառ գյուղի դպրոցի 4-րդ և 6-րդ դասարաններում։

Դիալոգի օգնությամբ հեղինակները ցանկացել են իրենց հոդվածին ֆելիետոնի տեսք տալ։ Ո՛չ միայն ծիծաղ, այլև ժպիտ առաջացնելու անկարող նրանց գրածը ֆելիետոն չէին կարող դարձնել ո՛չ դաս կարդացող աշակերտի «Դե բոլ ա էլի, ընկեր Զոլյան, խո ես մենակ չե՞մ...» բացագանչությունը, ոչ էլ «Գորգին կարդում է մի մատը սահեցնելով տողերի վրայով, մյուսով էլ քիթը սրբելով» նկարագրությունը, ոչ էլ, մանավանդ, «Հետաքրքիր է, թե ժողկրթբաժնի ղեկավարներն ինչպես կգնահատեն այս երկու դասը» շաբլոն արտահայտությունը։

Սա ուղղակի անհաջող հաղորդում է անհաջող դասերի մասին։

Աշտարակի Արագած թերթի (խմբագիր՝ Կ. Նիկողոսյան) 89-րդ համարում տպագրված է Խ. Բադալյանի Հեքիաթի վիշապները ֆելիետոնը։ Այստեղ արծարծված է հասարակական շատ կարևոր նշանակություն ունեցող մի խնդիր. Աշտարակում վերջին մեկ տարվա ընթացքում քառապատկվել է խմելու ջրի քանակը, սակայն, բնակչությունը լրիվ ապահովված չէ դրանով։ Մեղավորը ջրգողերն են՝ Սուրիկ Գևորգյանը, Հարեթնակ Ներսիսյանը, Վալեն Հովհաննիսյանը, Գուրգեն Հովհաննիսյանը (նշված են հականեհանվանե)։ Իրենց բակերում խոշոր (մինչև 4000 լիտր տարողությամբ) ջրամբարներ կառուցելով և այգիներն աղբյուրի ջրով ոռոգելով, քաղաքի բնակչությանը նրանք զրկում են խմելու ջրից։

Հեղինակին թվացել է, թե այդ ջրգողերին հեքիաթների վիշապների հետ համեմատելով միայն հնարավոր կլինի ֆելիետոն ստեղծել. խմբագրության պատշաճ օգնության, գրական մըշակման դեպքում կստացվեր լավ ֆելիետոն։ Սակայն այս ձևով այն չի համապատասխանում վերտառված ժանրին, թեև որպես արժեքավոր հոդված այն պատիվ է բերում խմբագրությանը։

Շատ կարևոր նշանակություն ունի թեմայի ընտրությունը։ Ամեն երևույթ, դեպք, իրադարձություն չէ, որ կարող է ֆելիետոնի նյութ ծառայել։ Օրինակ, № 88-ում տպագրված Ն. Նագինյանի Բողոքները կուզան նովեն ու ծովեն «ֆելիետոնը»՝ նվիրված կինոցանցի (ավելի շուտ նրա պետի) աշխատանքին։

Ֆելիետոնն անհաջող է ամենից առաջ այն պատճառով, որ իր կառուցվածքով ու տենդենցներով չի համապատասխանում սովետական ֆելիետոնի սկզբունքին ու տրադիցիային. այն գըրված է անբարյացակամ տոնով. գործին օգնելու ոչ մի միտում չեք գտնի թերթի համարյա կես էջը գրավող այդ հոդվածում։

Ինչպես երևում է, կինոցանցի պետի դափնիները հանգիստ չեն տալիս հոդվածի հեղինակին և նկատելով այդ՝ խմբագրությունը չպետք է տպագրեր մեր տրադիցիաներին խորթ այսպիսի տենդենցիոզ ու անմշակ հոդվածը։

Եթե առաջին «ֆելիետոնում» խմբագրությունը շոշափում է հասարակայնորեն կարևոր մի խընդիր, ճիշտ է դիրքորոշում ընթերցողին ու ձաղկում մարդկանց քաղքենիական, էգոիստական ձգտումները, ապա երկրորդ հոդվածում այդ սկզբունքային դիրքերից սահում է դեպի ճըղճիմ, անձնական հաշիվների ճահիճը։

Բարձր սկզբունքայնության օրինակ է Եղեգնաձորի Վերելք թերթի (խմբագիր՝ Խ. Հարությունյան) Ասպարեզը Ռաֆիկինն է... «ֆելիետոնի փոխարեն» հոդվածը (№ 130, հեղինակ՝ Ա. Անանյան)։ Այն ևս ֆելիետոն չէ, բայց «Հեքիաթի վիշապների» նման բարձրացնում է կարևոր մի թեմա։ Գետափ գյուղում էլեկտրականություն պետք է անցկացվի։ Գյուղսովետի նախագահ Սերյոժա Մկրտչյանը և Տահումյանի անվան սովխոզի տեղամասի վարիչ Լազր Թադևոսյանը հանգիստ չունեն, օր ու գիշեր զբաղված են էլեկտրիֆիկացման գործով։ Բայց հենց որ իրենց և մի քանի մոտիկ մարդկանց բնակարանները էլեկտրալուսավորություն է անցկացվում, ոչինչ չի մնում նրանց էնտուզիազմից. ի՜նչ փույթ, որ գրադարանում իսկ լույս չկա։ Գյուղի հետագա էլեկտրիֆիկացման բախտը թողնվում է էլեկտրիկ Ռաֆիկին, որը իրեն դիմողներին կամայականորեն ասում է՝ — Քեֆս չի ուզում, չեմ քաշում...

Ստեղծագործական ուրույն ջանքեր ու հնարանք, ֆելիետոնիստին հատուկ սրամտություն է անհրաժեշտ գտնված նյութը ֆելիետոն դարձնելու համար։

Հոկտեմբերյանի Կոմունիզմի համար թերթը (խմբագրի տեղակալ՝ Կ. Սարգսյան) շատ ընդարձակ տարածություններ է տրամադրում ֆելիետոնին, դրանք, սակայն, բերքատու հեկտարների չեն վերածվում, այլ դառնում են կորած ցանքատարածություն՝ ֆելիետոնի իմաստով։ Քանի դեռ չեն հասել վիրաբույժի դանակին ֆելիետոնում (№ 104, հեղինակ՝ Գ. Հովհաննիսյան) շոշափված է Բամբակաշատ գյուղի բժըշկական տեղամասի և նրա վարիչ Խաչիկ Մանուկյանի վատ աշխատանքը։ Վերջինս ջանում է դեռ չապաքինված հիվանդներին դուրս գրել հիվանդանոցից, կասկածելով, թե նրանց վիճակը կվատանա, և ինքը պատասխանատվություն կկրի դրա համար։ Ընդարձակ այդ հոդվածն ընթերցողին չի համոզում, քանի որ 216 տողանոց այդ գանակոծության մեջ գեթ մեկ հիվանդի ազգանուն չենք գտնում, որին բժիշկ Մանուկյանն առանց բուժելու դուրս վռնդած լինի հիվանդանոցից։

Ինչպես տեսնում ենք, Գ. Հովհաննիսյանն էլ Աշտարակի Ն. Նագինյանի նման առանձին համակրանք չունի իր հերոսի հանդեպ, սակայն ինչպե՞ս է խմբագրությունը թույլ տալիս, որ առանձին մարդկանց այդ սուբյեկտիվ զգացմունքները դրսևորվեն թերթի էջերում։ Նույն թերթի № 101-ում ավելի ընդարձակ տեղ է գրավել Գ. Մարտիրոսյանի Բոռյազն ավտոբուսում ֆելիետոնը։

Եթե հավատանք թերթին և հոդվածագիր Գ. Մարտիրոսյանին, այդ օրը մի ահավոր բան է կատարվել Հոկտեմբերյանից Երասխահուն մեկնող ավտոբուսում։ Ավտոբուս մտնելով Գ. Մարտիրոսյանն զգում է, որ ուղևորները «բոլորն էլ վախեցած են, սարսափելի երկյուղ կա դեմքերին... մաշվել են, դարձել են մի բուռ»։

Բայց լավ վիճակում չէ և ինքը։ Քիչ հետո, ինչպես պատմում է հեղինակը, «ցնցվեցի, արյունը սառեց երակներիս մեջ», իսկ դիմացի կինը, ինչպես շարունակում է հեղինակը «գունատվեց, կոպերը կպտեցին և թուլացած ընկավ ամուսնու վրա»։ Ապա «հարկադրված աչքերը բացեց, թռավ նստեց տեղում, և ձեռքի մեջ առած ամուսնու խոնարհ գլուխը շուռ տվեց ետևի նստարաններից մեկի կողմը... ամուսինը խփված սարյակի պես թրմփաց կաշվե աթոռին»։

Վերջապես ի՞նչ է տեղի ունենում այդ առեղծվածային ավտոբուսում։ Բանից պարզվում է, որ նրա վերջին շարքում գտնվում է շղթայակապ «բորյաղ» շունը, որը համարձակվել է մի անգամ «հա՛ֆ» անել։

Արժե՞ արդյոք այդքան տեղ վատնել (256 տող պետիտով) միայն այն բանի համար, որ շանը տեսնելով՝ թերթի ֆելիետոնիստի լեղին ճաքել է։

Բերված երկու օրինակից երևում է, որ Հոկտեմբերյանի թերթի խմբագրությունը լավ չի պատկերացնում, թե ինչը կարող է ֆելիետոնի նյութ դառնալ, մոռանում է, որ այդ ժանրի գըլխավոր հատկանիշներից մեկը լակոնիկությունն է։

Սևանի շրջանի Սևան թերթի (խմբագիր՝ Ս. Մուրադխանյան) 1965 թ. վերջին համարներից մեկում տպագրված է Յուրիկ Խաչատրյանի

# ԼՐԱԳՐՈՂԻ նոթեր

## ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ԺԱՄԱՆՑԻ ՄԱՍԻՆ *

Մի անգամ ընկերոջս հետ, որը նոր էր եկել ծովափից, որոշեցինք մտնել որևէ սրճարան և փոքր-ինչ զրուցել: Մտանք: Ոչ մտնեինք: Պատկերացրեք ծխապատ մի դահլիճ՝ լի անորոշ, ականջ ծակող ու շշմեցնող աղմուկով, ալիքվող ծխի միջից երևացող քրտնաթոր, գինովցած դեմքեր, ափսեների չխկոց, թխկոց: Ո՛չ թե սրճարան, իսկական մի գինետուն:

Ընկերս դառն քմծիծաղեց ու ասաց.

— Մեկ ամսում ես էի սովորել: Պատկերացնո՞ւմ ես: Ծովափնյա այդ փոքրիկ քաղաքի ոչ մի սրճարանում ու ռեստորանում նման բան չեմ տեսել: Ավելին, ընկերս մի անգամ մատուցողուհու ուշադրությունը հրավիրելու նպատակով պատառաքաղով խփեց ափսեին ու դրա համար մեկ շաբաթ կալանավորվեց: Միլիցիայի բաժանմունքում գտան, որ դա մանր խուլիգանություն է: Ի՞նչ ես կարծում, ճի՞շտ է:

Կարծում եմ՝ ճիշտ են վարվել ծովափնյա քաղաքի հասարակական կարգի պահպանման նախանձախնդիր մարդիկ: Մի՞թե, հիրավի, մանր խուլիգանություն չէ, երբ տհաճ շարժումով, բացականչությամբ, բարձր խոսակցությամբ խանգարում ես կողքիդ նստած մարդկանց:

Հիշելով ծովափնյա միջադեպը և օգտվելով առիթից, ուզում եմ ընթերցողի հետ խոսել մեր քաղաքի սրճարանների, երիտասարդության հանգստի ու ժամանցի և մի քանի հարակից հարցերի մասին:

Մենք ապրում ենք բարդ իրադարձություններով հարուստ ժամանակաշրջան: Այժմ մարդը չի կարող քաշվել մի անկյուն և սառնասրտորեն որոնալ վաստակած հացը, պարփակվել, չեխովյան հերոսի նման պատենավորվել իրեն իր մեջ: Մեր փոթորկահույզ կյանքի ալիքները, միևնույն է, նրան կառնեն իրենց շրջապտույտի մեջ:

Կատարելով պետական, հասարակական, քաղաքական, շինարարական վիթխարի աշխատանք, մարդն այսօր չի կարող իր բոլոր հետաքրքրություններին բավարարություն տալ միայն տանը, որովհետև նրա հետաքրքրությունների ու պահանջների շրջանակը շատ է ընդլայնվել:

Մարդը, մանավանդ երիտասարդ մարդը, ցանկանում է աշխատանքային կամ ուսումնական հոգսերից հետո լավ երաժշտություն լսել, պարել, զրուցել, մի բաժակ սուրճի հետ թեկուզ մեկ բաժակ որևէ այլ, ոչ այնքան էլ «անմեղ» ըմպելիք վայելել: Միանգամայն օրինական և, կարելի է ասել, ամենասովորական ցանկություններ են սրանք: Սակայն որտե՞ղ և ինչպե՞ս հանգստանալ, զվարճանալ. թատրոնո՞ւմ, համերգասրահներո՞ւմ, նախապես կազմակերպված նըպատակային երեկոների, հանդիպումների ժամանա՞կ, սպորտային խմբակներո՞ւմ...

Հանգստանալու և զվարճանալու վայրեր կարելի է շատ թվել: Բայց արդյոք այդ բոլոր վայրերում կարելի՞ է արդյունավետ և օգտակար ժամանակ անցկացնել: Այո՛: Միայն մի վերապահությամբ, երբ հասարակական բոլոր կազմակերպությունները սրտացավ վերաբերմունք ունենան երիտասարդության դաստիարակության, նրա արդյունավետ ու հաճելի ժամանցի կազմակերպման նկատմամբ: Ահա հենց այստեղ է, որ,

* Սույն ակնարկում շոշափում ենք միայն սրճարանների հարցը:



ինչպես ասում են, խոփը դեմ է առնում քարին:

Երևանը, բոլորիս սիրելի, փառաբանված, հիրավի բուռն զարգացում ապրող մեր քաղաքը, վերջին երկու-երեք տարում շատ ավելի է գեղեցկացել: Կես միլիոնից ավելի բնակչություն, հզոր արդյունաբերություն ունեցող ռեսպուբլիկայի ու ողջ հայության կուլտուրայի, գիտական մտքի կենտրոնն է այն: Սակայն ամեն ինչ մեզ մոտ համաչափ ու ներդաշնա՞կ է զարգանում, արդյոք մեր քաղաքային կուլտուրան, վարվեցողությունը նույնպիսի՞ արագությամբ ու կազմակերպվածությամբ են արմատավորվում ու տարածվում, ինչպես գիտական միտքը, արդյունաբերությունը, շինարարությունը: Դժվար է խոստովանել, բայց այդ քաջությունը պետք է ունենալ: Փողոցում դեռևս կարելի է ականատես լինել տուրուդմբոցի, հայհոյանք ու անվայելուչ խոսքեր լսել, հանդիպել երիտասարդների, որոնք անգործությունից անվայել արարքներ են թույլ տալիս ու հացկատակների տպավորություն թողնում... Եվ զայրացուցիչն այն է, որ այդ ամենը փոխադրվում է ռեստորան, սրճարան և այլուր:

Ինչպես հայտնի է, վերջերս մեզ մոտ մի քանի սրճարաններ են կառուցվել՝ **Արաքս**, **Կռունկ**, **Արևելյան քաղցրավենիքներ**, **Ֆլորա**, **Մասիս**, **Երիտասարդական** և այլն: Դրանցից յուրաքանչյուրն ունի ճարտարապետական ուրույն ոճ ու հարդարանք, բազմազան է սպասարկումը:

Քայլերդ ուղղում ես դեպի **Արաքս** ու երանությամբ մտածում, որ այստեղ կարելի է լավ հանգստանալ, հաճելի ժամանակ անցկացնել: Մտնում ես ներս: Սրճարանի կարգուկանոնին քաջատեղյակ այցելուն կարող է զարմանալ: Մարդիկ ինչո՞ւ են հարբած, չէ՞ որ այստեղ ալկոհոլային խմիչքներ չեն մատուցվում: Սակայն բավական է մի հայացք գցել սեղաններին, և ամեն ինչ կպարզվի: Բանն այն է, որ շատ այցելուներ օղի, կոնյակ, գինի են դրսից բերում և բացարձակ կամ գաղտագողի խմում:

Նման դեպքի ականատես եղանք վերջերս, Արաքս սրճարանում: Սեղանի շուրջ նստել էին երկու երիտասարդ տղա ու մի աղջիկ: Վերցրել էին մի քիչ ուտելիք և գինու շիշը բացահայտորեն դրել սեղանին, խմում էին: Քիչ հետո սեղանին հայտնվեց երկրորդ շիշը:

Այդ պահին ներս մտավ հերթապահ միլիցիոները:

— Ա՛յ տղերք, ախր չի կարելի այստեղ խմել.— նկատելով շիշը՝ ասաց նա:

— Գիտե՛նք, գիտե՛նք.— արհամարհանքով պատասխանեց տղաներից մեկը,— դու գնա քո գործին, մենք հիմա կվերջացնենք:

Միլիցիոները ձեռքը թափ տալով հեռացավ:

Իսկ երեկոյան ժամերին մեծ աշխուժությամբ են աշխատում հավաքարարները: Սեղանները հավաքելիս տակից դատարկ շշեր են վերցնում: Չէ՛ որ դա լրացուցիչ եկամուտ է:

Արաքսում երաժշտություն է լինում միայն շաբաթ և կիրակի օրերին: Ինչո՞ւ:

— Գիտե՞ք,— բացատրում է սրճարանի դիրեկտորը,— որոշ երիտասարդներ այնպիսի այլանդակ ձևերով են պարում, որ մարդ ուղղակի ամաչում է: Ոգևորության պահերին հաճախ սեղան ու աթոռ են ջարդում:

Արաքսում զարմանք է պատճառում և այն, որ մարդիկ սեղանների շուրջը նստում են վերարկուով և նույնիսկ գլխարկով, չնայած սրճարանը հանդերձարան ունի:

Կռունկն ավելի աշխույժ սրճարան է: Այստեղ բազմատեսակ և համեղ են խորտիկները, կա նաև՝ նվագախումբ: Այն էլ՝ ամեն օր: Կռունկ շատերն են հաճախում և, հատկապես, երեկոները: Մնում են երկար, գրեթե մինչև փակվելը: Ի՞նչ կա որ, թող մնան, հանգստանան, զվարճանան: Բայց չափը չանցնեն: Չէ՛ որ մարդ ակամա սարսուռ է զգում, երբ տեսնում է երիտասարդ, գրեթե պատանի տղաների ու դեռահաս աղջիկների՝ ծխախոտը շուրթերին, մշուշված աչքերով: Գինարբուքի որոշ աստիճանից հետո նրանք սկսում են պարել:

Բոլորը հիշում են, նախկինում անպատշաճ էր համարվում նման վայրերում պարելը: Այժմ այդ սովորական է, վատ էլ չէ: Ընդհակառակը. հաճելի է, երբ պարում են ուրիշները, և պարում ես դու: Բայց արդյոք պե՞տք է պարել այնպես, որ մյուս այցելուների զայրույթը շարժվի:

Թող ընթերցողը չզարմանա: Ոչ ոք դեմ չէ ո՛չ արևմտաեվրոպական, ո՛չ ամերիկյան ու ճապոնական և ո՛չ էլ աֆրիկյան երաժշտությանն ու պարերին: Բայց երբ այդ ամենը գռեհկացվում է, չափն անցնում, կարող է զզվանք, նողկանք առաջացնել: Մի՞թե արտասահմանյան կինոնկարներում, հեռուստատեսային ժապավենների վրա, էստրադային բեմահարթակներում քիչ հաճելի, նույնիսկ հիացմունք պատճառող պարեր ենք դիտում ու երգեր լսում: Հապա ինչո՞ւ դեն նետել լավը, վերցնել վատը և ինչո՞ւ լավը գռեհկացնել:

Ո՞ւմ հայտնի չէ, որ մեր երգն ու պարն էլ են հիացրել աշխարհին, որ մեր երգ ու պարի մեջ կան նազանք ու հմայք, աշխատանքի պաթոս ու ապագայի ձգտում, երազանք ու սեր, և որ սիրել ազգային արվեստը, նշանակում է լինել հայրենասեր, ունենալ ազգային հպարտություն, առաքինություններ, առանց որի մարդը իր ժողովրդի ու հայրենիքի արժանավոր զավակը չի կարող լինել: Ցավալի է, որ սրճարանային նվագախմբերի երգացանկում ազգային երգեր ու պարեր չկան:

Սրճարանային անկարգությունները մեծ մա-

սամբ սկսվում են ալկոհոլի չարաշահումից: Արդյոք այդ կանխելու համար չէ՞, որ սրճարաններում արգելված է գինու, օղու, կոնյակի վաճառքը:

Ռեստորան-սրճարանների տեսակի ղեկավարները երանությամբ են հիշում այն ժամանակները, երբ բոլոր սրճարաններում խմիչքների վաճառքը թույլատրվում էր:

— Եկամուտը շատ էր, պլանները կատարում և գերակատարում էինք,— ասում են նրանք:

Ընթերցողը, հավանաբար, ծանոթ է «Неделя»-ի անցյալ տարվա համարներից մեկում տպագրված «Ազատ երեկո» հոդվածին: Այնտեղ այսպիսի մի հետաքրքրական փաստ կա:

«Մի անգամ,— գրում են հոդվածի հեղինակները,— Հունգարիայի ժողովրդական ռեսպուբլիկայում մենք զրույց ունեցանք այն ընկերոջ հետ, որն զբաղվում էր երիտասարդության հանգստի հարցերով: Նա պատմեց, որ Բուդապեշտում կարելի է ռեստորանում կամ սրճարանում երեկոն անցկացնել և դրամը ծախսել միայն սուրճի, քաղցրեղենի, ծայրահեղ դեպքում՝ մի բաժակ սեղանի գինու համար: Մենք զարմացանք, իսկ եկամտաբերությո՞ւնը: Եվ լսեցինք պատասխանը. «Նախ՝ տնտեսական եկամտաբերությունը կարելի է ապահովել նաև առանց դրամ «քամելու» հաճախորդներից՝ ռեստորաններում և սրճարաններում տեղերը շատացնելու միջոցով: Եվ երկրորդ, տվյալ դեպքում առաջնահերթ խնդիրը ո՛չ թե տնտեսական, այլ հոգեկան եկամտաբերությունն է: Չէ՞ որ երիտասարդությունը հասարակական վայրերում երբեք իրեն թույլ չի տա այն, ինչ կարող է թույլ տալ առանձնատներում»:

Լավ է ասված, չէ՞: Հարկավ, երբ հարցը երիտասարդության ժամանցին և դաստիարակությանն է վերաբերում, եկամտաբերությունը պետք է դառնա երկրորդական հարց: Բանն այն է, որ սրճարաններում երիտասարդությունն այժմ ձանձրանում է, չեն կազմակերպվում ուշագրավ միջոցառումներ, հետաքրքրական հանդիպումներ:

Ավագ սերունդը շատ լավ է հիշում, որ մի ժամանակ Երևանի միակ Կաֆե-տուրիստն էին հաճախում մեր անվանի գրողներ ու երաժիշտներ՝ Շիրվանզադեն, Չարենցը, Դեմիրճյանը, Ռոմանոս Մելիքյանը և ուրիշներ: Նրանք երեկոն անց էին կացնում մի բաժակ սուրճով, գինով կամ կոնյակով: Բայց ավելի շատ զրուցում էին, վիճում, մտքեր փոխանակում արվեստի ու գրականության հարցերի մասին: Եվ սրահում նըստած շարքային մարդկանցից ոչ ոք չէր համարձակվում բարձր խոսել: Մարդիկ գնում էին մեծ գրողներին ու արվեստագետներին տեսնելու, լսելու նրանց իմաստուն խոսքը: Այն ժամանակ ոչ ոք նախապես չէր կազմակերպում այս ամենը: Ամեն ինչ ինքնաբուխ էր, բնական:

Պատերազմին նախորդող երեք-չորս տարիների և դրա ընթացքում այս հիանալի սովորույթը մոռացվեց հասկանալի պատճառներով: Պատերազմից հետո, դաժան հասկանալի պատճառներով, երիտասարդությունը (և ո՛չ միայն երիտասարդությունը) ո՛չ զվարճանալու ժամանակ ուներ, ո՛չ էլ ամենասովորական հանգստի մասին էր մտածում: Հարկավոր էր քայքայված տնտեսությունը վերականգնել, կառուցել, կառուցել ու կառուցել: Իսկ ա՞յժմ: Չէ՛ որ պայմանները բոլորովին փոխվել են, և հանգիստն ու հաճելի ժամանցը դարձել օրինական պահանջ: Ո՞վ պետք է ուղղություն տա, կազմակերպի երիտասարդության հանգիստը, նրա մեջ ներարկի լավի, գեղեցկի զգացումը, ստեղծի ընկերական անկեղծ, հաճելի մթնոլորտ: Այս խնդիրը հիմնականում դրված է կոմերիտական կազմակերպությունների վրա: Կան կոմերիտական այնպիսի կազմակերպություններ, որոնք մատների արանքով են նայում այդ պատասխանատու գործին: Միաժամանակ պետք է խոստովանել, որ մայրաքաղաքում քիչ չեն այնպիսիք, որոնք բարեխղճորեն են կատարում այդ խնդիրը:

Այսպես՝ հետաքրքրական երեկոներ ու հանդիպումներ են կազմակերպվել Արաքս սրճարանում, Մասիս ռեստորանում և այլուր: Փաստերը ցույց են տալիս, որ երբ այդ միջոցառումներին մասնակցում է կոմերիտական ակտիվը, երբ պարտիական կազմակերպությունների ներկայացուցիչները օգնում, միջամտում, խորհուրդներ են տալիս երիտասարդներին, դրանք անցնում են հաճելի, բովանդակալից: Այդպիսի անմոռաց հանդիպումների ու երեկոների լավ հուշեր ունեն պետական համալսարանի, պոլիտեխնիկական ու բժշկական ինստիտուտների ուսանողները:

Սակայն, պատահում է և հակառակը: Կազմակերպված երեկոն վեր է ածվում տուրուդըմբոցի: Օրջոնիկիձեի շրջանի երիտասարդությունը Մասիս ռեստորանում խնջույք էր կազմակերպել: Հայֆիլհարմոնիայի ադմինիստրատոր Վիկտոր Նախիջևանյանը և իր ընկերները փորձում են մտնել սրահը: Խնջույքի մասնակիցները աշխատում են թույլ չտալ, վերջինները համառում են, և սկսվում է կռիվը: Բանը, իհարկե, վերջանում է միլիցիայի միջամտությամբ: Կռիվ սարքողները պատժվում են, բայց երեկոյի հմայքը կորչում է, ընկնում է մարդկանց տրամադրությունը:

Այս դեպքը ինքնին ասում է, որ կոլեկտիվ խնջույքն էլ պետք է կազմակերպել խելացի, զգույշ, իսկ երբ նման խնջույքներում չարաշահվում է խմիչքը, հաճախ այն վերջանում է անախորժություններով:

Երիտասարդության ժամանցի ու հանգստի կազմակերպմամբ շատ քիչ են զբաղվում և այնպիսի կազմակերպություններ, ինչպիսիք են՝ գրողների, կոմպոզիտորների միությունները, սպորտային ընկերությունները: Երիտասարդությունը հափշտակվում է ֆուտբոլով, բայց ֆուտբոլ խաղալու տեղ չունի, սիրում է լողալ, բայց բավականաչափ լողավազաններ չկան: Սպորտային մասսայական միջոցառումներ մեր քաղաքում կազմակերպվում են միայն դեպքից դեպք: Շատ քիչ գործարաններ, ֆաբրիկաներ, ուսումնական հաստատություններ են ձմռանը սպորտային արշավներ կազմակերպում, ասենք, դեպի Ծաղկաձոր, որը ձմեռային սպորտի հիանալի պայմաններ ունի:

Գրողների և կոմպոզիտորների միությունները մեր երիտասարդությանը քիչ երգեր ու բանաստեղծություններ են տալիս, քիչ են հանդես գալիս նրանց առջև: Մինչդեռ ինչպիսի՜ հրաշալի միջոցառումներ կարելի է կազմակերպել:

Կոմպոզիտորների միությունն, օրինակ, իր դահլիճում պարբերաբար կազմակերպում է նոր ստեղծագործությունների ունկնդրում: Որպես կանոն, այս միջոցառումներին մասնակցում են ընտրյալները միայն՝ արվեստագետները: Ինչո՞ւ չի կարելի կոմպոզիտորների այս յուրատեսակ հաշվետվության երեկոն կազմակերպել, ասենք, Կոունկ կամ Արաքս սրճարաններում:

— Ինչպե՞ս թե,— կառարկեն ոմանք,— հանդես գալ սրճարանո՞ւմ. ա՞յդ էր պակաս:

Բայց սպասեցեք, հարգելի ընկերներ. ո՞ւմ համար եք ստեղծագործում դուք՝ միայն ընտրյալ արվեստագետների՞, թե՞ ժողովրդի համար:

— Ժողովրդի՛,—հպարտությամբ կասեն կոմպոզիտորները:

Դե, ուրեմն, բարի եղեք առաջին երգը հնչեցնել գործարանում, ինստիտուտում, կոլտնտեսությունում, թող բանվորը, կոլտնտեսականն ու ուսանողը լինեն ձեր դատավորը, չէ՞ որ, ի վերջո, ձեր ստեղծագործությունները նրանք են ընդունելու կամ մերժելու:

Հապա գրողների միությո՞ւնը: Մի ժամանակ միության դահլիճում կազմակերպվում էին «Մեկ բանաստեղծության երեկո», «Կարճ պատմվածքի երեկո» և այլն: Այժմ այդ լավ սովորույթը մոռացության է տրվել: Բայց պետք է կրկին վերհիշել: Եվ կազմակերպել ոչ թե սեփական դահլիճում, որի դռները բաց են փոքրաթիվ մարդկանց համար, այլ թեկուզ սրճարանում, որի դռներն այդ օրը կբացվեն որևէ գործարանի բանվորների առջև:

Գրողների միությունը գրեթե ամեն օր ռեսպուբլիկայի մոտ ու հեռու քաղաքներից, բանավաններից, գյուղերից խնդրագրեր է ստանում: Բանվորներն ու կոլտնտեսականները խնդրում են գրողներին գալ իրենց մոտ, հանդիպում ունենալ, նոր բանաստեղծություններ կարդալ, մի քանի խոսք ասել, ծանոթանալ իրենց կյանքին ու աշխատանքին: Եվ գրողները գնում են: Այդ հանդիպումներն անցնում են ջերմ մթնոլորտում: Ոչ մի գրող՝ անվանի, թե սկսնակ, չի կարող բողոքել, թե իրեն վատ են ընդունել, չեն լսել, անտարբեր են եղել: Տեսնո՞ւմ եք, ուրեմն, հասարակ շարքային մարդը ծարավ է գրողի խոսքին, երբ կուզեք նաև՝ տեսքին: Հապա ինչո՞ւ այդ շարքային մարդուն զրկել սրճարան և ելույթ չունենալ հաճելի սեղանի շուրջը: Ոչինչ, թող այդ օրը սրճարանը քիչ եկամուտ ունենա, չէ՞ որ կարևորը «հոգևոր եկամտաբերությունն է»:

Կամ՝ կերպարվեստագետների միությունը: Վերջերս լավ սովորույթ է մշակվել այստեղ. շրջիկ ցուցահանդեսներ կազմակերպել կոլտնտեսություններում: Առաջին փորձերը լավ արդյունք են տվել: Իսկ ինչո՞ւ չփորձել այդ շրջիկ ցուցահանդեսը տանել նաև սրճարան: Կարելի է համոզված լինել, որ սրճարան մտնողն այդ օրը արբենալու ցանկություն չի ունենա, ավելի շուտ նա կդիտի նկարիչների նոր ստեղծագործությունները և կաշխատի իր անաչառ խոսքն ասել հեղինակներին: Իսկ եթե փորձի այդ նույն հեղինակի հետ մի երկու բաժակ էլ գինի խմել, ինչ կա որ, թող անուշ լինի:

Ուղղակիորեն ժողովրդի առջև հանդես գալու սովորույթը շատ հին է: Հիշենք, որ Հռոմում բանաստեղծներն ու ճարտասանները հանդես էին գալիս ոչ այլուր, քան... պանդոկներում: Եվ դրա մեջ ոչ մի վատ բան չէին տեսնում: Նրանց համար կարևորը իրենց նոր ստեղծագործությունը ժողովրդին մատուցելն էր:

Ոչ ոք չի փորձում, հարկավ, ինչ-որ զուգահեռ անցկացնել հին Հռոմի և մեր ժամանակների միջև: Այսօրվա գրողն իր նոր ստեղծագործությունը պանդոկում կարդալու հարկը չունի, որովհետև պանդոկ հասկացողությունն այսօր ամենևին այլ է, և մեր գրողն էլ հնարավորություն ունի իր երկը հազարավոր օրինակներով տպագրելու: Բայց եթե հները ժողովրդի առջև հանդես գալու և նրա խոսքը լսելու պահանջն զգում էին, ապա այդ պահանջն այսօր հազարապատիկ ավելի մեծ պետք է լինի, քանզի մեր գրականությունն ու արվեստը ամենաժողովրդականն են:

Որտե՞ղ և ինչպե՞ս պետք է հանգստանա մեր երիտասարդությունը. կարևոր, բարդ, հրատապ հարց է այս, որի մասին պետք է խորհեն ո՛չ միայն կոմերիտական կազմակերպությունները: Սա ամբողջ հասարակության մտահոգության առարկան պետք է դառնա: Որովհետև զբաղվել երիտասարդության կոմունիստական դաստիարակությամբ և չհոգալ նրա հանգստի ու ժամանցի կազմակերպման մասին, չի կարելի: Հանգստի կազմակերպումը դաստիարակության անբաժանելի մասն է:

Ռ. ԱԲԱԼՅԱՆ

# Նոր մարդու ԵՐԿՈՒՆՔԸ

## ՆՈՐԻՑ ՈՒՍՈՒՑՉԻ ՀԵՂԻՆԱԿՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

«Սովետսկայա ժենշչինա» ամսագրում դեռահասների դաստիարակությանը նվիրված մի հոդվածում մեջբերված էր անվանի մանկավարժ Ա. Ս. Մակարենկոյի դաստիարակության մեթոդներից մեկ օրինակ։

Տասներկուամյա պատանին երգելով գնում է փողոցով։ Դիմացից գալիս է մի աղջնակ։ Հավասարվելով նրան, չարաճճին առանց տատանվելու ձգում է նրա մազերից ու շարունակում ճանապարհը։ Աղջիկը լալիս է։ Թվում է, այստեղ առանձնապես ոչինչ չկա։ Ո՞ր պատանին չէ իր հասակակից աղջիկներին լացացրել և ընկերների շրջանում պարծեցել իր «խիզախությամբ»։ Առաջնորդվելով մարդու կյանքի պատանեկան շրջանի այս «օրենք»-ով, մենք հաճախ ուշադրություն չենք դարձնում նման «մանրունքներ»-ին, համարելով այդ սովորական երևույթ։ Բայց Մակարենկոն, որ նկատել էր տղայի վարմունքը, անհետևանք չթողեց այն։ Դեպքից քիչ անց պատանին նրանից գրություն է ստանում. «Այսօր երեկոյան ժամը 11-ին անցիր ինձ մոտ, առանձնասենյակ»։ Եվ նա ամբողջ օրը ապրումներ է ունենում, մտածում, որ իրեն կնախատեն, ամոթանք կտան, իսկ երբ վախվորած մտնում է առանձնասենյակ, Մակարենկոն հարցնում է միայն. «Հասկացա՞ր». «Հասկացա, Անտոն Սեմյոնովիչ»,— լինում է պատասխանը. «Դե այժմ գնա քնի՛ր»։

Մեկնաբանություններն ավելորդ են։ Փորձառու մանկավարժը չի բռնում երկար բացատրություն պահանջելու և նախատելու ուղին։

Իսկ մեր պրակտիկայում հաճախ չկշռադատված վերաբերմունքով ինքներս ենք աշակերտներին ստիպում գործելու երկրորդ սխալը։ Մի դպրոցում աշակերտներից մեկը չէր հաճախում դասերին։ Իսկ ի՞նչն էր պատճառը. խուսափել է հանրօգուտ աշխատանքից, ուսուցիչը դիտողություն է արել, սակայն դա չի ազդել աշակերտի վրա։ Հաջորդ օրը նա պահանջում է երեխայից, որ ներողություն խնդրի իրենից։ Պատանեկան զգայուն ինքնասիրությունը թույլ չի տալիս նրան՝ ընկերների ներկայությամբ ներողություն խնդրել, ու նա դուրս է հրավիրվում դասարանից, պայմանով՝ «մինչև ներողություն չխնդրի, դպրոց չմտնի»։

Նման մոտեցումը, կարծում ենք, ոչ մի օգուտ չի բերի գործին, այլ, ընդհակառակը, կհեղինակազրկի ուսուցչին երեխաների աչքում։ Անհատական զրույցն ավելի օգտակար կլիներ։



Աշակերտն ամենուր պետք է զգա ուսուցչի հոգատարությունը, մտերմությունը։ Զրույցը երեխայի հետ պետք է վարել այնպես, որ նա խոսի ազատ, անկաշկանդ։ Եվ լավ կլինի որ թե՛ ուսուցիչը, թե՛ որևէ ավագ ընկեր, եթե չի կարողանում խաղաղ ճանապարհով «նվաճել» փոքրերի հոգին, «ներխուժման» փորձեր չանի։

Մանկավարժներից ոմանք շատ հաճախ ծնող են կանչում կամ ամեն փոքր առիթով բողոքում դպրոցի դիրեկտորին։ Այսպես. աշակերտը դասի ժամանակ որևէ անվայել արարք թույլ տվեց. «Գրքերդ հավաքի՛ր ու ազատի՛ր դասարանը, իսկ վաղը ծնողիդ կբերես դպրոց։ Այլապես դասարան չես մտնի, հասկացա՞ր»։ Դե, իհարկե, հասկացավ, բայց՝ յուրովի։ Եթե տանն ասի, որ դպրոց են կանչել, կհարցնեն՝ ինչո՞ւ, ի՞նչ ես արել։ Կնախատեն, գուցե և ծեծեն... Ուստի, երեխան բռնում է խաբելու ճանապարհը՝ ի տես տնեցիների պայուսակն առնում է թևի տակ ու դպրոցի փոխարեն բռնում ուրիշ ճանապարհ։ Իսկ դպրոցում հանգիստ խղճով բացակա են նշանակում «փողոցայինին»։ Այնինչ լավ կլիներ, որ ուսուցիչն աշխատեր անպայման լինել նման աշակերտի ծնողների մոտ, ականատես լիներ, թե նա ինչպես է իրեն պահում տանը, ընտանեկան ինչ մթնոլորտում է անցկացնում իր օրը։

Կամ պատահում է, չարաճճի մեկը մի փոքր խանգարում է դասը, ուսուցիչը շտապ մարդ է ուղարկում դիրեկտորին կանչելու, որ գա պատժի «անպետք»-ին։ Սեփական ուժերին չվստահելը, տեղի-անտեղի դիրեկտորի կամ ծնողների օգնությանը դիմելը երեխաների մոտ գցում է ուսուցչի հեղինակությունը։

Պատիժներով ու վարչարարությամբ ոչ ոքի չես ստիպի քեզ հարգել։ Եթե ուսուցիչը կարողացավ նվաճել աշակերտի համակրանքը, վերջինս կսիրի ու լավ կսովորի նրա առարկան, կձգտի ամեն ինչով նմանվել նրան։ Սխալ են այն մանկավարժները, ովքեր պատճառաբանում են, թե աշակերտը չի սիրում այս կամ այն առարկան։ Ո՛չ։ Ոչ մի աշակերտ չի կարող չսիրել իր սիրելի ուսուցչի առարկան։

Ուսուցչի և աշակերտի փոխհարաբերությունները բարեկամական դարձնելու գործում որոշակի նշանակություն կարող են ունենալ կոլեկտիվ կինոդիտումները՝ ուսուցիչների մասնակցությամբ։ Սակայն հարկ է նշել, որ կինոարվեստի պրոպագանդումը աշակերտության շրջանում դեռևս իր բարձրության վրա չի գտնվում։ Դպրոցների դիրեկցիաների անհոգության պատճառով քիչ են կազմակերպվում մանկական սեանսներ (իսկ որտեղ ստացիոնար կինոկետ չկա, աշակերտական կինոսեանսների մասին խոսելն ավելորդ է)։ Ցանկացած տարիքի աշակերտը անարգել կերպով դիտում է 16 տարեկանների համար մեր կողմից այնպես խնամքով «արգելվող» կինոֆիլմը ու վերլուծում այն յուրովի։ Իսկ ինչով վատ կլիներ, եթե նման կինոնկարը 10, 11-րդ դասարանցիների հետ միասին դիտեին նաև իրենք ուսուցիչները, և հաջորդ օրը քննարկեին այն։ Դա կնպաստեր պատանու, աղջկա էության ճանաչելուն, կամրապնդեր ուսուցչի ու աշակերտի բարեկամությունը։

Դպրոցականի ձգտումներն ու ապրումներն իմանալու կարևոր միջոց են կոմերիտական ժողովներն ու պիոներական հավաքույթները, զրույցներն ու բանավեճերը, արշավներն ու էքսկուրսիաները։ Սակայն որոշ դեպքերում թերագնահատվում են նման միջոցառումները, կամ սխալ է հասկացվում դրանց դերը։

Չենք կարողանում հրաժարվել այն պրակտիկայից, որ կոմերիտական ժողովին մասնակցող դպրոցի դիրեկտորը կամ ուսուցիչները չնստեն նախագահությունում ու փաստորեն իրենք չվարեն ժողովը, անտեսելով ընտրված նախագահի իրավունքները։ Պարզ է, որ նման ժողովում կոմերիտականները չեն կարող անկաշկանդ խոսել, հուզել ու հուզվել։ Այն կլինի անաղմուկ, բայց և անարդյունք։ Չեն դրսևորվի կոմերիտականների ձգտումները, ցանկությունները։

Բնավ էլ այն կարծիքը չստեղծվի, թե դեմ ենք այն բանին, որ մանկավարժները մասնակցեն աշակերտական միջոցառումներին։ Ընդհակառակը, բոլոր դեպքերում օգտակար է ուսուցիչների մասնակցությունը, եթե միայն նրանք հանդես գան ոչ թե ղեկավարողի, այլ օգնողի, խորհրդատուի դերում։

Դաստիարակչական աշխատանքներում չկա և չի կարող լինել պատրաստի գեղատոմս, չկան մշակված պարտադիր կանոններ, որոնց սահմաններից կարելի չլինի դուրս գալ։ Եվ ոչ ոք չի կարող մի հոդված գրել ու ասել. «այս է ճիշտ. ահա ձեզ ուղեցույց»։

Զ. ԴԱՆԻԵԼՅԱՆ
ՀԿՊ Իջևանի շրջկոմի հրահանգիչ

## ԴՊՐՈՑԸ ԵՎ ԾՆՈՂԸ

Մեր ռեսպուբլիկայի դպրոցներում քիչ չեն այն ուսուցիչները, որոնք ուսուցման և դաստիարակության հարցում հասել են զգալի հաջողությունների։ Անշուշտ, նրանք հիմնվում են ինչպես իրենց, այնպես էլ առաջավոր ուսուցիչների արդեն քննություն բռնած շատ հարուստ և ուսանելի փորձի վրա։ Սակայն գործի հաջողության գրավականը միայն դրանում չէ։ Երեխաներն իրենց օրվա միայն մի մասն են անցկացնում դպրոցում, հետևաբար ամենակարող ուսուցիչներն անգամ չեն կարող վճռական արդյունքների հասնել, եթե բացակայում է ծնողների ու դպրոցի կապը, որի առանցքը դպրոցահասակ երեխան է։ Ուսուցիչը պետք է գիտենա, թե ինչպիսի ընտանիքում է հասակ առնում ու աճում իր սանը, իսկ ծնողը՝ թե ինչ պետք է անել երեխայի առաջադիմությունն ապահովելու համար։ Մինչդեռ շատ ծնողներ կարծում են, թե երեխային դպրոց տալուց հետո իրենք էլ անելիք չունեն։

Սխալ կլիներ կարծել, որ երեխայի մեջ բոլոր գծերը դաստիարակվում են դասավանդման պրոցեսում։ Երեխային ճիշտ դաստիարակություն պետք է տրվի ոչ միայն դպրոցի, ուսուցչի, այլև ծնողի, ծնողական ու աշակերտական կոլեկտիվների, պիոներական և կոմերիտական կազմակերպությունների համատեղ, միասնական, նպատակասլաց գործունեության միջոցով։ Ուստի, անհրաժեշտ է, որ ծնողները և հասարակական կազմակերպությունները հասու լինեն դպրոցի առջև դրված խնդիրներին, օգնության գան դասղեկին և ուսուցչին։ Իսկ դպրոցի մանկավարժական կոլեկտիվը, ընդհանրապես դասղեկ-դաստիարակները ծնողներին մեղադրելու կամ բարոյախոսելու փոխարեն, պետք է հաղորդակից դարձնեն դպրոցական կյանքին։

Մեր դպրոցի 7-րդ «դ» դասարանի աշակերտ Գ-ն ինքնամփոփ էր, չէր ենթարկվում դպրոցի ներքին կարգ ու կանոնին, դպրոց էր հաճախում քմահաճորեն, մեծամիտ էր։ Ավելին— «Գ»-ն չէր ընդունում ուսուցիչների դիտողությունները, խուսափում էր կոլեկտիվ միջոցառումներից, իրեն տրված հանձնարարությունները չէր կատարում և այլն։ Հիմնական պատճառն այն էր, որ նա դուրս էր մնացել ինչպես ծնողի, այնպես էլ դասղեկի, աշակերտական կոլեկտիվի տեսադաշտից և, ինչպես պարզվեց հետո, ընկել էր վատ շրջապատ։ Դպրոցի դիրեկցիան, ծնողական կոմիտեն, կոմերիտական կազմակերպությունները մոտիկից զբաղվեցին Գ-ի վերադաստիարակման հարցով։ Հրավիրվեց աշակերտական ժողով, ուր քննադատողի դերում հանդես եկան հենց Գ-ի ընկերները։ Արդյունքը եղավ այն, որ կոլեկտիվի օգնությամբ նա հասավ առաջավորներին և դարձավ օրինակելի աշակերտ։

Երեխաների դաստիարակության հարցում նշանակություն ունի հասարակական միջավայրը։ Գյուղական վայրերում, հատկապես մեր գյուղում, թույլ է արտադպրոցական երիտասարդության հետ տարվող դաստիարակչական աշխատանքը, որի պատճառով նրանց մի զգալի մասը երբեմն է թեքում հանրօգուտ աշխատանքից, իսկ մի մասն էլ չի շարունակում ուսումը, գյուղում 9-րդ դասարան չլինելու պատճառով։ Սա էլ տեղիք է տալիս հակահասարակական արարքների. դժբախտաբար, մեր դպրոցականներն էլ երբեմն ընդօրինակում են։

Երեխաների դաստիարակության խնդրում, հատկապես գյուղական վայրերում, մեծ գործ ունեն կատարելու նախադպրոցական հիմնարկները։ Մեր, և ոչ միայն մեր գյուղում, մսուր-մանկապարտեզներն այնքան սակավաթար են, որ կարող են ընդգրկել նախադպրոցականների մի չնչին մասը միայն։ Սակայն կարևոր է և այն, թե ինչպիսի դաստիարակչական աշխատանք է տարվում այստեղ։ Մսուր-մանկապարտեզներում դաստիարակներ են նշանակվում այնպիսիք, որոնք շատ հեռու են կանգնած մանկավարժությունից, չունեն ոչ միայն համապատասխան աշխատանքի փորձ, այլև կրթություն։ Այս դաստիարակության ամենակարևոր հարցերից է, որին պետք է լուրջ ուշադրություն նվիրեն գյուղական շրջանների ղեկավար օրգանները։ Երեխան դպրոց պետք է գա անցած լինելով նախադպրոցական դաստիարակության բովով։

Գ. ՄԱՆՈՒԿՅԱՆ
Արտաշատի շրջանի Աղամզալուի
8-ամյա դպրոցի ուսմասվար



## ԲԱՑ ՆԱՄԱԿ

*ՍՍՌՄ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԻՆԻՍՏՐՈՒԹՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏԻ ՌԵԿՏՈՐ ԸՆԿ. Հ. ՄԱՐՋԱՆՅԱՆԻՆ*
*ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԺՈՂՈՎԱԾՈՒԻ ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱՅԻ ՆԱԽԱԳԱՀ ԸՆԿ. Ա. ԹՈՎՄԱՍՅԱՆԻՆ*
*ԻՆՍՏԻՏՈՒՏԻ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՔԱՐՏՈՒՂԱՐ ԸՆԿ. Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻՆ*

Հարգելի՛ ընկերներ:

Ձեր քար լռությունն ինչպե՞ս հասկանանք: Համաձա՞յն եք մեր ամսագրի դեռ անցյալ տարվա վեցերորդ համարում տպագրված գրախոսականին, թե՞ վրդովված եք: Համենայն դեպս, խոստովանեք, որ տասնմեկ ամիսը բավական էր, որպեսզի դուք խորհրդածեիք և համարձակություն ունենայիք ասելու Ձեր խոսքն այդ գրախոսականի մասին: Մեզ թվում է, որ նման հարցի նկատմամբ Ձեր լռությունը չի բարձրացնի գիտական հաստատության հեղինակությունը: Մի՞թե դուք չգիտեք, որ պարտավոր եք գրավոր պատասխանելու մամուլի բարձրացրած և այն էլ՝ քննադատական հարցերին: Այլ կերպ այն տպավորությունն է ստացվում, որ, կարծեք թե, դուք չեք Գիտական աշխատությունների № 14 ժողովածուի տերն ու տնօրենը, և ոմանք կարող են կարծել, թե քննադատությունն ամենևին Ձեզ չի վերաբերում:

Տպագրված գրախոսականն անհի՞մն է, սխա՞լ: Բարեհաճեք Ձեր հերքումը հղել մեզ: Ճըշմարտացի՞ է, համոզի՞չ, խղճի մտոք արտահայտվեք այդ առթիվ մեր և ձեր ընթերցողների առջև: Մինչև այժմ խմբագրությունը չի ստացել ո՛չ Ձեր ժողովածուի խմբագրության և ո՛չ էլ քննադատվող հեղինակներից որևէ մեկի հերքումը:

Շատ լավ գիտեք, որ գրախոսականում առավելապես քննադատվել են Պ. Ոսկերչյանի երկու հոդվածները: Տվյալ դեպքում, երբ դուք հրաժարվում կամ խուսափում եք արտահայտվել մտքի խոտանի վերաբերյալ ու չեք կամենում տհաճություն պատճառել այն ընկերներին, որոնք իրենց աղմկարարությամբ ոչ մի օգուտ չեն բերում գիտությանը, դա ավելի քան խոսում է այն մասին, որ գրախոսականը միանգամայն տեղին էր:

Ի դեպ, ցանկալի կլիներ, որ այս հարցին անդրադառնալիս, հաշվի առնեիք ս. թ. փետրվարի 26-ին «Литературная газета»-ում տպագրված Հայկ. ՍՍՌ ԳԱ պրեզիդենտ Վ. Համբարձումյանի հրապարակած հոդվածը, որում համոզիչ կերպով տրված է, թե որը պետք է լինի գիտական աշխատողների գործունեության ու վաստակի գնահատման ճիշտ չափանիշը:

Հիշեցնելով Ձեզ այս մասին, սպասում ենք Ձեր գրավոր պատասխանին:

**«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրություն**




ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԱՆԱՆԻԿՅԱՆ Բ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱԿՈԲՅԱՆ Հ. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.:

Թողարկիչ՝ Ա. ՅԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ջ. Ավագյան

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿԿ Կենտկոմի շենք, հեռ. 2—02—24

*Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении, тел. 2-02-24*

ՎՖ 06019 Պատվեր 920 Տիրաժ 10.720 Գինը 25 կոպ.:

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 30/III 1966 թ.:

*Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի Պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան Թումանյան փ. № 51:*







## ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

### ՆՈՐ ԳՐՔԵՐ

*ՉԵՐՆԵՅՈՎՍԿԻ* ՅՈՒ. Մ.—Վ. Ի. Լենինի պայքարը մարքսիզմի կաուցկիական ռեվիզիայի դեմ: *Լենհրատ, 1965, 218 էջ:*

*Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների և, առաջին հերթին, Վ. Ի. Լենինի երկերի, եղբայրական կոմունիստական կուսակցությունների ղեկավար գործիչների աշխատությունների, միջազգային կոմունիստական շարժման փաստաթղթերի և այլ նյութերի հիման վրա, հեղինակը քննադատաբար վերլուծում է աջ և ձախ օպորտունիզմի շատ գաղափարախոսների երկերը, սոցիալ-դեմոկրատական մամուլի նյութերը, այդ կուսակցությունների համագումարների որոշումները և այլն:*

*Գրքում ցույց են տրված Վ. Ի. Լենինի պայքարը հանուն մարքսիզմի անաղարտության, ստեղծագործական զարգացման, նրա բացառիկ նշանակությունը ժամանակակից կոմունիստական և բանվորական շարժման համար:*

*Գիրքը օգտակար է հասարակական գիտությունների դասախոսների, պրոպագանդիստների, ուսանողների և քաղլուսցանցի ունկնդիրների համար:*

Հոկտեմբերը և քաղաքացիական պատերազմը ՍՍՌՄ-ում: *Մ.* «Наука», *հրատ. 1966, 526 էջ:*

*Ժողովածուի հեղինակներն, օգտագործելով արխիվային և այլ նյութեր, ուսումնասիրում են մի շարք պրոբլեմներ՝ կապված սոցիալիստական հեղափոխության պատմության, նրա նվաճումների հերոսական պաշտպանության, հեղափոխության և ժողովրդական մասսաների ղեկավարության գործում Վ. Ի. Լենինի ու կոմունիստական կուսակցության խոշորագույն դերի հետ:*

ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ ԲԱԳՐԱՏ.— Սովետական իշխանության համար մղված պայքարում: *Հոդվածներ, ելույթներ և նյութեր (1917—1920 թթ.) Ե., Հայաստան, 1966, 171 էջ:*

*Այս ժողովածուում զետեղված են Հայաստանի կոմունիստական կուսակցության ականավոր գործիչ, 1920 թ. Մայիսյան ապստամբության աչքի ընկնող ղեկավարներից մեկի աշխատությունները, ճառերը, մամուլում տպագրված հոդվածները, նամակները և այլ նյութեր, որոնք վերաբերում են Հայաստանում սովետական կարգերի հաստատման համար մղած համառ պայքարին:*

Երկրորդ ինտերնացիոնալի պատմությունը *(երկու հատորով): Հ. 1-ին, Մ.,* «Наука», *հրատ. 1965, 380 էջ:*

*Հեղինակային կոլեկտիվը, օգտագործելով սովետական և արտասահմանյան գրականությունը, արխիվային և այլ նյութեր, շարադրել է ինտերնացիոնալի համառոտ պատմությունը, ցույց տվել նրա կազմակերպումը, հեղափոխական ուժերի պայքարը, զարգացումը և ինտերնացիոնալի կրախը:*

Լենինյան գաղափարների լույսով: *Պատմվածքներ Վ. Ի. Լենինի զինակիցների և ժամանակակիցների մասին: Մ., Քաղհրատ, 1965, 511 էջ:*

*Այս գիրքը «Կուսակցության ակունքների մոտ» և «Կուսակցությունը քայլում է հեղափոխության միջով» ժողովածուների շարունակությունն է: Պարունակում է քսանհինգ պատմվածք Վ. Ի. Լենինի զինակիցների, բարեկամների, ժամանակակիցների, սոցիալիստական մշակույթի ականավոր գործիչներ՝ Ա. Վորովսկու, Մ. Գորկու, Ա. Լունաչարսկու, Մայակովսկու, Դեմյան Բեդնու, Ֆ. Կոնի, գիտնականներ՝ Ի. Պավլովի, Միչուրինի, Կ. Տիմիրյազևի, Ի. Ժուկովսկու, Կ. Ցիոլկովսկու, Վինտերի, նկարիչ՝ Բրոդսկու, գրող՝ Սերաֆիմովիչի, դերասանուհի՝ Երմոլովայի և այլոց մասին:*

Հավերժ կենդանի: *Ժամանակակիցների հուշերը Վ. Ի. Լենինի մասին: Մ., 1965, Քաղհրատ, 367 էջ:*

*Այս գրքում զետեղված են Վ. Ի. Լենինի հետ և նրա ղեկավարությամբ հայրենիքում և արտասահմանում հեղափոխական գործիչների, պետական ու կուսակցական, ժողտնտեսության, հայրենիքի պաշտպանության, մշակույթի, գիտության, դպրոցական և այլ գործերի գլուխ կանգնած հին կոմունիստների հուշերը:*

ԳԻՆԸ 25 Կ. 

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## *ԲԱՐՁՐՈՐԱԿ ԱՐՀԵՍՏԱԿԱՆ ԿԱՇԻ*

*Ռումինիայի կոշկի և պլաստիկ նյութերի «Վիկտորիա» ֆաբրիկան յուրացրել է տեքստիլ սատառով նոր տիպի արհեստական կաշվի արտադրությունը: Տարբեր գույնի և նախշերի այդ կաշին առանձգական է և դիմացկուն ջերմաստիճանի տատանումներին: Արտաքին տեսքով այն չի զիջում բնական կաշվին և լայնորեն կիրառվում է կաշվե արտադրանքների և տնային կահ-կարասիքի երեսպատման համար:*

## *ՈՍԿԵ «ԿԱՐԿԱՏԱՆՆԵՐ» ԱՐՅՈՒՆԱՏԱՐ ԱՆՈԹՆԵՐԻ ՎՐԱ*

*Վաշինգտոն քաղաքի հոսպիտալներից մեկում արյունատար անոթներից և երակներից վտանգավոր արյունահոսությունը դադարեցնելու համար օգտագործել են չափազանց բարակ ոսկե փոլգա:*

*Նոր մեթոդը այսպիսին է. լիցքավորված փոլգան ամուր սեղմում են արյունատար անոթին: Այս դեպքում խցանում չի առաջանում: «Կարկատանի» կպչողունակությունը ձեռք է բերվում շնորհիվ այն բանի, որ դրական էլեկտրականությամբ էլեկտրականացնող էլեկտրոդը փոլգայի վրայից հեռացվում է վերքի մակերեսին դնելուց հետո:*

## *ԾՈՎԱՋՐՈՎ ԱՇԽԱՏՈՂ ՌԱԴԻՈՀԱՂՈՐԴԻՉ*

*Ամերիկայի Միացյալ Նահանգների գիտահետազոտական լաբորատորիաներից մեկում նախագծվել է ոչ-մեծ ռադիոհաղորդիչ, որը սնվում է այնպիսի մարտկոցից, որն աշխատում է միայն ծովի ջրում սուզելու դեպքում: Մարտկոցը բաղկացած է իրար հաջորդող մագնիումի ու նիկելի թիթեղիկների հավաքածուից: Ծովաջրի մեջ սուզելիս մարտկոցի մեջ տեղի է ունենում էլեկտրաքիմիական ռեակցիա, առաջանում է էլեկտրական հոսանք, որով աշխատում է ռադիոհաղորդիչը: Ռադիոհաղորդչի գործողության շարունակությունը հիմնականում կախված է անտենայի երկարությունից: Ռադիոհաղորդիչը նախատեսված է ծովն ընկած ինքնաթիռներից կամ խորտակված նավերից աղետի ազդանշաններ հաղորդելու համար:*

## *ԿԱՐՏՈՖԻԼԻ ԲԵՐՔԻ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՌԵԿՈՐԴ*

*Թոմ Կուկը (Անգլիայում) հասել է կարտոֆիլի բերքատվության համաշխարհային ռեկորդի: Վեց թփից նա հավաքել է ավելի քան հինգ ցենտներ կարտոֆիլ: Այդ հաջողության համար նա պարտական է հատուկ հեղուկ պարարտանյութերի, որոնց բաղադրությունը նա խնամքով թաքցնում է: Հայտնի է միայն, որ այդ նպատակի համար նա օգտագործում է ծովային ջրիմուռների որոշ տեսակներ:*

## *ԱՐՀԵՍՏԱԿԱՆ ՄԵՏԱՂՆԵՐ*

*Ըստ երևույթին արհեստական պոլիմերներից հետո հերթը հասել է արհեստական մետաղներին: Նոբելյան մրցանակի լաուրեատ, Կալիֆոռնիայի համալսարանի մոլորակների գեոֆիզիկայի ու ֆիզիկայի ինստիտուտի դիրեկտոր, դոկտոր Կ. Ֆ. Լիբին սկզբում բորի նիտրիդը ենթարկեց բարձր ճնշման, իսկ այնուհետև այն արագ ընկղմեց — 320,5 (ըստ Ֆարենհայտի) ջերմաստիճան ունեցող հեղուկ ազոտի մեջ: Դրա հետևանքով ստացվեց ալմաստից մեծ կարծրություն ունեցող նյութ: Դոկտոր Լիբին ենթադրում է, որ մեկ միլիոն մթնոլորտ ճնշման դեպքում (որն առայժմ անհնար է ստանալ) կբացվի քիմիական ու ֆիզիկական երևույթների բոլորովին նոր աշխարհ:*